ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵ՛Ք

# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

№ 3
ՄԱՐՏ
1959 Թ.

★

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԿԵՆՏԿՈՄԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ЛЕНИНЯН УГИОВ — ТЕОРЕТИЧЕСКИЙ И
ПОЛИТИЧЕСКИЙ ЖУРНАЛ ЦК КП АРМЕНИИ

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
XXXVI
ՏԱՐԻ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



digitised by A.R.A.R.@

СОДЕРЖАНИЕ



Гос. Библиотека
ՀՍՍՌ-Арм. ССР
им. А. Мясникяна
Ա. ՄՅԱՍՆԻԿՅԱՆԻ ԱՆՎԱՆ
10-59

# ԳԱՂԱՓԱՐԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԻ ՆՈՐ ՎԵՐԵԼՔԻ ՀԱՄԱՐ*

*Ս. ԹՈՎՄԱՍՅԱՆ*

Մեր փառապանծ Կոմունիստական պարտիայի XXI արտահերթ համագումարը՝ կոմունիստական շինարարության մշակած իր նոր ծրագրով, քննարկված հարցերի մասշտաբով, պրակտիկ հարցերի լուծման ռևոլյուցիոն թափով և տեսական պրոբլեմների հարստությամբ ու խորությամբ՝ աննախընթաց է։ Պարտիայի հերոսական պատմության մեջ XXI համագումարը առանձնահատուկ տեղ կգրավի։ Նրանով նշանավորվում է նոր ժամանակաշրջան. մեր Հայրենիքը թևակոխում է իր պատմական զարգացման նոր ժամանակաշրջանը՝ կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը։ Սովետական ժողովուրդը, որն առաջինը կենսագործեց սոցիալիզմի կառուցման վերաբերյալ մարդկության լավագույն մտածողների դարավոր երազանքը, այժմ ամբողջ աշխարհի առաջադիմական ուժերի ավանգարդում մարդկության համար հարթում է կոմունիստական պայծառ ապագայի ուղիները։

Համագումարում տված զեկուցման մեջ ընկեր Ն. Ս. Խրուշչովն ասաց. «Այդ ժամանակաշրջանի գլխավոր խնդիրներն են՝ կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծումը, ՍՍՌՄ տնտեսական ու պաշտպանական հզորության հետագա ամրապնդումը և միաժամանակ ժողովրդի նյութական ու հոգևոր աճող պահանջմունքների ավելի լրիվ բավարարումը։ Գործնականում պետք է լուծվի բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի արտադրությամբ առավել զարգացած կապիտալիստական երկրներին հասնելու և անցնելու պատմական խնդիրը»։

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանը մեր Հայրենիքի էկոնոմիկայի ու կուլտուրայի զարգացման 15-ամյա հեռանկարային պլանի կարևորագույն մասն է։ Պարտիայի համագումարը հստակորեն որոշեց առաջիկա յոթնամյակի մեր գլխավոր խնդիրները տնտեսական, քաղաքական, գաղափարական և միջազգային հարաբերությունների բնագավառներում։

Այսուհետև սովետական մարդկանց, մեր պարտիայի, պետության և բոլոր հասարակական կազմակերպությունների բազմաբովանդակ կյանքը կընթանա ՍՄԿՊ XXI համագումարի որոշումների նշանաբանով։ Համագումարի

* ՀԿՊ Կենտկոմի առաջին քարտուղար ընկեր Ս. Թովմասյանի՝ մարտի 17-ին իդեոլոգիական ֆրոնտի աշխատողների ռեսպուբլիկական ժողովում տված զեկուցման համառոտ սղագրությունը։

digitised by A.R.A.R.@

կողմից հաստատված ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանը սովետական ժողովրդի գործնական ծրագիրն է, որդի էտապում պարտիայի լենինյան գլխավոր գծի կոնկրետ մարմնացումը։

Յոթնամյակի կատարումը է՛լ ավելի կամրապնդի Սովետական Միության և սոցիալիզմի ամբողջ մեծ լագերի հզորությունը, բարերար կերպով կազդի համաշխարհային հասարակական զարգացման ամբողջ ընթացքի վրա, ամբողջ մարդկության ճակատագրի վրա, կամրապնդի խաղաղությունը և ռեալ հնարավորություն կստեղծի հասարակության կյանքից բացառելու համաշխարհային պատերազմը, է՛լ ավելի վառ կերպով կցուցադրի սոցիալիզմի առավելությունները, կմեծացնի մարքսիզմ-լենինիզմի գաղափարների հսկայական ձգողական ուժը։

ՍՄԿՊ XXI համագումարի մշակած յոթնամյա պլանի առաջ քաշած կոնկրետ խնդիրները հենվում են սովետական ժողովրդի կողմից արդեն ձեռք բերած համաշխարհային պատմական նվաճումների վրա։ Սովետական Միության զարգացման նոր ժամանակաշրջանը նախապատրաստվել է Կոմունիստական պարտիայի կազմակերպչական ու դաստիարակչական նախորդ ամբողջ գործունեությամբ։ Սովետական ժողովուրդը հատկապես նշանակալի հաջողություններ է ձեռք բերել վերջին տարիներս։ Եռանդուն ու հաստատակամ կերպով կենսագործելով ՍՄԿՊ XX համագումարի որոշումները, ջախջախելով ու ճանապարհից դեն շպրտելով Մալենկովի, Կագանովիչի, Մոլոտովի, Բուլգանինի, Շեպիլովի հակապարտիական խումբը, որը փորձում էր պարտիային շեղել լենինյան ուղուց, մեր պարտիան հմտորեն դեպի միասնական նպատակ ուղղեց ժողովրդի ջանքերը, մշակեց և իրագործեց մի ամբողջ շարք խոշոր միջոցառումներ ժողովրդական տնտեսության ղեկավարման, դեմոկրատական ցենտրալիզմի լենինյան սկզբունքի զարգացման, արդյունաբերության ու գյուղատնտեսության, գիտության ու կուլտուրայի զարգացման, մասսաների բարեկեցության բարձրացման ասպարեզում։ Այդ միջոցառումների շնորհիվ սոցիալիզմը մեր երկրում հասունության այնպիսի աստիճանի հասավ, նրա առավելությունները ծավալվեցին այնպիսի ուժով և այնպիսի մասշտաբներով, որ այժմ սովետական ժողովուրդը ձեռնամուխ է եղել կոմունիստական հասարակարգի անմիջական և ծավալուն կառուցմանը։

Մշակելով մեր երկրում կոմունիստական շինարարության ծրագիրը, ՍՄԿՊ XXI համագումարը բացառիկ մեծ ուշադրություն նվիրեց գաղափարական աշխատանքի հարցերին, սովետական մարդկանց կոմունիստական դաստիարակության խնդիրներին։ Աշխատավորների, հատկապես աճող սերնդի, կոմունիստական դաստիարակության հարցերը, որոնք առաջ են քաշված ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցման մեջ, այժմ բացառիկ կարևոր նշանակություն են ստանում։

I

Պարտիայի գաղափարական-դաստիարակչական աշխատանքի ուժեղացումը, աշխատավորների կոմունիստական գիտակցականության բարձրացումը կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանի գլխավոր խնդիրներից մեկն է։ Ուստի պատահական չէ, որ գաղափարական աշխատանքի հարցերին



այդպիսի մեծ ուշադրություն է նվիրված ՍՄԿՊ XXI համագումարի պատմական փաստաթղթերում։ Անհրաժեշտ է մեր ամբողջ գաղափարական աշխատանքը բարձրացնել XXI համագումարի առաջադրած վիթխարի խնդիրների մակարդակին։

Կոմունիստական դաստիարակության հարցերը ժամանակակից պայմաններում կարևորագույն նշանակություն են ստանում նախ և առաջ այն պատճառով, որ պարտիայի նախատեսած կոմունիստական շինարարության վիթխարի պլանի հաջող իրականացման անհրաժեշտ պայմանը՝ այդ շինարարությանը սովետական բոլոր մարդկանց գիտակից և ակտիվ մասնակցությունն է։ Մեր երկրի ամբողջ պատմական պրակտիկան փայլուն կերպով հաստատում է մարքս-լենինյան այն դրույթը, որ կոմունիստական հասարակարգի կառուցումը բազմամիլիոն մասսաների կոլեկտիվ ստեղծագործությունն է, որ որքան վիթխարի խնդիրներ են ծառանում այդ շինարարության ընթացքում, այնքան մեծանում է լայն մասսաներին շարժման մեջ դնելու անհրաժեշտությունը։

Կոմունիզմին անցնելը պահանջում է կոմունիստական հասարակության անդամների այնպիսի ձևավորում, որոնց գիտակցությունը զերծ է անցյալի մնացուկներից, որոնք կոմունիստական վերաբերմունք ունենան աշխատանքի նկատմամբ, օժտված լինեն կոմունիստական բարոյականությամբ, բնավորության կոմունիստական գծերով ու սովորություններով։ Կոմունիզմի կառուցումը ո՛չ միայն տնտեսական ու քաղաքական պրոցես է, այլև գաղափարական պրոցես, անհատի հոգևոր ծաղկման ու նորոգման պրոցես։ Նա ենթադրում է որակական փոփոխություններ ոչ միայն երկրի էկոնոմիկայի, այլև մարդկանց գիտակցության մեջ։

Պարտիայի գաղափարական աշխատանքը ժամանակակից պայմաններում կարևորագույն նշանակություն է ստանում նաև այն պատճառով, որ որքան մեր հասարակությունը առաջ է գնում դեպի կոմունիզմ, այնքան աճում է և կաճի հասարակական կազմակերպությունների նշանակությունը, որոնց աստիճանաբար հանձնվում են և կհանձնվեն շատ ֆունկցիաներ, որոնք այժմ իրականացվում են պետության կողմից, է՛լ ավելի փարթամորեն կծաղկի սոցիալիստական դեմոկրատիան։ Իսկ դա նշանակում է, որ, նախ, կուժեղանա Կոմունիստական պարտիայի՝ որպես հասարակական կազմակերպության բարձրագույն ձևի, որպես մասսաների ստեղծագործական ակտիվության կազմակերպչի ու ոգեշնչողի, որպես ժողովրդի դաստիարակի, դերը։ Երկրորդ, աշխատավորների կազմակերպությունների հասարակական և ինքնակառավարման դերի բարձրացումը կնշանակի, որ հասարակության կյանքի ղեկավարման գործում ավելի ու ավելի մեծ նշանակություն կստանան մասսաների կազմակերպումն ու համոզումը, և, ընդհակառակն, ավելի ու ավելի պակաս նշանակություն կունենա հարկադրանքը։

Այնուհետև. մենք հարկադրված ենք և դեռ երկար ժամանակ հարկադրված կլինենք անողոք պայքար մղել իմպերիալիզմի գաղափարական դիվերսիաների դեմ, բուրժուական գաղափարախոսության ապականող ազդեցության դեմ։ Կոմունիզմի գաղափարների ձգողական հսկայական ուժը, որը հաստատված է սոցիալիստական երկրների ժողովուրդների վիթխարի հա-

digitised by A.R.A.R.@

ջողությունների և նրանց բարգավաճման փաստով, կատաղեցնում է իմպերիալիստական ռեակցիային, ուժեղացնում է նրա ձգտումը գաղափարապես զինաթափելու առաջադիմական և առաջին հերթին, բանվորական շարժումը։

Կոմունիզմի կառուցման համար պարտիայի կողմից գաղափարական աշխատանքը պայքարի առաջին պլանի վրա մղելը, այսպիսով, խորապես բխում է կյանքի նոր պայմաններից։ Պարտիական կազմակերպությունները կոչված են ՍՄԿՊ XXI համագումարի որոշումներին, մեր երկրի պատմական զարգացման նոր էտապին պատասխանել գաղափարական ամբողջ աշխատանքի թափի ուժեղացմամբ և նրա բովանդակության արմատական բարելավմամբ։ Մենք բոլոր նախադրյալներն ու հնարավորություններն ունենք, որպեսզի հաջողությամբ լուծենք իրենց մասշտաբներով ու նշանակությամբ մեծ այն խնդիրները, որոնք պարտիայի առջև կանգնած են գաղափարական բնագավառում։

Մենք զինված ենք ամենաառաջավոր աշխարհայացքով՝ մարքսիզմ-լենինիզմով։ Այդ անմահ ուսմունքը մեր ժողովրդի համար ծառայում է ուղեցույց աստղ, որպես նրա կյանքի ու պայքարի ոգեշնչող ու մոբիլիզացնող ծրագիր։

Սակայն մարքսիզմ-լենինիզմի գաղափարական մեծագույն հարստությունը չի կարող լիովին իրացվել իր հսկայական պոտենցիալ դաստիարակչական հնարավորություններով, եթե մենք այն չդարձնենք ժողովրդական ամենալայն մասսաների սեփականությունը, եթե մենք օրավուր և հաստատակամորեն չձևավորենք միլիոնավոր բանվորների, գյուղացիների և ինտելիգենտների մարքս-լենինյան աշխարհայացքը։

Սովետական մարդկանց կյանքի նյութական մակարդակի բարձրացումը, ինքնըստինքյան, ավտոմատ կերպով դեռևս չի ապահովում մարդկանց մտածողության կոմունիստական ոգին, եթե այն չամրապնդվի նպատակասլաց դաստիարակչական աշխատանքով, հասարակության բարօրության համար կատարվող աշխատանքի նկատմամբ սովետական մարդկանց մեջ բարոյական ազդակների զարգացմամբ։

Գաղափարական աշխատանքի հարցերի վերաբերյալ համագումարի ցուցումների մեջ գլխավորը՝ կյանքի հետ, մեր երկրում կոմունիզմի կառուցման համար մասսաների պրակտիկ պայքարի հետ կոմունիստական դաստիարակության անխզելի, օրգանական կապի պահանջն է։

Մեր գաղափարական աշխատանքի համար չկա և չի կարող լինել ավելի կարևոր խնդիր, քան Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXI համագումարի որոշումների հաջող կենսագործման, յոթնամյա պլանի, յոթնամյակի առաջին տարվա՝ 1959 թվականի առաջադրանքների կատարման ու գերակատարման համար սովետական ժողովրդի բոլոր ուժերի մոբիլիզացման խնդիրը։

Մեր բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, սովետական ինտելիգենցիայի անձնվեր աշխատանքը կոմունիստական դաստիարակության ոչ միայն նպատակը, այլև հզոր միջոցն է։ Աշխատանքի պրոցեսում, կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարի պրոցեսում դաստիարակելը, մասսաների ստեղծագործական նախաձեռնության և ինքնագործունեության ամեն կերպ աջակցելը՝ ժամանակակից պայմաններում պարտիայի գաղափարական աշխատանքի գլխավոր ուղղությունն է, որն իրեն ամբողջովին արդարացրել է պրակտիկայում։



Կոմունիզմ կառուցել հնարավոր չէ առանց տիրապետելու մարդկության մշակած գիտելիքների ամբողջ գումարին, սովորեցրել է Վ. Ի. Լենինը։ Բայց հարկավոր է կարողանալ այդ գիտելիքներն օգտագործել ընդհանուր նպատակներով, սովետական բոլոր մարդկանց կյանքի պայմանները բարելավելու համար, կոմունիզմի համար մղվող պայքարում։ Ուստի, քաղաքական գիտելիքներին, գիտությանը, տեխնիկային տիրապետելը պետք է կարևորագույն տեղ գրավի աշխատավորների կոմունիստական դաստիարակության ամբողջ սիստեմում։ Այդ տեսակետից մեր ամբողջ աշխատանքը պետք է ենթարկվի սովետական հասարակական ու պետական կարգի ամրապնդմանը, դրանց կենսական հիմքը կազմող՝ բանվորների ու գյուղացիների դաշինքի, ՍՍՌՄ ժողովուրդների բարեկամության, սովետական ժողովրդի միասնության և համախմբվածության ամրապնդմանը։

Այդ պահանջների իրականացման պայքարում միայն կարող է մշակվել կոմունիզմի ակտիվ կառուցողի, սովետական մարդու նոր բարոյական կերպարը, կարող են հաղթահարվել այնպիսի ամոթալի երևույթներ, ինչպիսիք են՝ աշխատանքային կարգապահության խախտումները և արհամարհանքը դեպի հասարակական աշխատանքը, ժողովրդական ունեցվածքի գողումը, հարբեցողությունը, խուլիգանությունը, կաշառակերությունը, սպեկուլյացիան, որոնք դեռևս կան մեր այսօրվա իրականության մեջ։ Այս կապակցությամբ պետք է մի անգամ ևս ընդգծել, որ սովետական մարդկանց գիտակցության մեջ եղած կապիտալիզմի մնացուկների հաղթահարումը եղել է և մնում է կոմունիստական շինարարության ժամանակակից էտապում պարտիայի կարևորագույն խնդիրներից մեկը։

Կոմունիստական պարտիայի XXI համագումարը ցույց տվեց, որ այժմ, ինչպես երբեք, առանձնահատուկ նշանակություն է ստանում պարտիականությունը, գաղափարական անհաշտությունը բուրժուական գաղափարախոսության և ռևիզիոնիզմի բոլոր տարատեսակների նկատմամբ։ Հատուկ նշանակություն է ստանում մեր գաղափարական աշխատանքի մարտնչող բնույթը։

Մարքսիզմ-լենինիզմը տիրապետում է մեր հասարակության բոլոր շերտերի մտածողության վրա։ Սակայն այդ չպետք է հանգստացնի մեզ։ Գաղափարական բնագավառում մեր պարտիայի առջև կանգնած վիթխարի խընդիրները կարևոր այդ ճակատի աշխատողներից պահանջում են առավելագույն չափով օգտագործել բազմահարուստ հնարավորությունները դաստիարակչական աշխատանքը ամեն կերպ բարելավելու, նրա գաղափարական-տեսական մակարդակը բարձրացնելու, այդ աշխատանքի ձևերն ու մեթոդները կատարելագործելու համար։ Այդ խնդիրների լուծման հիանալի հիմք են հանդիսանում ՍՄԿՊ XXI համագումարի նյութերը, որոնք մարքսիզմ-լենինիզմի ստեղծագործական զարգացման, մեր պարտիայի գործունեության մեջ տեսության ու պրակտիկայի անխախտ միասնության փայլուն օրինակ են։ Աշխատավորների լայն մասսաներին համագումարի նյութերի պարզաբանումը, համագումարի առաջադրած տեսական դրույթների յուրացումն ու պրոպագանդան պետք է կազմեն պարտիական կազմակերպությունների դաստիարակչական ամբողջ աշխատանքի հիմքը։

digitised by A.R.A.R.@

## II

XXI համագումարն ընդհանրացնելով ՍՍՌՄ-ում կոմունիստական շինարարության վիթխարի փորձը, սոցիալիստական սիստեմի երկրների հաջողությունները, ինչպես նաև համաշխարհային բանվորական և կոմունիստական շարժման փորձը, առաջ քաշեց և լուծեց տեսական մի շարք պրոբլեմներ, որոնք մեծ նշանակություն ունեն ինչպես մեր, այնպես էլ մարքս-լենինյան մյուս պարտիաների հետագա գործունեության համար։

Այժմ գաղափարական բնագավառի աշխատողների առջև ամբողջ հասակով մեկ ծառանում են այն հարցերը, թե ինչպես ավելի լավ պարզաբանել ու պրոպագանդել XXI համագումարի առաջ քաշած տեսական նոր պրոբլեմները, ինչպես օգտագործել դրանց գաղափարական հսկայական հարստությունը մեր դաստիարակչական աշխատանքում։

XXI համագումարում ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցման մեջ և համագումարի մյուս նյութերում բազմակողմանի և խոր տեսական լուսաբանում գտան կոմունիստական հասարակարգի երկու փուլերի և սոցիալիզմը կոմունիզմին վերաճելու օրինաչափությունների հարցը, ինչպես նաև կոմունիստական հասարակարգի նյութա-տեխնիկական բազայի, սոցիալիզմի և կոմունիզմի պայմաններում նյութական բարիքների բաշխման, սոցիալիստական սեփականության երկու ձևերի զարգացման ու մերձեցման ուղիների, կոմունիզմի ծավալուն կառուցման շրջանում հասարակության քաղաքական կազմակերպման, սոցիալիզմի լիակատար և վերջնական հաղթանակի, համաշխարհային սոցիալիստական սիստեմի երկրների զարգացման ընդհանուր օրինաչափությունների, սովետական հասարակարգում պետության և Կոմունիստական պարտիայի հարաճուն դերի հարցերը։

### 1. ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿԱՐԳԻ ԵՐԿՈՒ ՓՈՒԼԵՐԻ ԵՎ ՍՈՑԻԱԼԻԶՄԸ ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՎԵՐԱՃԵԼՈՒ ՕՐԻՆԱՉԱՓՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԱՍԻՆ

Մարքսիզմ-լենինիզմը սովորեցնում է, որ մարդկային հասարակության ապրած վերջին անտագոնիստական ֆորմացիան կապիտալիստական ֆորմացիան է, որով, ինչպես ասել է Կ. Մարքսը, ավարտվում է մարդկային հասարակության նախապատմությունը։

Կապիտալիստական ֆորմացիային փոխարինելու է գալիս կոմունիստական ֆորմացիան, որը բաղկացած է երկու փուլերից՝ սոցիալիզմից և կոմունիզմից։

Կոմունիստական հասարակության երկու փուլերի մասին առաջին անգամ պարզ ու որոշակի Կ. Մարքսը գրել է «Գոթայի ծրագրի քննադատությունը» իր փայլուն աշխատության մեջ։ Այդ հարցն իր հետագա մշակումն ու զարգացումն է գտել Վ. Ի. Լենինի հանճարեղ աշխատություններում։

«Այն, ինչ որ սովորաբար սոցիալիզմ են անվանում,— ասել է Վ. Ի. Լենինը,— Մարքսն անվանել է կոմունիստական հասարակության «առաջին» կամ ստորին փուլը։ Որչափով ընդհանուր սեփականություն են դառնում արտադրության միջոցները, այն չափով այստեղ էլ կարելի է «կոմունիզմ» բառը գործածել, եթե չմոռանանք, որ այդ լիակատար կոմունիզմ չէ։ Մարքսի պարզաբանումների խոշոր նշանակությունն այն է, որ նա այստեղ էլ հետևողականորեն կիրառում է մատերիալիստական դիալեկտիկան, զարգացման ուսմունքը, կոմունիզմը դիտելով իբրև կապիտալիզմից զարգացող մի բան» (Երկեր, հ. 25, էջ 613)։



Մեր երկրում սոցիալիզմի կառուցման պրակտիկան հաստատեց կոմունիզմի երկու փուլերի մասին մարքս-լենինյան կանխատեսումը։ Այդ երկու փուլերը միևնույն հասարակական-տնտեսական ֆորմացիայի տարբեր աստիճաններն են, և, բնականաբար, նրանք իրարից ինչ-որ պատնեշով չեն բաժանված։ Կոմունիզմը նոր հասարակության զարգացման առավել հասուն, առավել բարձր աստիճանն է։ Կոմունիզմը աճում է սոցիալիզմից և հանդիսանում է նրա ուղղակի շարունակությունը։

Սոցիալիզմից կոմունիզմին անցնելը պատմական օրինաչափ պրոցես է, որը չի կարելի կամայականորեն խախտել կամ շրջանցել։ Մարքս-լենինյան պարտիաները,— ասում է ընկեր Ն. Ս. Խրուշչովը,— իրենց վերջնական նպատակը համարում են կոմունիզմի կառուցումը, բայց հասարակությունը կապիտալիզմից չի կարող ցատկել դեպի կոմունիզմ, առանց անցնելու զարգացման սոցիալիստական ստադիան։

Համագումարը քննադատեց նրանց, որոնք ասում են, թե հարկավոր է ավելի արագ արմատավորել կոմունիզմի սկզբունքները, ժամանակից շուտ անցնել ըստ պահանջմունքների բաշխման, մոռանալով, որ դրա համար դեռ տնտեսական պայմաններ չեն ստեղծվել, դեռ չկա նյութական բարիքների անհրաժեշտ առատություն, մարդիկ նախապատրաստված չեն կոմունիստաբար ապրելու և աշխատելու համար։

Բաշխման կոմունիստական սկզբունքները կիրականացվեն այն ժամանակ, երբ մենք կստեղծենք լիակատար առատություն բոլոր մարդկանց պահանջմունքները բավարարելու համար, երբ բոլոր մարդիկ սովորած կլինեն աշխատել կոմունիստաբար։ Եթե որոշ մարդիկ շտապում են արագ, հապճեպորեն մտցնել բաշխման կոմունիզմի սկզբունքները, ապա կան նաև այնպիսիները, որոնք սոցիալիզմից կոմունիզմին անցնելը դիտում են որպես ինչ-որ դանդաղ շարժում։

Շտապողականությունը կարող է հասցնել մեր գործի խեղաթյուրման ու վարկաբեկման, իսկ ձեռք բերածի վրա կանգ առնելը կհասցնի լճացման։ Ուրեմն այդ երկու երևույթներն էլ վտանգավոր են և դրանց դեմ անհրաժեշտ է պայքարել։

Սոցիալիզմից կոմունիզմին անցնելու օրինաչափ պրոցեսն արագացնելու համար մենք ունենք բոլոր հնարավորությունները, միայն թե հարկավոր է դրանք ճիշտ օգտագործել։

Արդյո՞ք հեռու է այն ժամանակը, երբ կարելի կլինի լրիվ բավարարել սովետական բոլոր մարդկանց կենսական պահանջմունքները։ Պատասխանելով այդ հարցին ևս, ընկեր Ն. Ս. Խրուշչովն ասում է. այդ ժամանակը «Թերևս այնքան էլ հեռու չէ, հաշվի առնելով հասարակական արտադրության աճի և հասարակության կուլտուրական զարգացման մեր հսկայական հնարավորությունները։ Դա ձեռք կբերվի ոչ թե միանգամից, այլ քայլ առ քայլ, ոչ թե մեկ ակտով, այլ հետևողականորեն, նյութա-արտադրական պայմանների նախապատրաստման համեմատ»։

digitised by A.R.A.R.@

Համագումարը մեր երկրի զարգացման ռեալ հնարավորություններից ելնելով գտավ, որ սննդի, բնակարանի, հագուստի ասպարեզում սովետական մարդկանց պահանջմունքները անհրաժեշտ և խելացի չափերով լրիվ բավարարելը կարելի կլինի իրագործել մոտ ապագայում։ Օրինակ՝ այնքան էլ շատ ժամանակ պետք չէ, որպեսզի, ասենք, մեր դպրոցական աշակերտները ձրի նախաճաշ ու ճաշ ստանան, բոլոր երեխաներն ընդգրկվեն մանկապարտեզներում, մանկամսուրներում ու գիշերօթիկ դպրոցներում և պահվեն հասարակության հաշվին։ Մոտիկ ապագայում մենք հնարավորություն կունենանք բավարարելու նաև չափահաս բնակչության պահանջմունքները։ Խոսքը, իհարկե, չի վերաբերում մարդկանց համար ցոփ ու շռայլ կյանք ստեղծելուն, նրանց ամեն մի քմահաճ պահանջը կատարելուն, այլ կուլտուրապես զարգացած մարդու առողջ պահանջները բարելավելուն։ Համեմատաբար առավել երկար ժամանակ է պետք, որպեսզի մարդկանց մեջ հասունանա ըստ ընդունակությունների աշխատելու ներքին պահանջը։

## 2. ԿՈՄՈՒՆԻԶՄԻ ՆՅՈՒԹԱ-ՏԵԽՆԻԿԱԿԱՆ ԲԱԶԱՅԻ ՍՏԵՂԾՈՒՄԸ

Մեր երկրի էկոնոմիկայի զարգացման տվյալ էտապի գլխավոր խնդիրը կոմունիստական հասարակարգի նյութա-տեխնիկական բազայի ստեղծումն է, սոցիալիստական արտադրողական ուժերի նոր, հզոր վերելքը։

Սոցիալիստական արտադրության արդի մակարդակի պայմաններում, ինչպես նշվեց վերևում, մենք դեռևս ի վիճակի չենք լիովին բավարարելու մարդկանց աճած պահանջմունքները, նրանց համակողմանի զարգացման համար ստեղծել նյութական և կուլտուրական բարիքների իրական առատություն։ Իսկ առանց այդ խնդրի լուծման, կոմունիզմի մասին խոսք լինել չի կարող։ Ուրեմն կոմունիզմին հասնելու համար ամենից առաջ անհրաժեշտ է է՛լ ավելի զարգացնել մեր երկրի արտադրողական ուժերը, նյութական բարիքների լիակատար առատություն ստեղծել։ Մենք պետք է ամեն բան անենք, որպեսզի կարճ ժամանակամիջոցում գերազանցենք կապիտալիստական առավել զարգացած երկրների արտադրության մակարդակը, ապահովենք աշխատանքի շատ ավելի բարձր արտադրողականություն։

Իսկ ի՞նչ է հարկավոր կոմունիզմի նյութա-տեխնիկական բազան ստեղծելու համար։ Համագումարը նշեց, որ դրա համար ամենից առաջ հարկավոր է ունենալ բարձր զարգացած ժամանակակից ինդուստրիա, երկրի լիակատար էլեկտրիֆիկացում, գիտա-տեխնիկական առաջադիմություն արդյունաբերության և գյուղատնտեսության բոլոր ճյուղերում, արտադրական բոլոր պրոցեսների կոմպլեքսային մեքենայացում ու ավտոմատացում, էներգիայի նոր աղբյուրների, բնական բազմահարուստ ռեսուրսների, սինթետիկ և այլ նոր նյութերի համակողմանի օգտագործում, բոլոր աշխատավորների կուլտուր-տեխնիկական մակարդակի աճ, արտադրության կազմակերպման հետագա բարելավում և աշխատանքի արտադրողականության բարձրացում։

Ընկեր Ն. Ս. Խրուշչովը բացատրում է Ամերիկայի Միացյալ Նահանգներին տնտեսական տեսակետից հասնելու վերաբերյալ պարտիայի պահանջի իմաստը։ Այդ բացատրությունը սկզբունքային մեծ նշանակություն ունի, որովհետև կան մարդիկ, որոնք կարծում են, որ եթե մենք հասնենք ԱՄՆ-ին,



դրանով իսկ կավարտենք կոմունիզմի կառուցումը։ Դա ծիծաղաշարժ լինելուց բացի, կոպիտ սխալ է։ ԱՄՆ-ին տնտեսական տեսակետից հասնելը մեր առաջընթացի վերջնական սահմանագիծը չէ, այլ միայն կապիտալիզմի հետ եղած մրցության վճռական էտապը։

Նյութա-տեխնիկական նոր հիմքի վրա սոցիալիստական արտադրության հետագա զարգացման, աշխատանքի հետ ուսուցումն ավելի ու ավելի սերտորեն միացնելու համեմատ տեղի կունենա մտավոր ու ֆիզիկական աշխատանքի միջև եղած էական տարբերությունների աստիճանական վերացում։ Համակողմանիորեն զարգացած սովետական մարդու համար աշխատանքը կդառնա ամենաառաջին կենսական պահանջմունք, բերկրանքի ու հաճույքի աղբյուր։ Դրան մեծ չափով կնպաստեն այն միջոցառումները, որ նախատեսվում է կիրառել յոթնամյակի ընթացքում՝ աշխատանքային օրվա կրճատման, աշխատանքի պայմանների բարելավման ուղղությամբ։

Կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծումը ոչ միայն յոթնամյա պլանի կենտրոնական խնդիրը կլինի, այդ նպատակին կծառայի նաև մեր երկրի ժողովրդական տնտեսության զարգացման տասնհինգամյա պլանը։

Մեր երկրում բոլոր օբյեկտիվ հնարավորությունները կան կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծման համար։ Բայց դա դեռ բավական չէ։ Այդ պլանների իրականացումը պահանջում է ընդհանուր առմամբ ամբողջ սովետական ժողովրդի և առանձին վերցրած յուրաքանչյուր մարդու անձնվեր աշխատանքը։

Սովետական մարդկանց ոգևորելու, աշխատանքային նոր սխրանքների մոբիլիզացնելու են կոչված մեր պրոպագանդան, ագիտացիան և գաղափարական աշխատանքի մյուս ձևերը։

## 3. ՆՅՈՒԹԱԿԱՆ ԲԱՐԻՔՆԵՐԻ ԲԱՇԽՄԱՆ ՊՐՈԲԼԵՄԸ

Համագումարը մեծ ուշադրություն նվիրեց նաև գիտական կոմունիզմի կարևորագույն պրոբլեմներից մեկի՝ հասարակության կողմից արտադրված նյութական բարիքները հասարակության բոլոր անդամների միջև բաշխելու պրոբլեմին։

Տնտեսական հարաբերությունների սիստեմում, ինչպես հայտնի է, առաջատար տեղը միշտ պատկանել է և կպատկանի արտադրությանը։ Բաշխման հարաբերությունները արտադրության սոսկ արդյունքն են։ Սպառման առարկաների բաշխման ձևերն ու սկզբունքներն իրենք կախված են ամենից առաջ արտադրության եղանակի բնույթից։ Միաժամանակ, մարքսիզմ-լենինիզմը չի ժխտում բաշխման ակտիվ դերը արտադրության զարգացման գործում։ Վ. Ի. Լենինը ընդգծել է, որ «բաշխումը մի մեթոդ է, մի գործիք, մի միջոց արտադրությունը բարձրացնելու համար» (Երկեր, հատ. 32, էջ 578)։ Ահա թե ինչու մեր պարտիան միշտ մեծ նշանակություն է տվել կոմունիզմի առաջին փուլում իրենց աշխատանքի արդյունքներով աշխատողների նյութական շահագրգռվածության սկզբունքին։

Բաշխման մարքս-լենինյան տեսությունը հետագա զարգացում ստացավ ՍՄԿՊ XXI համագումարում ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցման մեջ։ Նախ,

digitised by A.R.A.R.@

բախշման հարցերը այստեղ քննվում են ավելի լայն իմաստով, քան մինչև այժմ ընդունված էր մեր գրականության մեջ։ Երկրորդ, զեկուցման մեջ բացահայտված են «յուրաքանչյուրից՝ ըստ ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ աշխատանքի» սոցիալիզմի սկզբունքի էությունը և ժամանակակից պայմաններում նրա օգտագործման առանձնահատկությունները։ Առանձին ուժով ընդգծվում է աշխատանքի բարոյական ազդակների աճող նշանակությունը։

Սոցիալիստական հասարակարգում բանվորների, ծառայողների, ինչպես նաև կոլտնտեսականների կենսամակարդակը որոշվում է ոչ միայն նրանց աշխատավարձով. աշխատավարձը լրացվում է կոլեկտիվ սպառման խոշոր ֆոնդերով։ Այդ ֆոնդերին են պատկանում լուսավորության, առողջապահության, սոցիալական ապահովության, կուլտուրական կարիքների համար և այլ նպատակներով ծախսվող միջոցները։ Ինքնին հատկանշական է այդ բոլոր արտոնությունների վիթխարի աճման բուն փաստը, որոնցից աշխատավորները օգտվում են ձրի։

Բավական է նշել, որ 1965 թվականին հասարակական սպառման ֆոնդերը կհասնեն 360 միլիարդ ռուբլու, 1959 թվականի 215 միլիարդի դիմաց։ Մեկ աշխատողին տարեկան կընկնի մոտ 3800 ռուբլի։

Այսպիսով, սոցիալիզմի օրոք աշխատավորների կենսամակարդակը բնութագրվում է ոչ միայն նրանց աշխատավարձով։ Այս կապակցությամբ մեր ժամանակներում ավելի ճիշտ է խոսել աշխատավորների ռեալ եկամուտների մասին, որոնք կազմվում են աշխատավարձից և յուրաքանչյուր աշխատավորին ընկնող հասարակական ֆոնդերի բաժնից։ Եթե դրանք ամբողջությամբ վերցրած հարաբերակցության մեջ դնենք, ապա ժողովրդական սպառման ֆոնդի այն մասը, որը բաշխվում է առանց ուղղակի կախման մեջ դնելու մարդկանց աշխատանքից, ներկայումս կազմում է այդ ֆոնդի ընդհանուր գումարի մեկ քառորդը։

Սպառման առարկաների առատության ստեղծումը բաշխման կոմունիստական սկզբունքին անցնելու գլխավոր պայմաններից մեկն է։ Սոցիալիստական հասարակության մեջ, որտեղ վերացված է մարդու կողմից մարդու շահագործումը և արտադրության բոլոր հիմնական միջոցները գտնվում են իրենց՝ աշխատավորների տնօրինության ներքո, բաշխման ձևերը ուղղակի կախման մեջ են արտադրված պրոդուկտների քանակից։

Սոցիալիստական հասարակարգում կոմունիզմի նյութական նախադըրյալների հետ միասին ստեղծվում են նաև հոգևոր նախադրյալները։ Ծնունդ է առել նոր մարդ, որն իր բարոյական հատկություններով նշանակալիորեն բարձր է կանգնած կապիտալիստական հասարակարգի մարդուց։ Սակայն կոմունիզմի առաջին փուլում չեն վերանում որակյալ և հասարակ աշխատանքի տարբերությունները, դեռ պահպանվում են դեպի աշխատանքը եղած վերաբերմունքի մեջ անցյալի մնացուկները։ Այդ պատճառներով կոմունիզմի առաջին փուլում միակ հնարավորը և ճիշտը՝ պրոդուկտների բաշխումն է ծախսված աշխատանքի քանակի ու որակի համեմատ։ Այլ կերպ ասած, սոցիալիստական հասարակարգում բաշխումը հիմնականում իրականացվում է «յուրաքանչյուրից՝ ըստ ընդունակությունների, յուրաքանչյուրին՝ ըստ աշխատանքի» սկզբունքով։



Որոշ գիտական աշխատողներ, պնդելով, որ ըստ աշխատանքի բաշխումը նշանակում է սոցիալիստական հասարակարգում կիրառել բուրժուական իրավունք, այստեղից հետևեցնում էին, թե անհրաժեշտ է անցնել բոլոր աշխատողների միջև հասարակական պրոդուկտների հավասար բաշխման։ Բաշխման նկատմամբ հավասարարական մոտեցումը անհամատեղելի է սոցիալիզմի հիմնական սկզբունքի հետ, դա ուղղակի հակասում է աշխատավորների նյութական շահագրգռվածության սկզբունքին։ Ուստի մեր պարտիան սոցիալիստական շինարարության բոլոր էտապներում հանդես է եկել մանր բուրժուական հավասարարության դեմ։ XXI համագումարում այդ պրոբլեմին նույնպես մեծ ուշադրություն նվիրվեց։

Մեր մարդկանց զգալի մասի համար աշխատանքը հետզհետե կենսական պահանջմունք է դառնում։ Բայց չի կարելի մոռանալ նաև այն, որ մեզանում դեռևս կան պորտաբույծներ, որոնք չեն ուզում աշխատել հասարակության բարօրության համար։ Եվ, եթե նրանք ազնիվ աշխատավորների հետ համահավասար օգտվեին նյութական բարիքներից, ապա դա կարող էր բացասաբար անդրադառնալ ոչ միայն արդյունքների արտադրության, այլև աշխատավորների կոմունիստական դաստիարակության վրա։

Ինչո՞ւ է անհրաժեշտ մեր պրոպագանդայում առանձնահատուկ ուշադրություն նվիրել այդ հարցին։ Նախ և առաջ այն պատճառով, որ սոցիալիզմից կոմունիզմին անցնելու պրոբլեմներով զբաղվող մեր որոշ գիտնականների մոտ բաշխման հարցերը երկար ժամանակ մեկնաբանվել են վերացականորեն, առանց ռեալ իրականությունը հաշվի առնելու։

Բայց պետք է նկատի ունենալ այդ պրոբլեմի նաև մյուս կողմը։ Խոսքը վերաբերում է սոցիալական այնպիսի կարևորագույն խնդրի լուծմանը, ինչպիսին յուրաքանչյուր մարդու մեջ իր ընդունակությունների չափով աշխատելու պահանջի արմատավորումն է։ Ի՞նչ ուղիներով կլուծվի այդ խնդիրը։ Այս տեսակետից առաջնահերթ դեր է պատկանում ըստ ծախսված աշխատանքի քանակի ու որակի բաշխելու սոցիալիստական սկզբունքին։ Ըստ աշխատանքի բաշխումը մարդկանց սովորեցնում է կարգապահություն, աշխատանքը դարձնում է ընդհանուր ու պարտադիր և հետզհետե այն վերածվում է կենսական պահանջի։

Ապագայի նկատմամբ մարդկանց պատկերացումները հետադարձ ներգործություն են ունենում նրանց գիտակցության և հասարակական վարքագծի վրա, ոգեշնչում նրանց պայքարի մեջ, իսկ երբեմն էլ, երբ այդ պատկերացումները միակողմանի են, ապակողմնորոշում են։ Հինը հակադրվում է նորին ուղղակիորեն, կանգնում է նրա առաջընթացի ճանապարհին որպես խոչընդոտ և փորձում է հարություն տալ իր դարն ապրած անցյալ սովորույթներին, ապրելակերպին ու նորմաներին։ Այլ կերպ են ազդում մարդկանց գիտակցության ու վարքագծի վրա ապագայի վերաբերյալ նրանց միակողմանի, մտածողության ընդհանուր սիստեմից անջատ և պրակտիկ կյանքից կտրված պատկերացումները, որոնք, եթե թույլատրելի է այսպես անվանել, արտահայտվում են ուլտրա-նորի ձևով։ Այն անմիջականորեն չի փաթաթվում նորի ոտքերին և առաջին հայացքից նորի զարգացման ճանապարհին ընկած խոչընդոտի տպավորություն չի թողնում։ Այն ներգործում է անուղղակիորեն, փորձում է առաջ վազել և իր հետևից քարշ տալ օրինաչափորեն զարգացող

digitised by A.R.A.R.@

*նորը, կտրել նրան իր հողից, որից նա սնվում է և դուրս բերել իր օրինաչափ զարգացման հունից։*

*Կոմունիզմը հասարակության կազմակերպման բարձրագույն ձևն է։ Հետևապես մարդկանց ամենակազմակերպված ու ամենաներդաշնակ համագործակցությունը, երբ հասարակության յուրաքանչյուր անդամ կատարում է իր արտադրական ֆունկցիաները և հասարակական պարտականությունները որոշված ժամին ու որոշակի ծրագրով, դառնում է հասարակության զարգացման օբյեկտիվ օրենքը։*

## 4. ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՍԵՓԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԵՐԿՈՒ ՁԵՎԵՐԻ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՈՒ ՄԵՐՁԵՑՄԱՆ ՈՒՂԻՆԵՐԸ

*ՍՄԿՊ XXI համագումարի որոշումներում և ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցման մեջ խոր կերպով լուսաբանվում է սոցիալիստական սեփականության կոլտնտեսային և համաժողովրդական ձևերի զարգացման ու մերձեցման ուղիների հարցը։*

*Սոցիալիստական սեփականության երկու ձևերի մերձեցման պրոբլեմի հանգուցակետը կոլտնտեսային կարգի հետագա զարգացումն է։ Որքան արագ աճեն գյուղատնտեսության արտադրողական ուժերը, այնքան արագ կիրականանա գյուղում սոցիալիստական արտադրական հարաբերությունների կատարելագործման պրոցեսը։ Մարքս-լենինյան տեսության այս ընդհանուր դրույթը կիրագործվի կոնկրետ միջոցառումների մի ամբողջ սիստեմի միջոցով։*

*Հիմնական լծակը, որի օգնությամբ իրականացվում է սոցիալիստական սեփականության երկու ձևերի մերձեցման պրոցեսը, անբաժանելի ֆոնդերի աճը և նրանց որակական փոփոխությունն է։ Կոլտնտեսությունների անբաժանելի ֆոնդերի ստեղծմանը կոլտնտեսականներից բացի անմիջականորեն մասնակցել և մասնակցում է ամբողջ ժողովուրդը։*

*Անբաժանելի ֆոնդերը իրենց տնտեսական էությամբ մոտենում են համաժողովրդական սեփականությանը։ Եթե դրանք բնութագրելու լինենք քաղաքական տեսանկյունից, ապա դրանք արտահայտում են երկու բարեկամ դասակարգերի՝ բանվորների և գյուղացիների հարաբերությունները։ Անբաժանելի ֆոնդերի աճմանը զուգընթաց տեղի կունենան երկու պրոցեսներ. մի կողմից՝ բանվոր դասակարգի ու գյուղացիության դաշինքի ամրապնդում և մյուս կողմից՝ այդ դասակարգերի միջև տարբերությունների վերացում։*

*Վճռական պայմաններից մեկը, որը կնպաստի արտադրական հարաբերությունների հետագա կատարելագործմանը, միջկոլտնտեսային արտադրական կապերի ընդլայնումն է։ Արդյունաբերական, շինարարական և այլ տնտեսական ձեռնարկությունների համատեղ կազմակերպումը, էլեկտրակայանների, ճանապարհների, ոռոգման և չորացման սիստեմների, գյուղատնտեսական մթերքների վերամշակման ու պահպանման ձեռնարկությունների համատեղ շինարարությունը՝ այս բոլոր տնտեսական միջոցառումները տնտեսապես կշաղկապեն, կմիահյուսեն առանձին կոլտնտեսությունների սեփականությունը, նրա սահմանները դուրս կբերեն առանձին արտելների շրջանակներից։*

*Արտադրական հարաբերությունների կատարելագործումը դրսևորվում է նաև այն բանում, որ տարեցտարի աճում է հանրային տնտեսության դերը*



*կոլտնտեսականների նյութական ու կենցաղային պահանջմունքների բավարարման գործում։ Անձնական օժանդակ տնտեսությունը սկսում է աստիճանաբար կորցնել իր նշանակությունը։ Արդեն ներկայումս առավել խոշոր կոլտնտեսություններում կոլտնտեսականները կամավոր կերպով հրաժարվում են անձնական տնտեսությունից, իսկ կոլտնտեսությունները կազմակերպում են անհրաժեշտ մթերքների մատակարարում կոլտնտեսականների ընտանիքներին։*

*Սեփականության երկու ձևերի մերձեցման մասին վկայում է կոլտնտեսություններում աշխատանքի վարձատրության ձևերի փոփոխությունը։ Արդեն ներկայումս շատ կոլտնտեսություններ անցնում են կոլտնտեսականների ամենամսյա ավանսավորման, ընդ որում, աշխօրի մեջ անշեղորեն ավելանում է դրամական վարձատրության տեսակարար կշիռը և կրճատվում բնավարձի տեսակարար կշիռը։ Կոլտնտեսություններում աշխատանքի վարձատրության ձևերի զարգացման մեջ նկատվում է դրանք պետական ձեռնարկություններում գոյություն ունեցող աշխատավարձի ձևերին մերձենալու տենդենց։*

*Այս բոլոր միջոցառումներն էլ իրենց ամբողջությամբ որոշում են այն*
*ուղղությունը, որով կընթանա ընթացիկ յոթնամյակում արտադրական հարա-*
*բերությունների կատարելագործումը գյուղում։ Սեփականության երկու ձևերի*
*մերձեցման, քաղաքի և գյուղի, մտավոր և ֆիզիկական աշխատանքի միջև*
*էական տարբերությունների հաղթահարման շնորհիվ փոփոխություններ տեղի*
*կունենան նաև մեր հասարակության դասակարգային կառուցվածքի մեջ։ Բան-*
*վոր դասակարգի և գյուղացիության միջև, ինչպես նաև այդ երկու դասակար-*
*գերի և ինտելիգենցիայի միջև տարբերությունները աստիճանաբար կվերա-*
*նան։*

*Անտարակույս, այդ պրոցեսները տեղի են ունենում արտադրական հա-*
*րաբերությունների հետագա կատարելագործմանը զուգընթաց։ Սակայն դրանք*
*չի կարելի հասկանալ որպես մի ինչ-որ տարերային զարգացում։ Կոմունիստա-*
*կան շինարարության այդ արմատական խնդիրների լուծման վրա լուրջ ազդե-*
*ցություն կգործի և պետք է գործի մեր գաղափարական աշխատանքը։*

## 5. ՀԱՍԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՄԱՆ ՊԵՏԱԿԱՆ ԿԱՌՈՒՑՎԱԾՔԻ ՈՒ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ՀԱՐՑԵՐԸ

*Կոմունիզմի ծավալուն կառուցման պայմաններում առանձնահատուկ*
*նշանակություն է ստանում սոցիալիստական պետության դերի ու ֆունկցիա-*
*ների պրոբլեմը։*

*Սովետական պետությունը արդեն նշանակալի փոփոխություններ է կրել։*
*Այն հետզհետե պայմաններ է ստեղծում իր մահացման համար, որը վերջնա-*
*կանապես տեղի կունենա կոմունիզմի բարձրագույն փուլում։ Իսկ կոմունիզմի*
*ծավալուն կառուցման ժամանակաշրջանում պետությունը ոչ միայն պահ-*
*պանվում է, այլև ամեն կերպ ամրապնդվում է։ Կապիտալիստական սիստեմի*
*առկայությունը անհրաժեշտ է դարձնում պետության գոյությունը նաև կոմու-*
*նիզմի ժամանակ։*

*Պետության մահացման պրոցեսը սոցիալիստական պետականությունը*
*կոմունիստական հասարակական ինքնակառավարման վերածվելու պրոցես է։*

digitised by A.R.A.R.@

Պետական ֆունկցիաների վերաճումը հասարակական ֆունկցիաների՝ մեր երկրում արդեն սկսվել է և աստիճանաբար առաջ է ընթանում բոլոր գծերով: Սովետական պետության ֆունկցիաների ձևավորումը, դրանցից մի քանիսի մահացումը, ինչպես նաև պետության առանձին ֆունկցիաների հանձնումը հասարակական կազմակերպություններին, տեղի է ունենում մեր աչքի առջև: Արդեն մահացել է պետության այնպիսի ֆունկցիա, ինչպիսին է երկրի ներսում սոցիալիզմի թշնամիներին ռազմական ուժով ճնշելը: Այդ ֆունկցիան անհետացավ շահագործող դասակարգերի անհետացման հետ միասին: Պետության այլ ֆունկցիաներ էական փոփոխություններ են կրել, և այդ կապակցությամբ փոխվել են սոցիալիստական պետության գործունեության ձևերն ու մեթոդները: Խիստ նեղացել է հարկադրանքի ոլորտը, ավելի ու ավելի մեծ նշանակություն են ստանում մասսաների համոզման մեթոդները:

Սոցիալիստական շինարարության սկզբնական ժամանակաշրջանում պետական անվտանգության, սովետական միլիցիայի օրգանները և դատարանները գործ ունեին գլխավորապես քաղաքական հանցագործություններ կատարող պետական հանցագործների հետ: Ներկայումս, մեր երկրում հանցագործությունների թվի կրճատման հետ միաժամանակ, արդեն չկան քաղաքական հանցագործությունների համար քաղաքացիներին դատական պատասխանատվության ենթարկելու փաստեր: Դա սոցիալիզմի մեծագույն նվաճումն է: Դատաքննչական օրգանները գլխավորապես գործ են ունենում խուլիգանների և քրեական հանցագործների հետ, իսկ պետական անվտանգության օրգանների գործունեությունն իր սուր ծայրով ամենից առաջ ուղղված է իմպերիալիստական պետությունների կողմից մեր երկիրն ուղարկվող գործակալների դեմ:

Բացի դրանից, պետք է նշել, որ խուլիգանների ու գողերի, խաբեբաների և հասարակական կարգն ու սոցիալիստական համակեցության կանոնները խախտողների դեմ պայքար են մղում ոչ միայն միլիցիայի օրգաններն ու ժողովրդական դատարանը, այլև հասարակական կազմակերպությունները:

XXI համագումարը պահանջեց ավելի շատ ուշադրություն նվիրել ժողովրդական միլիցիայի կամավոր ջոկատներին և ընկերական դատարաններին, որոնք պետք է պայքար մղեն զանազան կարգի խախտումների կանխման համար: Ընկերական դատարանները պետք է քննեն ոչ միայն արտադրական բնույթի, այլև կենցաղային, բարոյական բնույթի հարցեր, կոլեկտիվի՝ հասարակական կարգ ու կանոնի նորմաներից շեղումներ կատարած անդամների սխալ վարքագծի փաստեր: Կոլեկտիվի ուժը մեծ ներգործություն է ունենում սոցիալիստական բարոյականության նորմաները խախտող առանձին անձանց վրա:

Իհարկե, հարկավոր է մշտապես հիշել, որ հասարակական կազմակերպությունների հարաճուն դերը չպետք է նվազեցնի պետական կամ տնտեսական օրգանների դերն ու նշանակությունը: Նրանց նշանակությունը կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում հսկայական է: Հատկապես կարևոր են սոցիալիստական պետության խնդիրները խաղաղության պաշտպանության գործում, արտաքին թշնամիներից երկրի պաշտպանության, ինչպես նաև տնտեսական-կազմակերպչական ու կուլտուր-դաստիարակչական աշխատանքի ասպարեզում: Արդի պայմաններում խնդիրն այն չէ, որ արհեստականորեն արագացնենք պետության՝ որքան կարելի է շատ ֆունկցիաների հանձնումը հասարակական կազմակերպություններին, այլ այն, որ ամեն կերպ



ամրապնդենք պետությունը, այս կամ այն ֆունկցիան հասարակական կազմակերպություններին հանձնենք աստիճանաբար, հաշվի առնելով պատմական պայմանները: Միայն այդ ճանապարհով կարելի է իսկական պայմաններ նախապատրաստել հասարակության զարգացման բարձրագույն ստադիայում՝ կոմունիզմի լիակատար հաղթանակի պայմաններում, պետության մահացման համար:

## 6. ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՆ ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՍԱՐԱԿԱՐԳԻ ՂԵԿԱՎԱՐ ԵՎ ՈՒՂՂՈՒԹՅՈՒՆ ՏՎՈՂ ՈՒԺՆ Է

Աշխատավորների, ինչպես նաև բոլոր հասարակական կազմակերպությունների ստեղծագործական ակտիվության ու նախաձեռնության բարձրացումը անխզելիորեն կապված է կոմունիստական պարտիայի հարաճուն դերի հետ, որպես հասարակության ղեկավար և ուղղություն տվող ուժի:

Ժամանակակից ռևիզիոնիստները պնդում են, թե կոմունիզմին մոտենալու համեմատ պարտիայի դերը հետզհետե պետք է թուլանա: Այս պնդումը աղաղակող հակասության մեջ է մարքսիզմ-լենինիզմի, կոմունիստական շինարարության պրակտիկայի հետ: Ինչպես մեր երկրում, այնպես էլ մյուս սոցիալիստական պետություններում սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման ամբողջ փորձը համոզիչ կերպով ցույց է տալիս անվերապահ ճշտությունը լենինիզմի այն կարևորագույն դրույթի, որ կոմունիստական հասարակարգի կառուցման պրոցեսում պարտիայի դերը պետք է ոչ թե թուլանա, այլ անընդհատ ուժեղանա: Դա պայմանավորված է հետևյալ հիմնական օբյեկտիվ պատճառներով:

Մեր տնտեսությունը զարգանում է պլանով, առաջավոր գիտության հիման վրա, զարգանում է բանվորների, կոլտնտեսականների և սովետական ինտելիգենցիայի ստեղծարար, նպատակասլաց աշխատանքի շնորհիվ: Մեր զարգացման օրենքն այն է, որ որքան մոտենում ենք կոմունիզմին, այնքան մեծանում է և կմեծանա սոցիալիստական գիտակցության, գաղափարախոսության, հետևաբար նաև Կոմունիստական պարտիայի նշանակությունը:

Կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման պայմաններում սիստեմատիկաբար կընդլայնվի դեմոկրատիան, ավելի ու ավելի մեծ դեր կխաղան հասարակական կազմակերպությունները, ավելի ու ավելի ինտենսիվ կերպով կընթանա սոցիալիստական պետականությունը կոմունիստական հասարակական ինքնակառավարման վերածվելու պրոցեսը: Բայց ո՞վ պետք է ուղղություն տա այդ պրոցեսին, պետական և աշխատավորների հասարակական բոլոր կազմակերպությունների գործունեությունն ուղղի միասնական նպատակին՝ կոմունիզմի հաղթանակին: Միայն պարտիան, որպես հասարակական կազմակերպության բարձրագույն ձև, որը տիրապետում է հասարակական զարգացման օրենքներին և ցեմենտում աշխատավորների բոլոր կազմակերպություններին, կոորդինացնում ու խելացիորեն ուղղություն է տալիս նրանց աշխատանքին, կոմունիզմի համար մղվող ընդհանուր պայքարում նրանց ջանքերին:

Յոթնամյակի խնդիրները պահանջում են մոբիլիզացնել սովետական ժողովրդի բոլոր ուժերը, նրա եռանդը, ստեղծագործական անսպառ ընդունակությունները: «Յոթնամյա պլանը,— նշում է ընկեր Ն. Ս. Խրուշչովը,— պատմա-



ՊԵՏԱԿԱՆ ԳՐԱԴԱՐԱՆ Гос. Библиотека ՀՍՍՌ-Арм.ССР им. А. Мясникяна Ա. ՄՅԱՍՆԻԿՅԱՆԻ ԱՆՎԱՆ

digitised by A.R.A.R.@

կան նոր սահմանագիծ է երկրի զարգացման գործում, և այդ սահմանագիծը գրավելու համար մենք պետք է մոբիլիզացնենք, ճիշտ տեղաբաշխենք ու լավ նախապատրաստենք ուժերը՝ առաջընթաց հզոր թռիչք գործելու համար»։ Յոթնամյա պլանի խնդիրների վեհությունն ու բարդությունը հրամայաբար թելադրում են մասսաների մեջ պարտիայի կազմակերպչական ու քաղաքական աշխատանքի հետագա ըստ ամենայնի բարձրացման անհրաժեշտությունը։

Կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման պայմաններում առանձնահատուկ սրությամբ դրվում է աշխատանքում կոնկրետության, նպատակասլացության, խոր գործիմացության հարցը։ Պարտիական կազմակերպությունների կազմակերպական և գաղափարական աշխատանքը այդ պայմաններում պետք է ենթարկվի միանգամայն որոշակի գործնական խնդիրների լուծմանը։

## III

Խոսելով մեր պարտիական կազմակերպությունների գաղափարական աշխատանքի առավել հրատապ հարցերի մասին, անհրաժեշտ ենք համարում ընդգծել, որ ժամանակակից պայմաններում վիթխարի չափով աճում է ինչպես բանավոր, այնպես էլ տպագիր պարտիական պրոպագանդայի դերը։ Հենց պարտիական պրոպագանդան է այն վճռական օղակը, որից բռնելով միայն կարելի է հաջողությամբ լուծել գալիք կոմունիստական հասարակարգի մարդու դաստիարակության բոլոր բազմազան ու բարդ խնդիրները։ Պարտիական կազմակերպությունները կոչված են ՍՄԿՊ XXI համագումարի որոշումներին, մեր երկրի պատմական զարգացման նոր էտապին պատասխանել պրոպագանդիստական աշխատանքի բովանդակության արմատական բարելավմամբ ու նրա թափի ուժեղացմամբ, այդ աշխատանքի ձևերի ու մեթոդների հետագա կատարելագործմամբ։

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի լենինյան Կենտրոնական Կոմիտեի ձեռնարկած միջոցառումների շնորհիվ պարտիայի XX համագումարի որոշումների, նրա ընդունած լենինյան կուրսի կենսագործման ուղղությամբ խոշոր հաջողություններ են ձեռք բերված։ Առանձնապես ակնհայտ են այդ հաջողությունները ներպարտիական կյանքի լենինյան նորմաների վերականգնման, Կոմունիստական պարտիայի հերոսական պատմության ու տեսության հարցերի լուսաբանման, մարքսիզմ-լենինիզմի գաղափարների պրոպագանդման, ինչպես նաև գիտության, գրականության, արվեստի և կուլտուրլուսավորական բոլոր բնագավառներում։

Մեր պարտիայի գաղափարական աշխատանքի հիմքը մարքսիզմ-լենինիզմի ամենահաղթ ուսմունքն է։ Բացառիկ կարևոր նշանակություն ունի մարքսիզմի կլասիկների՝ Կ. Մարքսի, Ֆ. Էնգելսի, Վ. Ի. Լենինի աշխատությունների հրատարակությունը։ Մարքս-լենինյան գրական հարուստ ժառանգության լայն մասսայականացումն ու խոր յուրացումը խոշոր ազդակ է հանդիսանում մեր գաղափարական աշխատանքի ամբողջ դրվածքի բարելավման գործում։

ՍՄԿՊ Կենտկոմին կից Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտն իրագործում է ՍՄԿՊ-ի համագումարների և պլենումների արձանագրությունների ու սղագրական



հաշվետվությունների հրատարակումը, որոնք կոչված են ծառայելու որպես սկզբնաղբյուրներ մեր պարտիայի պատմության ուսումնասիրման գործում։

ՍՄԿՊ Կենտկոմի ցուցումներով հրատարակության է պատրաստվում Վ. Ի. Լենինի գիտական կենսագրությունը, որտեղ պետք է փաստական հարուստ նյութի միջոցով և տեսական բարձր մակարդակով վեր հանվի Կոմունիստական պարտիայի ու Սովետական պետության մեծ ստեղծողի դերը։ Հեղինակային կոլեկտիվը հրատարակման է պատրաստել «Սովետական Միության Կոմունիստական պարտիայի պատմության» նոր ձեռնարկը։ Լույս են տեսել «Մարքսիստական փիլիսոփայության հիմունքները» գիրքը, քաղաքատնտեսության և քաղաքական գիտելիքների հիմունքների ուսումնական ձեռնարկների նոր, վերամշակված հրատարակությունները։ Մեզ մոտ ստեղծված են բոլոր հնարավորությունները մարքսիզմ-լենինիզմի պրոպագանդան նոր, ավելի բարձր աստիճանի հասցնելու համար։

Հայտնի է, թե ինչ մեծ աշխատանք կատարեց Հայաստանի պարտիական կազմակերպությունը իդեոլոգիական աշխատանքի բոլոր բնագավառներում, առանձնապես մարքսիզմ-լենինիզմի պրոպագանդայի, գիտական հիմնարկների և ստեղծագործական միությունների գործունեությունը բարելավելու ասպարեզում։

Վերջին տարիների ընթացքում Սովետական Հայաստանի պատմաբաններն ուշագրավ աշխատանք են կատարել Հայաստանի կոմունիստական կազմակերպությունների, ռևոլյուցիոն շարժումների պատմության մի շարք պրոբլեմների գիտական մեկնաբանման, փաստաթղթերի ժողովածուների, մենագրությունների հրատարակման ուղղությամբ։ Աշխատավորության կոմունիստական դաստիարակության գործում որոշակի դեր կխաղա հավատարիմ լենինյան Ստ. Շահումյանի երկերի հրատարակությունը։ Հրատարակվել են Բ. Կնունյանցի, Ս. Սպանդարյանի, Ալ. Մյասնիկյանի երկերի ժողովածուները։ Մի շարք աշխատություններ են հրատարակվել հայ ժողովրդի պատմության, սովետական կարգերի հաստատման, Հայաստանի Կոմունիստական պարտիայի պատմության և այլ հարցերին նվիրված։ Այս ամենը օգնում են ճիշտ լուսաբանել Անդրկովկասի ռևոլյուցիոն շարժումների, մասնավորապես սովետական կարգերի հաստատման համար մղված պայքարի հարցերը։

Դժբախտաբար, պետք է նկատել, որ գաղափարական աշխատանքի բնագավառում դեռևս կան թերություններ և սայթաքումներ։

Հայտնի է, որ հայ ժողովրդի պատմության այնպիսի հարցեր, ինչպիսիք են՝ ազգային-ազատագրական շարժումների, հասարակական մտքի պատմության, հայկական բուրժուական նացիոնալիզմի դրսևորումների ճիշտ բնութագրությունները ոչ միայն գիտական, այլև քաղաքական նշանակություն ունեն։ Հայաստանի Կոմունիստական պարտիայի վերջին մի քանի համագումարները այդ ուղղությամբ որոշակիորեն նախազգուշացրել էին մեր պատմաբաններին ու փիլիսոփաներին, նրանց առջև կոնկրետ պրոբլեմներ դրել։ Բայց դրանք առաջվա պես մնում են պրոբլեմներ։ Դա մասամբ պետք է բացատրել նրանով, որ մեր որոշ պատմաբաններ և փիլիսոփաներ, որոնք կարող են ձեռնամուխ լինել այդ հարցերի մարքսիստական մեկնաբանմանը, հանդես են բերում անհամարձակություն, վախենում են՝ հանկարծ «ինչ-որ մի բան դուրս չգա՞»։ Ոմանք էլ շտապողականություն են հանդես բերում,

digitised by A.R.A.R.@

առանց նյութը լավ ուսումնասիրելու, խոր վերլուծություններ կատարելու, շուտ և շատ տպագրվելու տենդով տարված, գրական շուկա են հանում իրենց սեվագրությունները, պարզ ասած՝ խոտանը, դրանով իսկ շփոթ ստեղծում շատ հարցերի գիտական լուսաբանության գործում։

Հայ հասարակական-քաղաքական հոսանքների բնութագրության գործում կոպիտ սխալներ թույլ տվեց Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի ֆիլիալի նախկին դիրեկտոր ընկ. Ար. Մնացականյանն իր գրավոր և բանավոր ելույթներում։ Փաստորեն նահանջելով գիտության լենինյան պարտիականության դիրքերից, նա անհիմն կերպով փորձեց վերանայել հայկական բուրժուական լիբերալիզմին և նացիոնալիստական հոսանքներին տրված մարքսիստական միանգամայն ճիշտ գնահատականները, օբյեկտիվորեն հանգեց նրանց նացիոնալիզմի սքողմանը։ Հայաստանի ԿՊ Կենտկոմը դատապարտեց ընկ. Ար. Մնացականյանի սխալները։ Սակայն գործը մինչև վերջ հասցրած չենք լինի, եթե հետևողականորեն չմերկացնենք բուրժուական իդեոլոգիային ամենափոքր իսկ զիջումներ անելու յուրաքանչյուր փորձ։

Մի զեկուցման մեջ հնարավոր չի անդրադառնալ շատ խնդիրների։ Այդ պատճառով էլ կսահմանափակվենք միայն մի քանի հարցերի համառոտ շարադրությամբ, որոնք, մեր կարծիքով, արդիական կարևոր նշանակություն ունեն։

## 1. ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՊԱՐՏԻԱՅԻ ԳԻՏԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ ՍՏԵՂԾԵԼՈՒ ՄԱՍԻՆ

Հայաստանի Կոմունիստական պարտիայի Կենտկոմի հանձնարարությամբ ՍՄԿՊ Կենտկոմին կից Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի Հայկական ֆիլիալը նախապատրաստեց և 1958 թվականի սկզբներին հայերեն լեզվով հրատարակեց «Հայաստանի Կոմունիստական պարտիայի պատմության ուրվագծեր»։ Հարկ չկա բացատրելու, որ այդ ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպության պատմության սիստեմատիկ շարադրման առաջին փորձն էր և, իրոք, նշանակալի երևույթ էր ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպության կյանքում։ Իր այդ որոշմամբ ՀԿՊ Կենտկոմը խնդիր էր դրել՝ ստեղծել ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպության գիտական պատմությունը, օգնել պրոպագանդիստներին և պարտիայի բոլոր անդամներին Հայաստանի Կոմպարտիայի պատմության ուսումնասիրության գործում։ Կենտրոնական Կոմիտեն ենթադրում էր, որ Հայաստանի Կոմպարտիայի գիտական պատմության ստեղծմամբ վերջ կդրվեր մի շարք կարևոր հարցերում տեղ գտած խառնաշփոթին։

Պետք է ասել, որ ՍՄԿՊ Կենտկոմին կից ՄԼԻ-ի ֆիլիալը և հեղինակային կոլեկտիվը որոշակի աշխատանք են կատարել Հայաստանի պարտիական կազմակերպությունների պատմությանն ու գործունեությանը վերաբերող փաստական նյութի հավաքման ու սիստեմավորման ուղղությամբ։ «Ուրվագծեր»-ի հեղինակները կարողացել են Հայաստանի Կոմպարտիայի պատմությունը շարադրել ՍՄԿՊ պատմության հետ սերտորեն շաղկապված և ցույց տալ, որ Հայաստանի պարտիական կազմակերպությունների գործունեությունն անբաժանելի է Ռուսաստանում սոցիալիստական ռեվոլյուցիայի հաղթանակի



և ՍՍՌՄ-ում սոցիալիզմի կառուցման համար Սովետական Միության Կոմունիստական պարտիայի մղած ընդհանուր պայքարից։

Դրա հետ մեկտեղ, հարկ կա արձանագրել, որ թերի մշակման և թույլ տրված սխալների հետևանքով, «Հայաստանի Կոմունիստական պարտիայի պատմության ուրվագծեր»-ը պարտիական կազմակերպությունների պատմության վերաբերյալ իսկական գիտական աշխատության նշանակություն չըստացավ։

«Հայաստանի Կոմունիստական պարտիայի պատմության ուրվագծեր»-ի ուսումնասիրությունը և քննարկումը պարտիական ակտիվի ու գիտական հասարակայնության կողմից, բացահայտեց այդ աշխատության մեջ եղած լուրջ թերություններն ու սխալները։ Պարզ պիտի ասել, որ ՍՄԿՊ Կենտկոմին կից ՄԼԻ-ի Հայկական ֆիլիալը և «Ուրվագծեր»-ի հեղինակները լրիվ չափով չկարողացան լուծել իրենց առջև դրված խնդիրները։ Շատ սխալներ, որ «Ուրվագծեր»-ի որոշ հեղինակներ անցյալում թույլ էին տվել իրենց աշխատություններում, գրեթե նույնությամբ տեղ են գտել «Հայաստանի Կոմունիստական պարտիայի պատմության ուրվագծեր»-ի մեջ։

«Հայաստանի Կոմունիստական պարտիայի պատմության ուրվագծեր»-ը, ամբողջությամբ առած, գրված է տեսական ու գաղափարական ցածր մակարդակով և չի համապատասխանում պարտիայի պատմության վերաբերյալ լուրջ գիտական հետազոտություններին ներկայացվող բարձր պահանջներին։ «Ուրվագծեր»-ում չկան մի շարք պատմական իրադարձությունների ու փաստերի մարքս-լենինյան խոր վերլուծություն, չի տրված մեր երկրի զարգացման յուրաքանչյուր էտապում պարտիայի գլխավոր գծի համար Հայաստանի Կոմունիստական պարտիայի մղած պայքարի բազմակողմանի, հստակ գնահատականը։ Հեղինակները մի շարք հարցեր շրջանցել կամ սխալ են բացատրել։

«Ուրվագծեր»-ում բարձրացվում են Հայաստանի Կոմպարտիայի պատմության հետ ուղղակի առնչություն չունեցող հարցեր, ընդ որում չի տրվում դրանց սպառիչ պատասխանը, իսկ ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունների գործունեությանը վերաբերող այլ հարցեր մոռացության են տրված։ Մի շարք եզրակացություններ չեն հիմնվում անհրաժեշտ փաստերի վրա և լոկ դեկլարատիվ բնույթ են կրում։

Առանձնապես ցածր է Հայաստանում Սովետական իշխանության հաստատման և Հայաստանի Կոմունիստական պարտիայի՝ սովետական ժամանակաշրջանի պատմությանը նվիրված գլուխների շարադրման տեսական մակարդակը։ «Ուրվագծեր»-ում իրոք անբավարար են լուսաբանված այնպիսի հարցեր, ինչպիսիք են՝ Հայաստանի Կոմունիստական պարտիայի կազմակերպական ձևավորման, Սովետական իշխանության հաստատման համար Հայաստանի Կոմունիստական պարտիայի մղած պայքարի պայմանները, 1920 թվականի մայիսյան ապստամբության պատճառներն ու գնահատականը, մասնավորապես Սովետական Ռուսաստանի ցույց տված օգնության և Ադրբեջանում Սովետական իշխանության հաղթանակի նշանակությունը, Կոմունիստական պարտիայի քաղաքականությունը գյուղում և բանվոր դասակարգի ու գյուղացիության դաշինքի հարցերը, ինդուստրացման ու գյուղատնտեսության կոլեկտիվացման քաղաքականության կենսագործումը և ուրիշ հարցեր։ Երբեմն էլ այդ հարցերը լուսաբանելիս թույլ են տրվել սխալներ։

digitised by A.R.A.R.@

«Ուրվագծեր»-ում չի տրված հայկական բուրժուա-նացիոնալիստական կազմակերպությունների գաղափարախոսության քաղաքական էության հստակ բնութագիրը. պարզորոշ կերպով ցույց չի տրված նրա հակաժողովրդական բնույթը և նրա նկատմամբ մարքսիստական-լենինյան գաղափարախոսության անհաշտ վերաբերմունքը: Գրքում պակասում է մարտական, հարձակողական ոգին:

«Ուրվագծեր»-ի մեջ փորձ է արված մեղմացնել Հայաստանի Կոմունիստական պարտիայի պայքարի սրությունը նացիոնալիզմի ռեցիդիվների և դրանց օգտին կատարված վրիպումների դեմ, որ թույլ են տվել Հայաստանի Կոմունիստական պարտիայի մի քանի ղեկավար գործիչներ 1922—1928 թթ. ժամանակաշրջանում:

Սխալ և վնասակար է 1936—1937 թթ. տեղի ունեցած սոցիալիստական օրինականության խախտման փաստերի նկարագրությունը այն ձևով, ինչ ձևով ներկայացրել են «Ուրվագծեր»-ի հեղինակները: Նրանք խտացրել են գույները և օբյեկտիվորեն հող ստեղծել քաղաքական սխալ հետևությունների համար:

Հայաստանի Կոմունիստական պարտիայի կազմակերպական և քաղաքական գործունեության հարցերը «Ուրվագծեր»-ում լուսաբանվում են դեկլարատիվ և ֆորմալ ձևով: Հայաստանի պարտիական կազմակերպության հսկայական արդյունավետ աշխատանքը մինչև վերջ չի բացահայտված: Աղոտ, սխեմատիկ և առանց խոր գիտական վերլուծության է ցույց տրված կարևոր իրադարձություններով լի՝ ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպության կյանքը հնգամյակների տարիներին, Հայրենական Մեծ պատերազմի և խաղաղ շինարարության հետպատերազմյան տարիներին, առանձնապես վերջին տարիների ընթացքում և ՍՄԿՊ XX համագումարից հետո, երբ իրագործվեց արդյունաբերության և գյուղատնտեսության նոր, հզոր վերելքը:

«Ուրվագծեր»-ում առանձնապես անբավարար են լուսաբանված ՍՄԿՊ և Հայաստանի Կոմպարտիայի համագումարները, որոնք կարևոր ուղենիշ են հանդիսանում պարտիայի կյանքում:

«Ուրվագծեր»-ում թույլ են տրվել անփույթ ձևակերպումներ, կան անճշտություններ թվական տվյալների մեջ: Քիչ չեն նաև լեզվական վրիպումները, ճոռոմաբանությունը, ճապաղ դատողությունները, ոճական անճշտությունները:

Հաշվի առնելով, որ «Հայաստանի Կոմունիստական պարտիայի պատմության ուրվագծեր»-ն իր տեսական և գաղափարական մակարդակով չի համապատասխանում պարտիայի պատմության խորը հետազոտություններին առաջադրվող բարձր պահանջներին, անհրաժեշտ է մոտակա տարիներին ստեղծել Հայաստանի Կոմունիստական պարտիայի պատմության լիարժեք գիտական աշխատություն: Այդ գործի մեջ պետք է ներգրավել հեղինակային լայն շրջան, առավել պատրաստված մասնագետ-պատմաբաններին, փիլիսոփաներին, տնտեսագետներին, իրավաբաններին:

Ռևոլյուցիոն շարժումների և կոմունիստական կազմակերպությունների պատմությունը լուսաբանելու և ճիշտ ըմբռնելու գործում կարևոր նշանակություն ունի մեմուարային գրականությունը: Վերջին տարիների ընթացքում հրապարակ են եկել մեմուարներ, որոնք որոշակի գիտական-քաղաքական հետաքրքրություն են ներկայացնում և հարստացնում են մեր պատմագիտությունը: Բացառիկ կարևոր արժեք են ներկայացնում Վ. Ի. Լենինին նվիրված հիշողությունների ժողովածուները: Անցյալ տարի Հայպետհրատը լույս ընծայեց «Հին բոլշևիկների հիշողությունները» գիրքը, որը կնպաստի Հայաստանի ռևոլյուցիոն շարժումների պատմության ուսումնասիրությանը:



Սակայն կան նաև մեմուարային գործեր, որոնք տառապում են լուրջ արատներով, չունեն նպատակասլացություն, գրված են հապճեպ և պատմության համար առանձին արժեք չեն ներկայացնում:

Չարաշահելով այդ ժանրը, որոշ ընկերներ էլ ջանք չեն խնայում առաջին պլանի վրա մղել իրենց անձնավորությունը: Անհաջող կերպով միահյուսելով իրենց կիսատ-պռատ տեսածն ու լսածը, նրանք հորինում են «հիշողություններ», որով շփոթ են առաջացնում պատմական անցքերի ճիշտ ըմբռնման գործում:

Հայաստանի Կոմպարտիայի XIX համագումարը նախազգուշացրեց և պահանջեց վերջ տալ այդ բանին: Պետք է կարգ սահմանել, որ այդ բնույթի մեմուարային աշխատությունները բազմակողմանիորեն քննարկվեն և ճշգրտվեն Մարքսիզմ-լենինիզմի ինստիտուտի ֆիլիալի կողմից և նոր միայն հանձնվեն հրատարակչություններին:

Կան մարդիկ, որոնք անհրաժեշտ պատասխանատվություն հանդես չեն բերում իրենց գրավոր խոսքի նկատմամբ: Մեզ համար դժվար է բացատրել, թե ինչո՞ւ, օրինակ, տնտեսագիտական գիտությունների թեկնածու ընկ. Գառնիկ Իսահակյանը, վերջերս հրատարակված իր «Սովետական Հայաստան» գրքույկում հարկ համարեց տեղավորել նյութի հետ անմիջապես չառնչվող «Հայաստանի Կոմունիստական պարտիա» կոչված խմբակի մասին իր խառնաշփոթ տեսակետը:

Կոմունիստական պարտիայի պատմությունը՝ հերոսական պատմություն է, լենինիզմի ամենահաղթ ուսմունքը գործողության մեջ: Մեր պարտիայի օրինակով, նրա ռևոլյուցիոն փորձով սովորում և պայքարում են բոլոր երկրների մարքս-լենինյան պարտիաները: Հետևապես, անընդունելի է և վնասակար, երբ պարտիայի պատմությանը նվիրված մեծ թե փոքր թեմաների լուսաբանման գործում թույլ է տրվում անսկզբունք կամ թեթևամիտ վերաբերմունք:

Հայաստանի Կոմունիստական պարտիան ՍՄԿՊ-ի մարտական ջոկատներից մեկն է: Նրա գիտական պատմությունը ՍՄԿՊ-ի օրինակով պետք է արտացոլի մարքսիզմ-լենինիզմը գործողության մեջ:

## 2. ԱՐԴԻԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՀԱՐՑԵՐԸ ԵՎ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Մարդկային հասարակության ամբողջ անցյալ պատմությունը գիտականորեն իմաստավորվեց միայն մարքսիզմ-լենինիզմի ուսմունքի շնորհիվ: Ժողովուրդների պատմության անցյալ էպոխաներից և ոչ մեկը այնքան հարուստ նյութ չի ստեղծել հասարակական գիտությունների զարգացման համար, որքան կոմունիստական շինարարության մեր իրականությունը՝ Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայից հետո:

digitised by A.R.A.R.@

*Մեր դարաշրջանում մարդկային հասարակության զարգացման օրինաչափությունների գիտական մշակումն իրականացվում է, ամենից առաջ, կոմունիստական պարտիայի անդուլ ջանքերով։ Մարքսիզմ-լենինիզմի անհաղթ ուսմունքով զինված, հավատարիմ նրա սկզբունքներին, Սովետական Միության Կոմունիստական պարտիան իր ամենօրյա գործունեությամբ ստեղծագործաբար հարստացնում և զարգացնում է գիտական կոմունիզմի ուսմունքը։ ՍՄԿՊ XX և XXI համագումարներում ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցումները, երկրում կոմունիստական շինարարության զարգացման վերաբերյալ պարտիայի խոշոր միջոցառումները, սոցիալիստական երկրների կոմունիստական ու բանվորական պարտիաների Մոսկովյան խորհրդակցության ընդունած Դեկլարացիան, իրենց մասշտաբներով ու գիտական խորությամբ վիթխարագույն նշանակություն ունեն մեր երկրում կոմունիզմի հաղթանակի և մարքսլենինյան պարտիաների գործունեության համար։*

*Հասարակական գիտությունների խնդիրն է՝ մարքսիզմ-լենինիզմի լույսի տակ ընդհանրացնել և գիտականորեն իմաստավորել երկրում տեղի ունեցած սոցիալ-տնտեսական, քաղաքական, կուլտուրական կոնկրետ տեղաշարժերը և այդ գործում պարտիայի ու ժողովրդական լայն մասսաների դերը։*

*Կոմունիստական հասարակության կառուցումը օրինաչափ և միաժամանակ բարդ պրոցես է, իր զարգացման ուրույն օրենքներով հանդերձ։ Վերը մենք ասացինք, օրինակ, որ ՍՄԿՊ XXI համագումարը մշակեց սովետական կարգի տնտեսական հիմքը կազմող սոցիալիստական սեփականության երկու ձևերի՝ կոլտնտեսային և համաժողովրդական, մերձեցման և միասնական կոմունիստական սեփականության վերաճման ուղիները։ Մերձեցման գլխավոր ուղին տնտեսության կոլտնտեսային ձևի հետագա զարգացումն է, կոլտնտեսությունների տնտեսապես ամրապնդումը, որը հնարավորություն է տալիս ամեն տարի ավելացնել կոլտնտեսությունների անբաժանելի ֆոնդերը, հետևապես, պայմաններ են ստեղծվում միջկոլտնտեսային և պետական ձեռնարկությունների հետ համատեղ միջոցառումների իրականացման համար։*

*Դրա հետ մեկտեղ, ներկայումս շատ տեղերում կոլտնտեսականների համաձայնությամբ ստեղծվում են սովխոզներ՝ տնտեսապես նվազ, ետ մնացող կոլտնտեսությունների բազայի վրա։ Զարգացման ներկա էտապում տնտեսապես ամուր կոլտնտեսություններում կոլտնտեսականներին չի զբաղեցնում իրենց կոլտնտեսությունների բազայի վրա սովխոզներ ստեղծելու միտքը։ Դա օրինաչափ երևույթ է և համապատասխանում է պարտիայի տնտեսական քաղաքականությանը։*

*Նկատվում են առանձին տրամադրություններ, երբ տնտեսապես առավել ուժեղ կոլտնտեսություններում կոլտնտեսականների որոշ մասը առանձին շահագրգռվածություն չի ցուցաբերում միջկոլտնտեսային միջոցառումների նկատմամբ, գերադասում է ամեն ինչ ունենալ միայն իր կոլտնտեսության համար։ Այդ երևույթը չի կարելի խրախուսել։ Նրանք սեփական փորձով շուտով կհամոզվեն միջկոլտնտեսային միջոցառումների շահավետության մեջ։ Հասարակական գիտությունները կոչված են գիտականորեն լուծելու այդ կոնկրետ հարցերը և ճիշտ լուսաբանելու զարգացման ընթացքում տեղի ունեցող խոր պրոցեսները։*

*Մեզ մոտ քանիցս նշվել է, որ վերջին տարիների ընթացքում հասարակական գիտությունների հիմնարկների աշխատանքում ստեղծվել է որոշակի*



*բեկում դեպի արդիականության թեմաները։ Սակայն սխալ կլիներ բավարարվել դրանով։ Իսկական բեկումը դեռ պետք է լինի և դա կլինի այն ժամանակ, երբ մեր գիտնականներն ու արվեստագետները ավելի լուրջ և ավելի խոր ըզբաղվեն արդիական թեմաներով։ Այդ նշանակում է, որ հասարակական գիտությունների բնագավառում աշխատողները, գիտահետազոտական հիմնարկների պարտավոր են վճռականորեն հաղթահարել որոշ գիտնականների՝ հեռավոր անցյալով տարվելու տրամադրությունները։*

*Ակադեմիայի նախագահության, հասարակական գիտությունների հիմնարկների և որոշ բուհերի ղեկավարների թողտվությամբ գիտահետազոտական աշխատանքի պլաններում առաջվա նման չափից ավելի տեղ են գրավում հեռավոր անցյալին նվիրված նշանակալի և աննշան թեմաները։ Պատմա-գիտահետազոտական հիմնարկների ղեկավարներից և բարձրաստիճան գիտնականներից շատերը չեն զբաղվում սովետական շրջանով։ Տնտեսագետները նույնպես անբավարար ուշադրություն են նվիրում սովետական հասարակության տնտեսական զարգացման հարցերի մշակմանը, առանձնապես կոնկրետ էկոնոմիկայի հարցերին, որոնք կարևոր նշանակություն ունեն։ Նրանցից ոմանք «զուտ տեսաբաններ» են համարում իրենց և թյուրիմացաբար կարծում են, թե կոնկրետ էկոնոմիկայի հարցերը տեսության ոլորտից դուրս են։ Դա մոլորություն է։ Իրականում կոնկրետ էկոնոմիկայի հարցերը մշակելուց խուսափելու գաղտնիքը՝ կյանքից, սոցիալիստական շինարարության պրակտիկայից այդ տնտեսագետների կտրվածության մեջ է։ Զբաղվելով կոնկրետ էկոնոմիկայի հարցերով, տնտեսագետները չեն հարստացնում իրենց գիտելիքների պաշարը պրակտիկայի փորձով, սահմանափակվում են վաղուց հայտնի դրույթների կրկնությամբ, զրկվելով պրակտիկայից տեսական ընդհանրացումներ անելու ունակությունից։*

*Կյանքից կտրված են հատկապես բուհերի տնտեսագիտական ամբիոններ։ Նրանց մեջ նույնիսկ կան մարդիկ, որոնք միանգամայն նորմալ են համարում իրենց վիճակը և գտնում են, որ «կոնկրետ էկոնոմիկայով զբաղվելը պրակտիկների գործն է»։ Պատահական չէ, որ Պետագիտահետազոտական ինստիտուտների գործն է»։ Պատահական չէ, որ Պետական համալսարանի տնտեսագիտական ամբիոնները դեռևս ցածրորակ կադրեր են պատրաստում։*

*Գիտահետազոտական հիմնարկների որոշ ղեկավարներ փորձում են արդարանալ նրանով, որ արդեն հրատարակել են մի շարք աշխատություններ՝ նվիրված սովետական շրջանի գիտական ուսումնասիրությանը։ Բայց չգիտեք ինչու, նրանք անպայման ավելացնում են, որ այդ աշխատությունները ցածրարժեք են։ Դրանով, ըստ երևույթին, ցանկանում են ասել, որ ժամանակակից թեմայով իբր թե հնարավոր չէ լուրջ գիտական գործեր տալ։*

*Ինչ վերաբերում է հեռավոր անցյալին նվիրված հետազոտությունների գիտական արժանիքներին, ապա այդ բնագավառում քիչ չեն նաև ցածրորակ գործերը։ Բազմաթիվ էջեր նվիրել եկեղեցուն ու վանքերին, ինչ-որ ձգողական ուժ վերագրել նրանց՝ ֆեոդալական հարաբերություններից արհեստականորեն կտրելու միջոցով, հորինել ինչ-որ «ժողովրդական դպրոցներ» հեռավոր անցյալում, կամ ամեն մի աննշան վարժապետական բարեգործական միտում ընթերցողներին հրամցնել իբրև ռևոլյուցիոն կամ դեմոկրատական տրամադրություն, դեռ չի նշանակում գիտական գործ կատարել։ Վերջապես, չի կարելի նորմալ համարել, երբ մի վանքի ճարտարապետությանը*

digitised by A.R.A.R.@

նվիրվում են մի քանի աշխատություններ, իսկ մեր գործարանների պատմությունը դեռ չի գրվում։

Ինչպե՞ս իրականացնել գիտության մեջ բեկումը դեպի արդիականության հարցերը։ Պետք է կազմակերպորեն ապահովել այդ բեկումը։ Այդ նշանակում է՝ վերակառուցել գիտահետազոտական հիմնարկների աշխատանքը, նրանց կառուցվածքը։ Ամրապնդել սովետական շրջանն ուսումնասիրող գիտական հիմնարկները և դրան համապատասխան վերակառուցել գիտահետազոտական աշխատանքի պլանները և ֆինանսավորման գործը։

Տնտեսագետների առաջնահերթ խնդիրն է՝ մոտիկից զբաղվել արդյունաբերության, շինարարության և գյուղատնտեսության կոնկրետ էկոնոմիկայի ուսումնասիրության հարցերով, հաղթահարել տնտեսագիտական մտքի կտրվածությունը պրակտիկայից, ստեղծագործական ընդհանրացումներ կատարել և համարձակորեն տեսական լուծում տալ կյանքի առաջադրած հարցերին։ Երբեք չմոռանալ Վ. Ի. Լենինի խոսքերն այն մասին, թե «...հասել է այն պատմական մոմենտը, երբ թեորիան վերածվում է պրակտիկայի, կենդանանում է պրակտիկայով, ուղղվում է պրակտիկայով, ստուգվում է պրակտիկայով...» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 26, էջ 503)։

Փիլիսոփաները պետք է հաղթահարեն գիտական աշխատանքի թեմատիկայի սահմանափակվածությունը, կենտրոնացնեն իրենց ուժերը ժամանակակից հրատապ հարցերի, մեր երկրում սոցիալիզմի կառուցման պատմական փորձի փիլիսոփայական խոր ընդհանրացման վրա։

ՍՄԿՊ XXI համագումարը հասարակական գիտությունների առջև խնդիր դրեց՝ խորապես ուսումնասիրել սոցիալիզմից կոմունիզմին անցնելու օրինաչափությունները, տնտեսական ու կուլտուրական շինարարության փորձը, գիտությունը սերտորեն մոտեցնել կյանքին, ընդհանրացնել և հետազոտական խոր ուսումնասիրություններով վերլուծել սոցիալիստական շինարարության (այդ թվում նաև գիտության ու կուլտուրայի) հարուստ փորձը, ցույց տալ ժողովրդի դերը, որպես պատմությունը կերտողի, և պարտիայի ղեկավար դերը կոմունիստական շինարարության մեջ. մերկացնել բուրժուական իդեոլոգիան, պայքարել իմպերիալիզմի իդեոլոգիական դիվերսիայի դեմ։ Հետևողականորեն պայքարել ժամանակակից ռևիզիոնիզմի բոլոր կարգի արտահայտությունների, ազգային մեկուսացման և սահմանափակության ամեն տեսակի արտահայտությունների դեմ։

Հասարակական գիտությունների հիմնարկների և բոլոր գիտնականների ամբողջ գործունեությունը պետք է ենթարկել այդ կարևոր խնդիրների լուծման գործին։

## 3. ԳԻՏԱԿԱՆ ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Կոմունիստական պարտիան ձեռնարկեց բոլոր միջոցառումները պարտիական ու սովետական դեմոկրատիայի զարգացման, քննադատության և ինքնաքննադատության հետագա ծավալման համար։

ՍՄԿՊ XX համագումարից հետո առավել նպաստավոր պայմաններ ստեղծվեցին հասարակական գիտությունների և գիտական քննադատության զարգացման համար։ Առանց վերապահման կարելի է ասել, որ պարտիան



ավելի լայն բաց արեց քննադատության դռները, որի նպատակն է ամեն կերպ զարգացնել սովետական գիտությունը և ի սպաս դնել այն կոմունիզմի հաղթանակին մեր երկրում։

Իհարկե, դեռևս կան մարդիկ, որոնք տրտնջում են, թե իրենց գործերը և քննադատական հոդվածները երբեմն չեն տպագրվում։ Հիրավի, հրատարակչությունները որոշ դեպքերում մերժում են նրանց։ Սակայն վատն այն է, որ քիչ են մերժում, որի հետևանքով հրապարակ են գալիս դժգույն գործեր և, նույնիսկ, կոպիտ սխալներով, իսկ պարբերական մամուլը տպագրում է երբեմն քննադատական այնպիսի հոդվածներ, որոնք հաճախ գնահատում են այս կամ այն գործը ոչ թե ըստ էության, այլ ելնելով քննադատի՝ հեղինակի հետ ունեցած բարեկամական կամ անբարյացակամ վերաբերմունքից։

Դժբախտաբար քննադատությամբ զբաղվող որոշ աշխատողների մոտ պարտիական սկզբունքայնության պակասն այնքան է զգացվում, որ նրանք շատ հեշտությամբ հաճախ փոխում են իրենց տեսակետը այս կամ այն հարցի նկատմամբ՝ նայած թե ինչ հարաբերություններ են ստեղծվել իրենց և շրջապատող ընկերների միջև։ Կան հեղինակներ, որոնց համար լավ ընկեր է նա, ով դիֆիրամբներ է կարդում նրանց հասցեին։ Բայց եթե, «աստված մի արասցե», ամենից սրտակից բարեկամը հանկարծ փորձի ցույց տալ նրանց սխալը, ապա նա դառնում է ատելի մարդ։

Այդ նշանակում է, որ ներկայումս անհրաժեշտ է ավելի շատ մտահոգվել գիտական քննադատության տեսական-իդեական բովանդակությամբ։ Թե որչափով է տվյալ քննադատությունն օգնում գիտությանը և հեղինակին, ըստ այնմ էլ պետք է որոշվի վերաբերմունքը քննադատության նկատմամբ։

Անսկզբունքայնությունից մինչև սկլոկան մեկ քայլ է։ Որոշ փիլիսոփաների, պատմաբանների և գրական կադրերի շրջանում խմբծանքը, սկլոկան այնպես է խորացել, որ հազիվ թե հնարավոր լինի որոշել, թե նրանց մոտ որտե՞ղ է վերջանում գիտությունը, իդեոլոգիան, և որտեղ է սկսվում սկլոկան։

Բանն այն է, որ որոշ գիտական աշխատողների շրջանում գոյություն ունեցող անառողջ մթնոլորտը որոշակի վնաս է հասցնում գիտական աշխատանքին և սերմանում է մանր-բուրժուական սանձարձակություն։

Պետք է առողջացնել մթնոլորտը, ստեղծել բարենպաստ պայմաններ գիտնականների ստեղծագործական աշխատանքի համար։ Թող սկզբնական պարտիական կազմակերպություններն իրենց վճռական խոսքն ասեն։

Քննադատությունը նույնպես քարացած կատեգորիա չէ. այն բոլշևիկյան աշխատանքի մեթոդ է և խնդիր ունի նպաստել կոմունիստական շինարարության զարգացմանը։ Մեր աշխատանքի մեթոդները փոխվում են՝ երկրում ընդհատ տեղի ունեցող փոփոխությունների հետ միասին։ Փոխվում են նաև քննադատության խնդիրները։

Մեր երկրում սոցիալիզմը հաղթանակել է լիովին և վերջնականապես։ Մենք թևակոխել ենք կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը։ Սովետական ժողովրդի բարոյա-քաղաքական միասնությունը և բազմազգ ժողովուրդների եղբայրական բարեկամությունը վաղուց դարձել են մեր հասարակական և պետական կյանքի ամենաբնորոշ կողմը։ Միանգամայն հաս-

digitised by A.R.A.R.@

կանալի է, որ այս պայմաններում անթույլատրելի է մեր մարդկանց թույլ
տված յուրաքանչյուր սխալը գնահատել իբրև թշնամական իդեոլոգիայի ուղ-
ղակի արտահայտություն։ Մեզ մոտ վաղուց վերացել է բուրժուական իդեոլո-
գիայի առաջացման տնտեսական հողը։ Հնի մնացորդները պահպանվում են
միայն առանձին մարդկանց գիտակցության, սովորույթների, մորալի մեջ,
որոնց ռեցիդիվների դեմ պետք է պայքարել։ Սովետական մարդկանց թույլ
տված իդեոլոգիական սխալները անպայման պետք է քննադատության են-
թարկվեն, խարազանվեն, որովհետև այդ սխալներն այս կամ այն չափով
խանգարում են մասսաների կոմունիստական դաստիարակության գործին։
Բայց այդ քննադատությունը պետք է լինի բարեկամական, սկզբունքային,
որի նպատակն է օգնել մեր մարդկանց՝ ուղղելու սեփական սխալները։ Քըն-
նադատությունը պետք է լինի սուր և անզիջող։ Բայց այդ ոչ ոքի իրավունք
չի տալիս անհիմն պիտակներ փակցնել սովետական մարդկանց ճակատին։
Քննադատությունն ու ինքնաքննադատությունը կոչված են վեր հանելու
մեր աշխատանքի թերություններն ու սխալները և ուղիներ ցույց տալու գործը
բարելավելու համար։ Անհրաժեշտ է մտահոգվել և ամեն կերպ բարելավել
գիտական քննադատության իդեական բովանդակությունը, ի սպաս դնել այն
գիտության զարգացման և գիտական կադրերի աճման կարևոր գործին,

## 4. ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ԻԴԵՈԼՈԳԻԱԿԱՆ ՖՐՈՆՏԻ ԱՇԽԱՏՈՂՆԵՐԻ ՏԵՍԱԿԱՆ ԱՃԻ ԵՎ ՔԱՂԱՔԱԿԱՆ ԿՈՓՎԱԾՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Ցավոք սրտի հարկադրված ենք արձանագրել այն փաստը, որ հասարա-
կական գիտությունների և իդեոլոգիայի բնագավառի աշխատողների մի
որոշ մասն իր տեսական պատրաստականությամբ և քաղաքական կոփվածու-
թյամբ զգալիորեն ետ է մնում կյանքից։ Այդ աշխատողների պատրաս-
տականությունը միակողմանի է և ոչ խոր։ Գիտահետազոտական որոշ հիմ-
նարկներում, բարձրագույն ուսումնական հաստատություններում և պարտիա-
կան առանձին կազմակերպություններում, դժբախտաբար, գիտական և իդեո-
լոգիական կադրերի տեսական պատրաստականությունը գնահատում են ոչ
թե նրանց՝ բարդ իրադրության մեջ կողմնորոշվելու ունակությամբ և նոր,
բարդ հարցերը լուծելու կարողությամբ, այլ մարքսիզմ-լենինիզմի սկզբնաղ-
բյուրներից քաղած տեսական դրույթներն անգիր իմանալու չափանիշով։
Գիտական և իդեոլոգիական մի շարք կադրերի տեսական ցածր պատ-
րաստականության մասին է վկայում նաև այն, որ նրանցից շատերը պար-
տիայի և նրա Կենտրոնական Կոմիտեի տնտեսական քաղաքականության,
ինչպես, օրինակ, գյուղատնտեսության շեշտակի վերելքի կազմակերպման,
գյուղատնտեսական մթերքների մթերման գների բարձրացման, գյուղատնտե-
սության արտադրության պլանավորման նոր կարգի, միութենական ռեսպուբ-
լիկաների իրավունքների ընդլայնման, արդյունաբերության և շինարարության
կառավարման վերակառուցման, մեքենատրակտորային կայանների վերակազմ-



ման մեջ չկարողացան տեսնել մարքսիզմ-լենինիզմի ուսմունքի լիակա-
տար արտացոլումը և հարստացումը։
Գիտական կադրերի, առանձնապես պատմաբանների գերակշռող մասը
իրենց ամբողջ գործունեությունը սահմանափակում են միայն Հայաստանին
վերաբերող նյութերի և թեմաների ուսումնասիրությամբ, այն էլ շատ սահ-
վերաբերող նյութերի և թեմաների ուսումնասիրությամբ, այն էլ շատ սահ-
մանափակ շրջանակներում։ Դա դանդաղեցնում է գիտական կադրերի աճը,
իսկ ոմանց մոտ օբյեկտիվորեն սնուցում է ազգային սահմանափակվածու-
թյան տրամադրություններ։ Գիտնականներից քչերն են զբաղվում համընդ-
հանուր պրոբլեմների ուսումնասիրությամբ։ Այդ սահմանափակվածությունը
պետք է հաղթահարվի, որպեսզի մեր գիտնականները մտնեն գործունեու-
թյան լայն ասպարեզ և մասնակցեն գիտական մեծ պրոբլեմների մշակմանը՝
միութենական և եղբայրական ռեսպուբլիկաների գիտնականների հետ միա-
սին։
Գիտական և իդեոլոգիական կադրերի տեսական աճի և քաղաքական
կոփվածության կազմակերպումը լուրջ գործ է։ Չի կարելի հանդուրժել նրանց
պատրաստականության միակողմանիությունը։ Ի՞նչ մարքսիստ-պատմաբան է
նա, ով բազմակողմանիորեն չի տիրապետում գիտելիքների այն հարստու-
թյանը, որ տալիս են մարքսիստական-լենինյան փիլիսոփայությունը և քա-
ղաքատնտեսությունը։ Ի՞նչ փիլիսոփա կամ տնտեսագետ է նա, ով չգիտե
պատմությունը և, մասնավորապես, պարտիայի պատմությունը, չգիտե թե
հասարակության զարգացման օբյեկտիվ օրենքներն ինչպես են ի սպաս դըր-
վում կոմունիստական հասարակության կառուցմանը։
Անհրաժեշտ է բարելավել իդեոլոգիական ֆրոնտի աշխատողների տեսա-
կան աճի և քաղաքական կոփվածության գործը ինչպես նրանց ինքնուրույն
աշխատանքի, այնպես էլ գիտական սեմինարների, տեսական կոնֆերանս-
ների միջոցով, նրանց հետ քննության առնելով թեորիայի կարևորագույն
հարցերը։ Գլխավոր միջոցը՝ կյանքի պրակտիկ հարցերի հետ նրանց մշտա-
կան կապն է, նրանց անձնական ակտիվ մասնակցությունը պարտիական,
սովետական, տնտեսական և այլ կազմակերպությունների աշխատանքին։
Միայն այդ պայմաններում նրանք կարող են լիարժեք մասնակցություն ունե-
նալ պարտիայի գլխավոր գծի իրականացմանը։

# IV

## 1. ՊԱՐՏԻԱԿԱՆ ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ՄԱՍԻՆ

Պարտիական պրոպագանդան պետք է բացահայտի մարքս-լենինյան տե-
սության ստեղծագործական բնույթն ու հսկայական գործնական նշանակու-
թյունը, մարքսիզմ-լենինիզմի հիմնական դրույթներին տիրապետելը սերտո-
րեն շաղկապի երկրի կոմունիստական շինարարության հերթական խնդիրնե-
րի հետ, կոմունիստական ապագայի մարդու դաստիարակության խնդիր-
ների հետ։
Պետք է բարձրացնել պրոպագանդիստական կադրերի, խմբակների ու

digitised by A.R.A.R.@

սեմինարների ղեկավարների, դասախոսների ու զեկուցողների հեղինակությունը, ըստ արժանվույն գնահատել նրանց ավանդը կոմունիստական ապագայի կառուցման գործում։ Սակայն պետք է ասել, որ շատ տեղերում այս բանին պատշաճ ուշադրություն չի դարձվում։ Պրոպագանդիստական աշխատանք կատարող և կոմունիստական դաստիարակության ազնիվ գործին իրենց ուժերը նվիրաբերող մարդիկ սակավ են շնորհակալության խոսք լսում, այնինչ խարազանողները հարկ եղածից շատ են։

Պարտիական պրոպագանդան չի կարողանա իր առջև ծառացած խնդիրները լուծել, մինչև որ արմատապես չփոխվի մեր որոշ ղեկավար կադրերի վերաբերմունքը պարտիական աշխատանքի այդ կարևորագույն բնագավառի նկատմամբ։ Հենց նրանք՝ այդ կադրերն են կոչված ցույց տալու մարքսիզմի տեսության հաստատակամ ու խոր յուրացման, պրակտիկայում տեսության հմուտ կիրառման օրինակ, անձամբ մասնակցելու մասսաների քաղաքական լուսավորությանը։ Գաղափարական աշխատանքը պետք է յուրաքանչյուր պարտիական ղեկավարի և ակտիվիստի համար օրգանական պահանջ դառնա:

Ամենայն սրությամբ պետք է դրվի նաև պարտիական պրոպագանդայի ներգործության ոլորտի զգալի ընդարձակման հարցը։ Անհրաժեշտ է պարտիական լուսավորության սիստեմի մեջ ավելի համարձակորեն ներգրավել անպարտիականների լայն շրջաններին, լուրջ ուշադրություն նվիրել կոմերիտականների ու երիտասարդության քաղաքական լուսավորության բարելավմանը։

Պարտիայի քաղաքականության պարզաբանման գործում միշտ կարևոր միջոց է եղել և կլինի բնակչության ամենալայն խավերի մեջ պարտիական կազմակերպությունների ագիտացիոն-մասսայական աշխատանքը։

Պարտիական կազմակերպությունները վերջին ժամանակներս բարձրացրել են քաղաքական ագիտացիայի մակարդակը. այն դարձել է ավելի արդիական, մատչելի ու կոնկրետ։ Այս օրերին ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկություններում, կոլտնտեսություններում, սովխոզներում ու հիմնարկներում պարտիական կազմակերպությունների ղեկավարությամբ մասսաների մեջ շնորհակալ աշխատանք են կատարում ավելի քան 30 հազար ագիտատորներ։ Մեր խնդիրն է՝ հմտորեն հայտաբերել ագիտացիոն-մասսայական աշխատանքներում եղած նորը, կենդանին, հետաքրքրականը, ամեն կերպ խրախուսել և տարածել այն։

Երիտասարդության քաղաքական և հայրենասիրական դաստիարակության գործում հսկայական նշանակություն են ստանում հանդիպումները Հոկտեմբերյան ռևոլյուցիայի մասնակիցների, քաղաքացիական և Հայրենական Մեծ պատերազմների վետերանների հետ։ Հերոսական մեծ իրադարձությունների մասնակցի կենդանի խոսքը երիտասարդության վրա մեծ էմոցիոնալ և քաղաքական ազդեցություն է գործում։

Բայց սխալ կլիներ չտեսնել, որ շատ դեպքերում ագիտացիան դեռ անց է կացվում ոճգույն, անհետաքրքիր, երբեմն կրում է չափազանց ընդհանուր, դեկլարատիվ բնույթ։ Հաճախ ագիտացիան չի ուղղվում լոդրերի, աշխատանքային կարգապահության խախտողների, հարբեցողների, սպեկուլյանտների դեմ, ամեն տեսակ բամբասանքներ և լուրեր տարածողների, բանսարկուների



դեմ։ Դեռևս թույլ է մասսայական-քաղաքական աշխատանքը գիշերային հերթափոխությունների աշխատողների, արվարձաններում և հանրակացարաններում ապրող աշխատավորների մեջ։

Անհրաժեշտ է յուրաքանչյուր սովետական մարդուն հասցնել պարտիայի ճշմարիտ ու կենդանի խոսքը, արմատախիլ անել այն ամենը, ինչ խանգարում է մեր առաջընթացին և ամեն կերպ պաշտպանել նորը, որը նպաստում է կոմունիզմի կառուցման գործին։

Պրոպագանդիստական և ագիտացիոն-մասսայական աշխատանքի նպատակը պետք է լինի՝ է՛լ ավելի բարձրացնել ժողովրդի քաղաքական ու աշխատանքային ակտիվությունը, ստեղծել կոմունիստական շինարարության պաթոս և հասնել այն բանին, որպեսզի յուրաքանչյուր սովետական մարդ աշխատի բեղմնավոր և զգա, որ ինքը կոմունիզմի հաղթանակի համար համաժողովրդական պայքարի մասնակից է։

ՍՄԿՊ XXI համագումարի պատմական որոշումների պարզաբանումը կարճատև կամպանիա չէ, այլ պարտիական կազմակերպությունների երկար ժամանակամիջոցի հիմնական խնդիրը։ Այդ խնդրին համապատասխան պետք է պլանավորվի և կառուցվի ամբողջ պրոպագանդիստական և քաղաքական-մասսայական աշխատանքը, գաղափարական ֆրոնտի բոլոր բնագավառների աշխատանքը։ Նոր մակարդակի պետք է բարձրացվեն նաև բանավոր պրոպագանդան, նրա բոլոր բազմազան ձևերը՝ դասախոսությունները, զեկուցումները, զրույցները, կոնսուլտացիաները, հարց ու պատասխանի երեկոները և այլն։

Բավական չէ միայն ճիշտ ընտրել և տեղաբաշխել ագիտատորների կադրերը։ Դրա հետ միասին հարկավոր է հոգ տանել նրանց դաստիարակության ու ամենօրյա օգնության մասին։ Պետք է կիրառել օգնության այնպիսի ձևեր, ինչպիսիք են՝ ագիտատորների դպրոցների կազմակերպումը, խորհրդակցությունների, սեմինարների սիստեմատիկ անցկացումը, ղեկավար աշխատողների պարբերաբար հանդես գալը նրանց առջև։

ՍՄԿՊ XXI համագումարի որոշումների պրոպագանդմանը և այդ որոշումների կենսագործման համար մասսաների մոբիլիզացմանը պետք է ծառայեն մամուլը, գրականությունը, արվեստը, կինոն, ռադիոն, հեռուստատեսությունը, քաղաքական լուսավորության տները, քաղաքական և գիտական գիտելիքների տարածման ընկերությունը, կուլտուր-լուսավորական հիմնարկները։

Անհրաժեշտ է ավելի լավ կազմակերպել աշխատանքի կուտակված դրական փորձի ընդհանրացումը։ Դա շատ կարևոր է։ Տարածել դրական փորձը, որին ծնունդ են տվել կյանքը, պրակտիկան, տարածել գաղափարական-դաստիարակչական աշխատանքի լավագույն փորձը, նշանակում է նոր, ավելի բարձր աստիճանի հասցնել մեր աշխատանքը։ Մարդկանց աշխատանքի լավագույն օրինակների ցուցադրումը՝ սովորեցնելու և մեր աշխատանքի մեթոդները կատարելագործելու գլխավոր եղանակն է։

Արդեն հեռու անցյալ է թվում այն ժամանակը, երբ մեզ մոտ պակասում էին տեսականորեն պատրաստված պրոպագանդիստական կադրերը։ Բավական է ասել, որ ռեսպուբլիկայի պրոպագանդիստների ավելի քան 90 տոկոսը բարձրագույն կրթություն ունի։ Մեզ հարկավոր են պրոպագանդիստներ, ագի-

digitised by A.R.A.R.@

սատորներ, դասախոսներ, հրահանգիչներ, որոնք ստեղծագործաբար տիրապետում են ռեոլյուցիոն տեսությանը, կարողանում են առանց լուրջ սխալների այն կիրառել պրակտիկայում, հարկավոր են ժողովրդի իսկական դաստիարակներ, պարտիական բոցաշունչ պրոպագանդիստներ, որոնք բոլոր թելերով կապված են արդիականության, պրակտիկայի հետ, բուռն կերպով հետաքրքրվում են աշխատավորների կյանքի ու կենցաղի բոլոր կողմերով, նրանց են հասցնում կոմունիստական ճշմարտության խոսքը, նրանց մեջ հմտորեն դաստիարակում են կոմունիստական բարոյականության վեհ սկզբունքները։

Ներկայումս, երբ սովետական ժողովուրդը ձեռնամուխ է եղել կոմունիզմի ծավալուն կառուցմանը, կարևոր նշանակություն է ստանում մարդկանց գիտակցության մեջ հնի մնացորդների դեմ մղվող պայքարը, մասնավորապես գիտա-աթեիստական պրոպագանդան։

Դժբախտաբար, մեր որոշ մարդկանց մոտ այն սխալ կարծիքը գոյություն ունի, որ իբր թե այլևս անհրաժեշտություն չկա պայքարելու կրոնի դեմ, որ կրոնական նախապաշարմունքները կվերանան տարերայնորեն։ Պետք է վճռականորեն դատապարտել նման տրամադրությունները, որովհետև դրանք վնասում են աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործին։

Գիտա-աթեիստական պրոպագանդան ուժեղացնելու գործում մեծ անելիքներ ունեն ՀՍՍՌ Քաղաքական և գիտական գիտելիքների տարածման ընկերությունը և կուլտուր-լուսավորական հիմնարկները։ Նրանք պետք է իրենց աշխատանքներին լայն կերպով մասնակից դարձնեն ռեսպուբլիկայի կարող ուժերին։ Նույնը պետք է անել նաև ռադիոյի, հեռուստատեսության և մամուլի միջոցով։

Գիտա-աթեիստական պրոպագանդան չպետք է կրի ժամանակավոր կամպանիայի բնույթ։ Այն պետք է մղվի մշտապես, խելացի կերպով, որը բացառում է վարչարարությունը և եկեղեցու ներքին գործերին միջամտելը։

## 2. ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅԱՆ ԵՎ ՊՐՈԼԵՏԱՐԱԿԱՆ ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼԻԶՄԻ ՄԱՍԻՆ

Կոմունիզմի կառուցման ժամանակակից էտապում մեծ նշանակություն են ստանում պրոլետարական ինտերնացիոնալիզմի և ժողովուրդների լենինյան բարեկամության ոգով աշխատավորության դաստիարակության հարցերը։

Մեր ժողովուրդների բարեկամությունը գալիս է դարերի խորքից, այն ձևավորվել է ներքին և արտաքին թշնամիների դեմ նրանց մղած համատեղ պայքարի բովում, նրանց դաշինքի հիման վրա։ Սակայն ժողովուրդների բարեկամությունը միանգամայն նոր բովանդակություն ստացավ Հոկտեմբերյան ռեոլյուցիայի հաղթանակից հետո։ Կոմունիստական պարտիայի լենինյան ազգային քաղաքականության անշեղ կենսագործման շնորհիվ մեր երկրի բոլոր ժողովուրդները համախմբվեցին մեկ միասնական, եղբայրական ընտանիքում, ստեղծվեց աշխարհում առաջին հզոր, բազմազգ սոցիալիստական պետությունը։



Մեր Հայրենիքի բոլոր աշխատավորները աչքի լույսի պես պահպանում են ժողովուրդների լենինյան բարեկամությունը, այն համարում են Հոկտեմբերյան ռեոլյուցիայի մեծագույն նվաճումը, բազմազգ սովետական պետության ուժի և հզորության աղբյուրը, սովետական բոլոր ռեսպուբլիկաների հաջողությունների գլխավոր պայմանը։

Յոթնամյա պլանի մեջ իր վառ արտահայտությունն է գտել պարտիայի լենինյան ազգային քաղաքականությունը. այն ապահովում է մեր Հայրենիքի բոլոր ժողովուրդների էկոնոմիկայի և կուլտուրայի աննախընթաց վերելքը, աշխատավորության բարեկեցության անշեղ բարձրացումը։

Ժողովուրդների բարեկամության պրոպագանդման գործում լուրջ թերությունն այն է, որ նախ՝ պատմաբաններից, գրականության և արվեստի աշխատողներից ոմանք հաճախ ժողովուրդների բարեկամությունը լուսաբանում են միակողմանիորեն, հիմնական ուշադրությունը դարձնելով պատմական անցյալում նրանց ունեցած կապերի և համագործակցության վրա, օբյեկտիվորեն երկրորդական պլանի վրա թողնելով ամենակարևորը՝ ժամանակակից կյանքի հարցերը։ Երկրորդ, ժողովուրդների բարեկամության հարցերը հաճախ մեկնաբանվում են վերացականորեն, դեկլարատիվ հայտարարություններով, չի բացահայտվում այդ բարեկամության խոր բովանդակությունը, նրա մեծագույն ներգործությունը մեր երկրի հասարակական կյանքի բոլոր բնագավառների վրա, կոմունիզմի կառուցման մեծ գործում։ Շատ տեղերում պրոպագանդան անհրաժեշտ չափով չի մերկացնում ազգային բացառիկության, սահմանափակվածության և սնապարծության տրամադրությունները, որոնք երբեմն հանդես են գալիս գիտության, գրականության, արվեստի որոշ գործերում։

Ժողովուրդների բարեկամությունը ներդաշնակորեն զուգակցում է Սովետական Միության բոլոր ժողովուրդների ընդհանուր շահերը յուրաքանչյուր ժողովրդի ազգային, կենսական շահերի հետ։

Միայն ժողովուրդների համագործակցության ու փոխադարձ օգնության շնորհիվ, նրանց եղբայրական բարեկամության կենարար շողերի տակ բարգավաճում է ՍՍՌՄ ժողովուրդների էկոնոմիկան, հարստանում և աննախընթաց վերելք է ապրում նրանց ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրան։

Այստեղից էլ աշխատավորների պրոլետարական ինտերնացիոնալիզմի և ժողովուրդների բարեկամության լենինյան գաղափարների ոգով դաստիարակությունը՝ պարտիական և բոլոր հասարակական կազմակերպությունների առաջնահերթ խնդիրներից մեկն է։

## 3. ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ԵՎ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ՇԱՐԺՄԱՆ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՊՐՈՊԱԳԱՆԴԱՆ

Բնակչության մեջ կատարվող մասսայական-քաղաքական աշխատանքում զգալի տեղ պետք է գրավեն Սովետական պետության միջազգային դրության և միջազգային կոմունիստական շարժման հարցերը։



digitised by A.R.A.R.@

ՍՄԿՊ XXI համագումարը միջազգային հարաբերությունների բնագավա-
ռում խնդիր դրեց այսուհետև ևս հետևողականորեն վարել ժողովուրդների
խաղաղությունն ու անվտանգությունը պահպանելու և ամրապնդելու նպատա-
կին ուղղված արտաքին քաղաքականություն։

Սովետական Միության և ամբողջ սոցիալիստական լագերի ներկա մի-
ջազգային դրությունը մի անգամ ևս ցույց է տալիս, որ պատերազմի ճակա-
տագրական անխուսափելիություն չկա։ Սոցիալիստական երկրների տնտե-
սական պլանների իրագործումը ռեալ հնարավորություններ կստեղծի պատե-
րազմը, որպես միջազգային հարցերի լուծման միջոց, վերացնելու համար։

Միջազգային դրության բնորոշ կողմը սոցիալիստական և իմպերիալիս-
տական՝ երկու լագերների առկայությունն է։ Պատմության ընթացքը ապա-
հովում է ուժերի փոխհարաբերության զարգացումը սոցիալիզմի օգտին՝
միջազգային կյանքի բոլոր բնագավառներում։ Սովետական Միության և սո-
ցիալիստական լագերի հաջողությունները մեծ ազդեցություն են գործում բո-
լոր երկրների կոմունիստական ու բանվորական շարժման վրա, ըստ որում
առաջատար դերը պատկանում է մեր երկրին։

Ներկայումս առողջ մտածողության տեր բոլոր մարդիկ պարզ տեսնում
են, որ մարդկության ապագան կոմունիզմն է։ Օրավուր աճում է Սովետա-
կան Միության հեղինակությունը միջազգային ասպարեզում։

ՍՄԿՊ XXI համագումարում եղբայրական պարտիաների պատվիրակների
ելույթները վճռական հարված հասցրին բուրժուական պրոպագանդայի հեր-
յուրանքներին, որի նպատակն է տարաձայնություններ գտնել միջազգային
կոմունիստական շարժման մեջ։ Եղբայրական պարտիաների ներկայացուցիչ-
ները իրենց երկրների կոմունիստների և միլիոնավոր աշխատավորների
անունից ՍՄԿՊ-ին և Սովետական Միության բոլոր ժողովուրդներին հայտնե-
ցին անկեղծ բարեկամության և ինտերնացիոնալ համերաշխության զգաց-
մունքներ։

Ներկայումս Սովետական Միության Կոմունիստական պարտիայի կա-
րևորագույն ինտերնացիոնալ պարտքը միջազգային կոմունիստական և բան-
վորական շարժման առաջ, ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման
յոթնամյա պլանի կատարումն ու գերակատարումն է։ ՍՄԿՊ XXI համագու-
մարում ընդունված կոմունիստական շինարարության վիթխարի ծրագրի իրա-
կանացումը մեծ աջակցություն կլինի համաշխարհային կոմունիստական
շարժմանը։

Ավելի քան 100 տարի առաջ գիտական կոմունիզմի հիմնադիրներ
Մարքսն ու Էնգելսը կանխագուշակեցին կապիտալիզմի կործանման և սոցիա-
լիզմի հաղթանակի անխուսափելիությունը։ Մարքսի և Էնգելսի գործի մեծ
շարունակող Վլադիմիր Իլյիչ Լենինը մարգարեաբար բնութագրեց XX դարի
հիմնական բովանդակությունը. «Կապիտալիզմի և նրա հետքերի ոչնչացումը,
կոմունիստական հասարակարգի հիմքերի հաստատումը կազմում է համաշ-
խարհային պատմության այժմ սկսված նոր դարաշրջանի բովանդակությունը»
(հատ. 31, էջ՝ 491)։

Եթե ավելի քան 100 տարի առաջ կոմունիզմը մի ուրվական էր միայն
Եվրոպայում, ապա ժամանակակից պայմաններում սոցիալիզմի և կոմու-
նիզմի դրոշի ներքո ապրում և պայքարում են աշխարհի շատ ժողովուրդներ։



Հոկտեմբերյան ռևոլյուցիայի հաղթանակից հետո անշեղորեն տարածվելով
խորությամբ և լայնությամբ, համաշխարհային կոմունիստական շարժումը
կարճ ժամանակվա ընթացքում վերածվեց մեծագույն ուժի, որը հզոր ազդե-
ցություն է թողնում հասարակության զարգացման վրա։

Հոկտեմբերյան ռևոլյուցիայի արշալույսին կոմունիստների թիվն աշ-
խարհում հասնում էր 300.000-ի։

Մինչև երկրորդ համաշխարհային պատերազմը կոմունիստական պար-
տիաներ կային 43 երկրներում, նրանցում միավորվում էր 4.202 հազար
մարդ։ Ներկայումս միջազգային կոմունիստական շարժումը գլխավորում են
աշխարհի 83 երկրների կոմունիստական ու բանվորական պարտիաները,
որոնց շարքերում հաշվվում է 33 միլիոն մարդ։

Ձգնելով կանգնեցնել կոմունիզմի գաղափարների հաղթարշավը, միջազ-
գային ռեակցիան օգտագործում է բռնության և խաբեության ամեն միջոց։
Կապիտալիզմի ռևիզիոնիստ սպասարկուները աղավաղելով մարքսիզմ-լենի-
նիզմի ռևոլյուցիոն ուսմունքը, ձգնում են խարխլել կոմունիստական պար-
տիաների միասնությունը։ Բայց նրանց փորձերը ձախողվեցին։ Կոմունիս-
տական ու բանվորական պարտիաները վճռական հակահարված տվեցին ռե-
վիզիոնիստներին և է՛լ ավելի համախմբվեցին պրոլետարական ինտերնացիո-
նալիզմի սկզբունքների, մարքսիզմ-լենինիզմի սկզբունքների հիման վրա։

ՍՄԿՊ XXI համագումարը խնդիր դրեց. «է՛լ ավելի ամրապնդել միջազ-
գային կոմունիստական շարժման միասնությունը... զարգացնել և ընդ-
լայնել կոմունիստական և բանվորական պարտիաների եղբայրական համա-
գործակցությունը՝ յուրաքանչյուր պարտիայի լիակատար ինքնուրույնության
հիման վրա, պրոլետարական ինտերնացիոնալիզմի, կամավոր համագործակ-
ցության և փոխադարձ օգնության հիման վրա»։

Սովետական Միության և սոցիալիստական երկրների խաղաղասիրական
ակտիվ քաղաքականության և միջազգային կոմունիստական շարժման հաջո-
ղությունների մասին պարտիական կազմակերպությունների իդեոլոգիական
աշխատանքը դաստիարակում է աշխատավորության մեջ մեծ վստահություն
խաղաղության քաղաքականության և սոցիալիզմի սիստեմի հաղթանակի
նկատմամբ, բարձրացնում է զգոնությունը սոցիալիզմի թշնամիների ոտն-
ձգությունների դեմ, է՛լ ավելի է զարգացնում ու խորացնում սովետական
մարդկանց հավատը մարդկության առաջ ունեցած իրենց պատմական մի-
սիայի նկատմամբ։

Այս ամենը դաստիարակում են սովետական մարդկանց մեջ հպարտու-
թյան վսեմ զգացում՝ իրենց Սովետական Հայրենիքի նկատմամբ, նոր եռանդ
են ներշնչում կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարում։

***

Ընկերնե՛ր։ Պարտիական կազմակերպությունների իդեոլոգիական աշ-
խատանքը կոչված է մասսաներին դաստիարակելու մարքսիզմ-լենինիզմի վեհ
գաղափարներով և մոբիլիզացնելու նրանց կոմունիստական շինարարության
հոյակապ խնդիրները հաջողությամբ իրականացնելու համար։

digitised by A.R.A.R.@

*Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXI համագումարը նոր թափ հաղորդեց մեր բոլոր աշխատանքներին։ Երկրի բանվորների, կոլտնտեսականների և ինտելիգենցիայի հայրենասիրական պաթոսն ու աշխատանքային խանդավառությունն աննախընթաց են։ Սովետական Հայաստանի արդյունաբերության և գյուղատնտեսության առաջավորները պարտավորվեցին ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա ծրագիրը և 1959 թվականի արտադրական պլանները կատարել ժամկետից շուտ։*

*Անհրաժեշտ է իդեոլոգիական աշխատանքում ստեղծել նույնպիսի վերելք, որպիսին այժմ ստեղծվել է արդյունաբերության և գյուղատնտեսության ասպարեզում։*

*Սոցիալիզմի տարիներին աճել է սովետական նոր մարդը։ Պարտիան զինել է նրան կոմունիզմի կառուցման հստակ ու մեծ ծրագրով և ցույց տվել առաջընթացի ուղին։ Այժմ գաղափարական աշխատանքից պահանջվում է ոչ միայն եռանդ ու նախաձեռնություն զարգացնել, այլև օգնել մարդկանց գտնելու իրենց սեփական տեղը կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանում։ Մամուլը, գրականությունը, ռադիոն, բանավոր խոսքը պետք է օգնեն, որպեսզի յուրաքանչյուր մարդ գիտակցի կոմունիստական շինարարության մեջ իր անձնական մասնակցության հասարակական նշանակությունը։ Պրոպագանդան պետք է կարողանա կատարել այնպիսի ընդհանրացումներ, որոնք ցույց տան ամենօրյա պրակտիկ խնդիրների կատարման համապետական նշանակությունը, բարձրացնեն այն թեորիայի ատիճանին։*

*Կոմունիստական պարտիան զինել է մեզ կոմունիստական շինարարության լենինյան հստակ ծրագրով և ցույց տվել նրա կատարման ուղիները։ Իդեոլոգիական ֆրոնտի աշխատողների պատվի գործն է՝ ակտիվորեն նպաստել այդ մեծ ծրագրի իրականացման, կոմունիզմի ծավալուն կառուցման համաժողովրդական գործին։*

*Թույլ տվեք սրտանց հաջողություններ ցանկանալ ձեզ այդ պատմական և վսեմ գործում։*

---

# ՄԵԾ ՄԻԱՍՆՈՒԹՅՈՒՆ

## ՀՈՎՀ. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ

*Կրեմլի մեծ պալատը վկա է շատ իրադարձությունների։ 1959 թվականի հունվարի 27-ից մինչև փետրվարի 5-ը այստեղ տեղի ունեցավ ևս մեկ պատմական իրադարձություն՝ մեր պարտիայի XXI արտահերթ համագումարը, որն անմոռաց կմնա մեր՝ համագումարի մասնակիցներիս հիշողության մեջ։*

*...Ձմռանը Մոսկվայում պարզ եղանակներ քիչ են լինում, բայց հունվարի 27-ին եղանակն էլ համընկնում էր տոնական տրամադրությանը։ Անամպ, պայծառ երկնակամարի տակ կրկին երիտասարդացել էր հինավուրց Մոսկվան։ Արևի ճառագայթները ողողել էին Կրեմլի մեծ պալատը և կարծես ողջունում էին համագումարը, ողջունում էին պարտիայի պատվիրակներին։*

*Այստեղ է մեր պարտիայի ծաղիկը՝ սոցիալիստական արդյունաբերության և գյուղատնտեսության՝ երկրին հայտնի մարդիկ, գիտության և կուլտուրայի ականավոր գործիչներ, Սովետական Բանակի փառաբանված զորավարներ, պարտիական, սովետական և պետական աշխատողներ։ Դելեգատները ողջունում են անձամբ, հայացքներով. փույթ չէ, որ նրանցից շատերը միմյանց ծանոթ չեն. նրանք մեր մեծ պարտիական ընտանիքի անդամներ են՝ ձուլված կամքի, գործողությունների և նպատակի միասնությամբ։*

*Այստեղ են ավելի քան 70 երկրների մարքսիստական-լենինյան պարտիաների դելեգացիաները։ Ահա Չինական Կոմպարտիայի դելեգացիան՝ ընկ. Չժոու-էն-լայի գլխավորությամբ. համագումարի դելեգատները ակնածանքով և հարգանքով ճանապարհ են տալիս նրան։ Ահա հաճելի զրույցի են բռնվել Ուկրաինական Կոմպարտիայի դելեգատները Հնդկաստանի Կոմպարտիայի դելեգացիայի անդամների հետ. ահա մեզ է մոտենում Վիետնամի աշխատավորների պարտիայի Կենտկոմի նախագահ Հո Շի Մինը և ջերմորեն բարևում, գրկախառնվում, այնպես, որ թվում է թե մենք վաղեմի ծանոթներ ենք։*

*Դժվար է նկարագրել այն հաճելի պահը, որ ապրեց մեզնից ամեն մեկը հունվարի 27-ին։*

*Այո, 1959 թվականի հունվարի 27-ը պատմական մեծ օր է. այդ օրն իր աշխատանքն սկսեց Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXI արտահերթ համագումարը, այդ օրը մեր պարտիայի պատմության մեջ կմրտանի որպես նրա փայլուն էջերից մեկը։*

***

*Ինն օր շարունակ նիստեր էր ունենում պարտիայի XXI համագումարը, ինն օր շարունակ միլիոնավոր և միլիոնավոր մարդիկ մեր երկրում և նրա սահմաններից շատ հեռու իրենց հայացքները բևեռել էին Մոսկվա, պատմա-*

digitised by A.R.A.R.@

կան Կրեմլին, ուր տեղի էր ունենում կոմունիզմ կառուցողների համագումարը:

Ավելի քան 6 ժամ համագումարի դելեգատները և հյուրերը լարված ուշադրությամբ լսեցին ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցումը՝ «ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերի մասին»:

Լսելով ՍՍՌՄ-ում սոցիալիզմի աչքի ընկնող հաղթանակների, սովետական հասարակարգի զարգացման պայծառ հեռանկարների մասին, ի՜նչ զգաց մեզնից ամեն մեկը. զգաց օրինական հպարտություն մեր երկրի, մեր Հայրենիքի նկատմամբ:

Ընկեր Խրուշչովի զեկուցումը հաշվետվություն չէր. XXI համագումարը մեր պարտիայի հերթական համագումարը չէր, սակայն նրա զեկուցման մեջ վառ և բազմակողմանի լուսաբանվեց պարտիայի գործունեությունը XX համագումարից հետո ընկած ժամանակաշրջանում:

XXI համագումարը ամբողջ աշխարհի առջև ցուցադրեց մեր երկրի ձեռք բերած համաշխարհային պատմական հաղթանակները:

Սովետական ժողովուրդը, մարտերում կոփված իր ավանգարդի՝ Կոմունիստական պարտիայի իմաստուն ղեկավարությամբ, անցած ժամանակաշրջանում աշխարհը զարմացնող սխրագործություններ ու քաջագործություններ կատարեց:

Համագումարի դելեգատների, եղբայրական կոմպարտիաների ներկայացուցիչների վրա հսկայական տպավորություն գործեց ընկեր Խրուշչովի այն հայտարարությունը, թե «Այժմ աշխարհում չկան այնպիսի ուժեր, որոնք կարողանային մեր երկրում վերականգնել կապիտալիզմը, խորտակել սոցիալիստական լագերը: Սովետական Միությունում կապիտալիզմի վերականգնման վտանգը բացառված է: Դա նշանակում է, որ սոցիալիզմը հաղթանակել է ոչ միայն լիովին, այլև վերջնականապես»:

Լսելով ընկեր Խրուշչովի զեկուցումը, խորհելով կատարվածի, ձեռք բերածի և մեր մեծ պլանների մասին, մենք կրկին ու կրկին հետադարձ հայացք ենք գցում մեր երկրի անցած փառավոր ուղու վրա:

Կենսագործելով մեծ Լենինի ցուցումները, Սովետական ժողովուրդը՝ Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ մեծ հաղթանակներ է ձեռք բերել երկրի էկոնոմիկայի և կուլտուրայի զարգացման, ժողովրդի բարեկեցության բարձրացման գործում: Մեր երկիրը պատմական կարճ ժամանակամիջոցում, հաղթահարելով դարավոր հետամնացությունը, թռիչք գործեց հետամնացությունից դեպի առաջադիմություն, դարձավ սոցիալիստական հզոր տերություն: Սովետական Միությունում, մարդկության պատմության մեջ առաջին անգամ, վերջնականապես հաղթանակեց սոցիալիզմը և հաջողությամբ իրագործվում է աստիճանական անցումը կոմունիզմին:

Զարգացման բարձր տեմպերը տնտեսության սոցիալիստական սիստեմի վճռական առավելությունն են: Այն երկիրը, որն առավել զարգացած կապիտալիստական երկրներից ետ էր մնում 50—100 տարով, ներկայումս արդյունաբերական արտադրության ծավալով գրավում է առաջին տեղը Եվրոպայում և երկրորդ տեղը՝ աշխարհում:

Առավել արագ տեմպերով է զարգացել ծանր արդյունաբերությունը: Արտադրամիջոցների արտադրությունը 1958 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, մեծացավ ավելի քան հինգ անգամ: Ներկայումս մեր երկրում մեկ



ամսում ձուլվում է ավելի շատ պողպատ, արդյունահանվում է ավելի շատ նավթ, քան ամբողջ 1913 թվականին, յուրաքանչյուր երեք օրում արտադրվում է այնքան էլեկտրաէներգիա, որքան ցարական Ռուսաստանում արտադրվում էր մեկ տարում:

Ծանր ինդուստրիայի զարգացման բարձր տեմպերը և գյուղատնտեսական արտադրության աճը ամուր հիմք են ստեղծել սպառման առարկաների արտադրության, թեթև ու սննդի արդյունաբերության վերելքի համար:

Սովետական իշխանության տարիներին արմատապես փոխվեց մեր գյուղի դեմքը: Պարտիան ապահովեց սոցիալիզմի հաղթանակը գյուղում: Այժմ գյուղացիական միլիոնավոր տնտեսություններ միավորված են ավելի քան 70 հազար խոշոր տնտեսությունների՝ կոլտնտեսությունների մեջ:

Սոցիալիստական գյուղատնտեսության վերելքի համար մեր պարտիայի պայքարը հաղթանակով պսակվեց: Դեռ երբեք մեր երկիրն այնքան հացահատիկ չէր ստացել, որքան ստացավ 1958 թվականին: Երկրում հացահատիկային կուլտուրաների համախառն բերքը 1958 թվականին, ամբողջությամբ վերցրած, կազմեց 8,5 միլիարդ փութ, 1957 թվականի համեմատությամբ՝ 2,1 միլիարդ փթով ավելի: Խոշոր չափով ավելացել է նաև գյուղատնտեսական մյուս կուլտուրաների բերքը: Ավելացել է մսի, կաթի, բրդի արտադրությունը: Կաթի ընդհանուր արտադրությամբ ՍՍՌՄ-ը 1958 թվականին հասավ ԱՄՆ-ին, իսկ յուղի ընդհանուր արտադրությամբ ՍՍՌՄ-ը ԱՄՆ-ից անցել է դեռևս 1957 թվականին:

Սովետական իշխանության տարիներին մեր երկրում իրագործվեց իսկական կուլտուրական ռևոլյուցիա: Ձեռք է բերվել Սովետական Միության բոլոր ժողովուրդների՝ ձևով ազգային, բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրայի չտեսնված ծաղկում: Հիացմունք են պատճառում սովետական գիտության, սովետական գիտնականների մեծ հաջողությունները: Սովետական տիեզերական հրթիռի հաջող արձակումը Սովետական գիտության փառավոր հաղթանակն էր, մեր ժողովրդի, մարդկային մտքի մեծ հաղթանակը:

ՍՄԿԿ XXI համագումարը բացառիկ պարզությամբ սահմանեց մեր պարտիայի և երկրի գլխավոր խնդիրները տնտեսական, քաղաքական, գաղափարական և միջազգային հարաբերությունների բնագավառներում: Համագումարը քննարկեց և ընդունեց Սովետական Միությունում կոմունիստական շինարարության, էկոնոմիկայի, աշխատավորների կուլտուրայի և նյութական բարեկեցության նոր վերելքի ծրագիր, որն իր վիթխարիությամբ հավասարը չունի պատմության մեջ: Նախատեսված է 1965 թվականին՝

— Չուգունի ձուլումը հասցնել 65—70 միլիոն տոննայի, պողպատինը՝ 86—91 միլիոն տոննայի, գլանվածքի արտադրությունը՝ 65—70 միլիոն տոննայի, ապրանքային երկաթաքարի հանույթը՝ 150—160 միլիոն տոննայի:

— Արհեստական թելերի արտադրությունն ավելացնել 4 անգամ, պլաստմասսաներինը և սինթետիկ խեժինը՝ ավելի քան 7 անգամ, հանքային պարարտանյութերինը՝ մոտավորապես 3 անգամ:

— Ապահովել 230—240 միլիոն տոննա նավթի հանույթը, 150 միլիարդ խորանարդ մետր գազի հանույթն ու արտադրությունը, 600—612 միլիոն տոննա ածխի հանույթը:

— Էլեկտրաէներգիայի արտադրությունը հասցնել 500—520 միլիարդ կիլովատ ժամի:

digitised by A.R.A.R.@

— Մեքենաշինության և մետաղամշակման արտադրանքի արտադրությունն ավելացնել մոտավորապես 2 անգամ։

— Թեթև արդյունաբերության համախառն արտադրանքը ավելացնել մոտավորապես 1,5 անգամ։

— Սննդարդյունաբերության համախառն արտադրանքը ավելացնել մոտավորապես 1,7 անգամ։

— Հացահատիկի արտադրությունը հասցնել 10—11 միլիարդ փթի։

Թվեր, վառ և պերճախոս թվեր, որոնց հետևում մենք տեսնում ենք նոր հզոր գործարաններ ու ֆաբրիկաներ, հանքահորեր ու էլեկտրակայաններ, տեսնում ենք մեր Հայրենիքը ավելի հարուստ և հզոր, տեսնում ենք մեր ժողովրդի կյանքի և հոգու գեղեցկությունը։

Յոթնամյակում մեր երկրի ժողովրդական տնտեսությունը և, առաջին հերթին, ծանր ինդուստրիան կզարգանան այնպիսի տեմպերով, որոնք մի քանի անգամ գերազանցում են կապիտալիստական երկրների, այդ թվում ԱՄՆ-ի էկոնոմիկայի զարգացման տեմպերը։

Առաջիկա տասնհինգ տարում մեր երկիրը աշխարհում առաջին տեղը կգրավի ո՛չ միայն արտադրության ընդհանուր ծավալով, այլև բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի արտադրությամբ։

Սովետական ժողովուրդը պարտիայի ղեկավարությամբ հասել է այնպիսի բարձունքների, կատարել այնպիսի վիթխարի վերափոխումներ, որոնք մեր երկրին հնարավորություն են տալիս այժմ թևակոխելու իր զարգացման նոր կարևորագույն ժամանակաշրջանը՝ կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը։

Այդ ժամանակաշրջանի գլխավոր խնդիրներն են՝ կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծումը, մեր Հայրենիքի տնտեսական ու պաշտպանական հզորության հետագա ամրապնդումը և միաժամանակ սովետական ժողովրդի նյութական ու հոգևոր հարաճուն պահանջմունքների ավելի ու ավելի լրիվ բավարարումը։ Դա վճռական էտապ կլինի կապիտալիստական աշխարհի հետ մրցության մեջ, երբ գործնականում պետք է լուծվի բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի արտադրությամբ առավել զարգացած կապիտալիստական երկրներին հասնելու և նրանցից անցնելու պատմական խնդիրը։

Այսպիսով, կոմունիզմի կառուցման մեծ նպատակը, որի մասին երազել են մարդկության լավագույն մտածողները, որի համար պայքարել են շատ սերունդներ, դառնում է իրականություն, պրակտիկ կերպով իրագործվում է մեր երկրում կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ։

Մեր պարտիան՝ ընթանալով լենինյան ուղիով, իրականացրեց աշխարհը վերափոխելու իր պատմական միսիան, գտավ այն հենման կետը, որն արմատապես փոխեց մեր երկրի զարգացման պատմական ուղին, դարձավ սովետական ժողովրդի ղեկավար և ուղղություն տվող մեծ ուժը, մարտերում կոփված նրա ավանգարդը։

Կոմունիստական պարտիան համարձակորեն է նայում ապագային և հավատում է իր գործի լիակատար հաղթանակին։ Ընկեր Խրուշչովի պատկերավոր արտահայտությամբ՝ «Մենք վստահորեն ու հաստատ առաջ ենք ընթանում լենինյան փորձված ուղիով, հաղթահարելով բոլոր խոչընդոտներն ու արգելքները։ Ինչպես ալպինիստների առաջավոր ջոկատը համարձակորեն և արիաբար գրոհում է նոր, անառիկ թվացող գագաթները և ուղի է հարթում



առաջավոր ջոկատին հետևող մարդկանց համար, այդպես էլ մեր պարտիան՝ Սովետական Միության բանվոր դասակարգի, աշխատավորների մարտական ավանգարդը, սովետական ժողովրդին տանում է դեպի կոմունիզմի շողշողուն գագաթները»։

Ինչո՞վ են բացատրվում մեր պարտիայի հաջողությունները։

Պարտիայի հաջողությունները բացատրվում են նրանով, որ նա հանդիսանում է նոր տիպի պարտիա՝ մարքսիզմ-լենինիզմի սկզբունքների վրա հիմնված պարտիա։ Նրա ուժի և հզորության գլխավոր պայմանը նրա շարքերի միասնությունն է, որ ստեղծվել, նվաճվել և կոփվել է տարիների և տասնամյակների ընթացքում՝ թշնամական պարտիաների և հոսանքների, խմբերի և ֆրակցիաների դեմ մղված պայքարում։

Լենինը, հիմնելով մեր պարտիան, սկզբից ևեթ բացառիկ մեծ նշանակություն է տվել նրա միասնությանը. միշտ հավատարիմ մարքսիստական պարտիայի սկզբունքային գծին, նա եղել է անողոք և անզիջում բոլոր նրանց նկատմամբ, ովքեր շեղվել են մարքսիստական դիրքերից, ոտնձգություններ են արել պարտիայի միասնության դեմ։

Պարտիայի միասնության լենինյան գաղափարներն անցած ժամանակաշրջանում ցույց են տվել իրենց կենսահաստատ ուժը, մարմնավորվել են կյանքում, մեր պարտիայի մեծ ու փառավոր գործերում։

Մեր պարտիայի միասնությունն ու համախմբվածությունը բացառիկ ուժով դրսևորվեցին ՍՄԿՊ XXI համագումարում։ Դելեգատներն իրենց ելույթներում մեծ գոհունակությամբ նշում էին, որ մեր պարտիան, ինչպես երբեք՝ միասնական է և սերտորեն համախմբված է իր մարտական շտաբի՝ լենինյան Կենտրոնական Կոմիտեի շուրջը։ Համագումարն ամբողջովին ու լիովին հավանություն տվեց ՍՄԿՊ Կենտկոմի գործունեությանը և ներքին ու արտաքին քաղաքականության բնագավառում նրա կիրառած խոշոր միջոցառումներին։

Համագումարը հավանություն տվեց ամբողջ պարտիայի և ժողովրդի միահամուռ պաշտպանությունը գտած՝ ՍՄԿՊ Կենտկոմի 1957 թվականի Հունիսյան պլենումի որոշումներին, որոնք մերկացրեցին և գաղափարապես ջախջախեցին Մալենկովի, Կագանովիչի, Մոլոտովի, Բուլգանինի և Շեպիլովի հակապարտիական խումբը, որը կիրառելով ֆրակցիոն պայքարի ամենասուր եղանակները, ձգտում էր քայքայել պարտիայի միասնությունը, պարտիային և ժողովրդին շեղել լենինյան ուղուց։

«Կոմունիստական պարտիան,— ասված է ՍՄԿՊ XXI համագումարի բանաձևում,— միշտ հաղթել և հաղթում է մարքսիզմ-լենինիզմին իր հավատարմության, իր շարքերի միասնության ու համախմբվածության, ժողովրդի հետ անխզելի կապի շնորհիվ։ Լենինյան պարտիայի մեջ սովետական ժողովուրդը տեսնում է իր փորձված առաջնորդին և ուսուցչին, նրա իմաստուն ղեկավարության մեջ՝ կոմունիզմի նոր հաջողությունների գրավականը»։

ՍՄԿՊ XXI համագումարը հանդիսացավ պարտիայի և ժողովրդի անխզելի կապի նոր, վառ դրսևորումը։

Դարեր շարունակ բուրժուազիան և նրա իդեոլոգները տարածում էին այն լեգենդը, թե իբր ժողովրդական մասսաներն ընդունակ չեն ինքնուրույն ստեղծագործական գործունեության։ Հոկտեմբերյան ռևոլյուցիան քարուքանդ արեց այդ լեգենդը և ամբողջ աշխարհին ցույց տվեց, որ իշխանությունն իրենց ձեռքը վերցրած աշխատավորական մասսաները ընդունակ են տնօրինելու

digitised by A.R.A.R.@

իրենց ճակատագիրը և վճռական դեր խաղալու հասարակության սոցիալիստական վերակառուցման գործում։

Հավատարիմ լենինյան այն դրույթին, որ պատմությունը կերտում են միլիոնավոր և տասնյակ միլիոնավոր մարդիկ, Կոմունիստական պարտիան մշտապես ընդլայնել և ամրապնդել է կապերը աշխատավորական լայն մասսաների հետ, նրանց բարձրացրել գիտակցական ստեղծագործության։ Պարտիայի ամբողջ գործունեությունը թափանցված է ժողովրդի, աշխատավորների ռևոլյուցիոն էներգիայի նկատմամբ ունեցած խոր հավատով։ Այդ հավատը սովետական մարդկանց ոգևորել է հաղթահարելու մեր ճանապարհին եղած դժվարությունները, մղել է պատմության մեջ անօրինակ, իրենց վեհությամբ անմոռաց սխրագործությունների, ոգևորում է ներկայումս՝ սոցիալիզմից կոմունիզմին անցնելու պատմական ժամանակաշրջանում։

Ուրիշ էլ ինչ վառ վկայություն կարող է լինել պարտիայի և ժողովրդի սերտ միասնության, քան այն փաստը, որ համագումարի դելեգատների կազմում կային մեծ թվով բանվորներ, կոլտնտեսականներ, գիտության և կուլտուրայի բնագավառի բազմաթիվ ներկայացուցիչներ։

Ուրախալի և հաճելի էր տեսնել թե ինչպես կոլտնտեսության նախագահ Եվգենիա Իվանովնա Անդրեևնան ղեկավարում էր պարտիայի բարձրագույն օրգանի նիստը, համագումարի բարձր ամբիոնից խոսում էին և՛ ՍՄԿՊ Կենտկոմի Նախագահության անդամները, և՛ Դոնեցի ավազանի ածխահատ Նիկոլայ Մամայը, Տերնոպոլի մարզի Ստալինի անվան կոլտնտեսության օղակավարուհի Ե. Ա. Դոլինյուկը... Կրեմլի պալատի կամարների տակ հնչում էր կյանքի հորձանուտում գտնվող մարդկանց ուժեղ ու վստահ ձայնը։

Դելեգատների ելույթներում զգացվում էր նրանց անսասան հավատը մեր գործի հաղթանակի նկատմամբ, ջերմ պատրաստակամությունը՝ ժամկետից շուտ կատարելու յոթնամյա պլանը։

Սովետական մարդկանց քաջագործությունները, մեր երկրի պատմական հաջողությունները ուրախություն են պատճառում արտասահմանյան մեր բարեկամներին։ Դա խորապես զգացվում էր մարքսիստական-լենինյան պարտիաների դելեգացիաների ղեկավարների ելույթներում։ Նրանք հիացմունքով էին խոսում Սովետական Միության մասին, սովետական մարդկանց մասին, որոնք համարձակորեն գնալով չուսումնասիրված ճանապարհով, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ ժողովուրդների համար հարթեցին հասարակության ռևոլյուցիոն վերափոխման ուղին և առաջինը ապահովեցին սոցիալիզմի հաղթանակը։

Համագումարը գոհունակությամբ լսեց Չինաստանի Կոմպարտիայի Կենտկոմի նախագահի տեղակալ Ջժոու Էն-լայի ջերմ ու անկեղծ խոսքը. «Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի ժամանակից ի վեր,— ասաց նա, — Սովետական Միությունը միշտ ընթանում է դարաշրջանի առջևից և սոցիալիստական ու կոմունիստական շինարարության իր փայլուն օրինակով ոգեշնչում է ամբողջ աշխարհի պրոլետարիատին և աշխատավորներին։ Սովետական Միության այսօրվա մեջ նրանք տեսնում են իրենց վաղվա օրը»։

Ամբիոնի մոտ է Իսպանիայի Կոմպարտիայի Կենտկոմի գլխավոր քարտուղար Դոլորես Իբարուրին։ Ո՞վ չի լսել ֆաշիզմի և ստրկության դեմ մղվող պայքարի այդ բոցաշունչ մարտիկի անունը, ո՞վ չի ճանաչում միջազգային



կոմունիստական շարժման այդ ականավոր գործչին։ Նա հուզված ճառ է արտասանում և հուզում դելեգատներին իր սրտաբուխ խոսքով.

«Թույլ տվեք ինձ, թանկագին ընկերներ,— ասում է ընկ. Իբարուրին,— մի անգամ ևս կրկնելու, որ կոմունիզմի կառուցման գործում ձեր պատմական հաղթանակներից ամեն մեկը անգնահատելի օգնություն է՝ մեր ժողովրդի պայքարում... Մենք հպարտանում ենք, որ միջաստղային տարածություն առաջինը արձակվեց սովետական հրթիռը։ Նա Սովետական Միության անունը առաջ է տանում տիեզերքի չուսումնասիրված ուղիներով, ամբողջ մարդկությանը զարմացնելուց հետո նա աստղերին կպատմի սովետական ժողովրդի մասին, սովետական մարդկանց մասին, որոնք առաջինը, և դա է ձեր փառքը, համարձակորեն թևակոխեցին կոմունիզմի կառուցման չուսումնասիրված ճանապարհը»։

Համագումարում ցայտուն կերպով դրսևորվեց Սովետական Միության և եղբայրական կոմունիստական ու բանվորական պարտիաների սերտ միասնությունն ու համախմբվածությունը։

Ինչքան էլ աղմուկ բարձրացնեն պարոնայք իմպերիալիստները, միևնույնն է, սոցիալիզմի աշխարհը, ինչպես ասաց ընկեր Խրուշչովը, այժմ, քան երբեք, ամուր, միասնական և անխորտակելի է դարձել։ Նա վճռական ներգործություն է ունենում մարդկության զարգացման ամբողջ ընթացքի վրա։

Մարքսիստական-լենինյան պարտիաները Սովետական Միության Կոմունիստական պարտիան համարում են հարազատ մայր, որից նրանք սովորում են, մի փարոս, որ լուսավորում է ամբողջ աշխարհի կոմունիստական և բանվորական պարտիաների ուղին։ Սովետական Միության Կոմունիստական պարտիան իր հարուստ պատմական փորձով, իր շարքերի միասնության համար մղած պայքարով ոգեշնչող օրինակ է հանդիսանում բոլոր երկրների կոմունիստական և բանվորական պարտիաների համար այն պայքարում, որ նրանք մղում են հասարակության ռևոլյուցիոն վերափոխման համար։

Մեր պարտիայի օրինակով եղբայրական կոմպարտիաները սովորում են ամրապնդել իրենց շարքերի մարտունակությունը՝ պայքարելով օպորտունիզմի և ռևիզիոնիզմի դեմ, մասսաներին կազմակերպել և գրոհի մղել ընդդեմ կապիտալիզմի։ Զինված Լենինի մեծ ուսմունքով, նրանք դարձել են իրենց երկրներում նոր կյանքի կառուցման վճռական ուժը։

ՍՄԿՊ XXI համագումարում ունեցած իրենց ելույթներում արտասահմանյան մարքսիստական-լենինյան պարտիաների ներկայացուցիչները մեծ գոհունակությամբ խոսում էին ՍՄԿՊ-ի դերի և հեղինակության մասին, նշում էին, որ եղբայրական պարտիաները սովորում են ՍՄԿՊ-ի մեծ փորձի հիման վրա, ուժ ու եռանդ են քաղում նրանից։

Լեհական միացյալ բանվորական պարտիայի Կենտկոմի առաջին քարտուղար ընկ. Գոմուլկան համագումարում, իր ելույթում ասաց. «Դեպի Սովետական Միության Կոմունիստական պարտիան և դեպի Սովետական Միությունը միշտ բևեռվել և բևեռվելու են կոմունիստների և աշխարհի բոլոր պրոգրեսիվ մարդկանց հայացքները, քանի որ այստեղ է ծնունդ առել և այստեղից է ներգործում բոլոր ժողովուրդների վրա մարդկության նորագույն պատմությունը, անդասակարգ հասարակության ձևավորման պատմությունը»։

Միջազգային կոմունիստական և բանվորական շարժման հետևանքով, ասաց Ռումինական բանվորական պարտիայի Կենտկոմի առաջին քարտուղար

digitised by A.R.A.R.@

ընկ. Գ. Գեորգիու-Դեժը, Սովետական Միության Կոմունիստական պարտիան դարձել է նրա առաջավոր ջոկատը, որի պատմական փորձը հանդիսանում է ամբողջ բանվորական շարժման անգնահատելի սեփականությունը, մարքսիստական-լենինյան պարտիաների գործունեության համար ոգեշնչման մշտական աղբյուրը։

Եվրոպայի և կապիտալիստական մյուս երկրների կոմունիստական և բանվորական պարտիաները օգտագործելով մեր պարտիայի իդեոլոգիական և կազմակերպական աշխատանքի հարուստ փորձը, դարձել են մեծ և անպարտելի ուժ։ Եթե 1917 թվականին, Հոկտեմբերյան ռևոլյուցիայի նախօրյակին, արտասահմանյան երկրներում կար ոչ ավելի, քան 300—400 հազար, իսկ 1924 թվականին՝ 650 հազար կոմունիստ, ապա այժմ 83 երկրների կոմունիստական և բանվորական պարտիաների շարքերում հաշվվում է 33 միլիոն մարդուց ավելի։ Իրականանում են մեծ Լենինի՝ դեռևս 1920 թվականին ասած մարգարեական խոսքերը. «...Կոմունիստները պարտավոր են գիտենալ, որ ապագան, համենայնդեպս, պատկանում է իրենց... բոլոր դեպքերում և բոլոր երկրներում կոմունիզմը կոփվում և աճում է. նրա արմատներն այնքան խորն են, որ հալածանքները չեն ուժասպառում, այլ ուժեղացնում են նրան»։

Չնայած մի շարք երկրներում մտցված հակակոմունիստական խիստ օրենքներին, չնայած կոմունիստների նկատմամբ մոլեգնող հարձակումներին և հետապնդումներին, գնալով ամրապնդվում են ամբողջ միջազգային կոմունիստական շարժման դիրքերը։

Համագումարում բանվորական և կոմունիստական պարտիաների ներկայացուցիչների ելույթները կրկին ցույց տվեցին, որ այդ պարտիաները ապրում և պայքարում են լիակատար ինքնուրույնության և պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների հիման վրա, նրանք անկախ են և իրենց քաղաքականությունը մշակելիս ելնում են տվյալ երկրի կոնկրետ խնդիրներից։

Պատմության ուղիները կանխապես նախագծված չեն։ Յուրաքանչյուր ժողովուրդ ունի իր ստեղծագործական, ռևոլյուցիոն ընդունակությունները և յուրովի զարգացնում, օգտագործում է այդ ընդունակությունները՝ առաջադրված նպատակին հասնելու համար։

XXI համագումարը արժանի հակահարված տվեց իմպերիալիզմի գաղափարախոսներին և նրանց ձայնակցող հարավսլավական ռևիզիոնիստներին, որոնք ճգնում են ապացուցել, որ իբր թե մեր պարտիան «հեգեմոնիզմի» է ձգտում մյուս պարտիաների նկատմամբ, միջամտում է ուրիշ երկրների ներքին գործերին և ձգտում է իրեն ենթարկել մյուս Կոմունիստական պարտիաները։ Դա բացարձակ զրպարտություն է, և ոչ ոք, ով ղեկավարվում է առողջ բանականությամբ, չի հավատա դրան։

Եվ պատահական չէ, որ համագումարում իրենց ունեցած ելույթներում մարքսիստական-լենինյան պարտիաների ներկայացուցիչները միահամուռ կերպով դատապարտեցին Հարավսլավիայի կոմունիստների միության ռևիզիոնիստական ծրագիրը։ Իմպերիալիզմի վարձկաններին, ռևիզիոնիստներին, նրանց, ովքեր խեղաթյուրում են ճշմարտությունը, արժանի պատասխան են ընկեր Ն. Ս. Խրուշչովի հետևյալ խոսքերը.

«Ինչ վերաբերում է Սովետական Միությանը, ապա, ինչպես հայտնի է, նրա դերն այն չի, որ ղեկավարում է մյուս երկրներին, այլ այն, որ մեր երկիրը մարդկության համար առաջինը հարթեց սոցիալիզմի ճանապարհը, որ



նա համաշխարհային սոցիալիստական սիստեմի առավել հզոր երկիրն է և առաջինը թևակոխեց կոմունիզմի ծավալուն կառուցման ժամանակաշրջանը։

...Մենք միշտ հետևել ենք և այսուհետև էլ աննահանջ կերպով կհետևենք Մարքսի, Էնգելսի, Լենինի ինտերնացիոնալ մեծ ուսմունքին։ Պատկերավոր ասած, մեր Կոմունիստական պարտիան իրեն դիտում է որպես համաշխարհային կոմունիստական շարժման առաջավոր ջոկատներից մեկը, որն առաջինն է գրավում կոմունիզմի բարձունքները։ Եվ դեպի այդ բարձունքները տանող ճանապարհին մեզ չեն կարող կանգնեցնել ոչ մի հեղեղ կամ փլուզում, ոչ ոք չի կարող մեզ ստիպել շեղվելու կոմունիզմի ուղուց»։

Համագումարը խնդիր դրեց շարունակել ռևիզիոնիզմի՝ որպես ժամանակակից պայմաններում կոմունիստական շարժման մեջ գլխավոր վտանգի մերկացումը, միաժամանակ չթուլացնել պայքարը դոգմատիզմի և աղանդավորության դեմ, որոնք դժվարացնում են մարքսիստական-լենինյան տեսության ստեղծագործական կիրառումը, հանգեցնում են մասսաներից կտրվելուն։

Մեր երկրի հզորության անշեղ աճը պարտիայի համախմբվածության և միասնության արդյունքն է, որը եղել և մնում է սովետական կարգի ամրության գլխավոր պայմանը, մեր երկրում կոմունիզմի հաղթանակի երաշխիքը։

***

ՍՄԿՊ XXI համագումարում ընկեր Խրուշչովի զեկուցումը, նրա եզրափակման խոսքը, համագումարի ընդունած որոշումները, որոնք նոր, արժեքավոր ավանդ են մարքսիստական-լենինյան տեսության մեջ, ներկայումս մեծ հետաքրքրությամբ ուսումնասիրում են մեր երկրի աշխատավորները. այդ պատմական փաստաթղթերը իրենց վրա են բևեռել ամբողջ աշխարհի հասարակության ուշադրությունը։ Եվ դա հասկանալի է։ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանը միջազգային մեծ նշանակություն ունի։ Յոթնամյա պլանի իրականացումը ո՛չ միայն հսկայական նշանակություն կունենա մեր երկրի հզորության հետագա ամրապնդման, մեր էկոնոմիկայի և կուլտուրայի նոր, հզոր վերելքի համար. դա կնպաստի սոցիալիզմի լագերի ամրապնդմանը և կրկին ցույց կտա սոցիալիզմի առավելությունները կապիտալիզմի հանդեպ։

Յոթնամյա պլանի իրականացման, նրա բարձունքները գրավելու համար սովետական ժողովրդի արշավն սկսված է։ Պարտիայի XXI համագումարը մեր մեծ Հայրենիքի բոլոր աշխատավորներին կոչ արեց ակտիվորեն պայքարել նրա կատարման և գերակատարման համար։ Մեր ռեսպուբլիկայի, նրա մայրաքաղաքի աշխատավորները հսկայական ոգևորությամբ ընդունելով համագումարի պատմական որոշումները, հայտնում են իրենց ջերմ պատրաստակամությունը հաջողությամբ իրականացնելու յոթնամյա պլանը։

Հանուն մեր մեծ նպատակի, հանուն կոմունիստական իդեալների իրականացման անհրաժեշտ է և պետք է լավ աշխատել։ Կոմունիզմը այլևս հեռավոր ապագա չէ. յոթնամյակը, որը մենք արդեն թևակոխել ենք, վճռական սահմանագիծ է մեր երկրի պատմական զարգացման ճանապարհին։

Մարքսիզմ-լենինիզմի դրոշով մենք առաջ ենք ընթանում դեպի կոմունիզմ, դեպի մարդկության պայծառ ապագան։

digitised by A.R.A.R.@

# ՅՈԹՆԱՄՅԱԿԻ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՆՇԱՆԱԿՈՒԹՅՈՒՆԸ

Զ. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ

Մեր Հայրենիքի սոցիալիստական տնտեսության զարգացումն իր առաջընթացի հինգերորդ տասնամյակի շեմքին նշանավորվեց հասարակական ամբողջ արտադրության, սովետական ժողովրդի կենսամակարդակի հարաճուն վերելքով և աստիճանաբար կոմունիզմին անցնելու համար նյութական լայն նախադրյալների ստեղծումով։ Մեր երկրի զարգացման գլխավոր արդյունքը սոցիալիզմի լրիվ և վերջնական հաղթանակն է։ Այժմ մենք հասել ենք արտադրողական ուժերի այնպիսի մակարդակի և տնտեսական այնպիսի հզորության, որ կարող ենք կարճ ժամկետում լուծել ՍՍՌՄ-ի տնտեսական հիմնական խնդիրը և ավարտել կոմունիզմի նյութա-տեխնիկական բազայի ստեղծումը։ Այս հոյակապ նպատակն է ՍՍՌՄ-ի ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի հիմքը և գլխավոր բովանդակությունը։ Ինչպես շատ պատկերավոր արտահայտվել է լեհական մեկնաբաններից մեկը, «պլանը բազմաստիճան մի հրթիռ է, որը Սովետական Միությանը դուրս կբերի կոմունիզմի ուղեծիրը»։

Յոթնամյա, ինչպես նաև հետագա հեռանկարային պլանով, պետք է լուծվի պատմական մի խնդիր՝ տնտեսական խաղաղ մրցության մեջ լիակատար հաղթանակ տանել կապիտալիստական արտադրության եղանակի նկատմամբ։ «Ներկայումս մեր խնդիրն է,— ասված է ՍՄԿԿ արտահերթ XXI համագումարում ընկ. Ն. Ս. Խրուշչովի զեկուցման մեջ,—հասնել համաշխարհային արտադրության մեջ կապիտալիստական սիստեմի հանդեպ սոցիալիստական սիստեմի գերակշռության, հանրային աշխատանքի արտադրողականությամբ, բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի արտադրությամբ գերազանցել առավել զարգացած կապիտալիստական երկրներին և ապահովել աշխարհում ամենաբարձր կենսամակարդակը»։

Մրցության առաջիկա էտապում Սովետական Միության խնդիրն է՝ տնտեսական տեսակետից գերազանցել ԱՄՆ-ին։ Սովետական Միությունն արդեն այժմ մեկ շնչին ընկնող արտադրանքի որոշ տեսակներով, այդ թվում մարգանեցով, նիկելով, քրոմով, ասբեստով, շաքարի ճակնդեղով և շաքարով, ցորենով, վուշով, կարտոֆիլով, խոզերի և ոչխարների գլխաքանակով գերազանցում է ԱՄՆ-ին։ Մենք հեռու չենք ԱՄՆ-ի մակարդակից նաև մեկ շնչին ընկնող երկաթահանքի, քարածխի, ցեմենտի, բրդյա կտորեղենի, կենդանական յուղի և կաթի արտադրությամբ։ Յուրաքանչյուր տարի ավելանում է նյութական այն բարիքների ցուցակը, որոնցով Սովետական Միությունն ԱՄՆ-ին գերազանցում է ո՛չ միայն տարեկան աճի տեմպերով, այլև բացարձակ չափերով։

ՍՍՌՄ-ի և ԱՄՆ-ի տնտեսական մրցությունը միջազգային ասպարեզում



տեղի ունեցող երկու սիստեմների մրցության հիմնական մասն է, որի մեջ օրեցօր ավելի ակնհայտ են դառնում սոցիալիզմի առավելությունները՝ իր դարն ապրող, ներքին հակասություններից բզկտվող կապիտալիզմի հանդեպ։ Սոցիալիստական սիստեմն արդեն տալիս է համաշխարհային արտադրանքի մեկ երրորդը։ Այդ թվում՝ հացահատիկի գրեթե կեսը, բամբակի 43 տոկոսը և այլն։ Բնակչության մեկ շնչին ընկնող արդյունաբերական արտադրանքով սոցիալիստական սիստեմն ամբողջությամբ վերցրած արդեն հասել է կապիտալիստական սիստեմին։

Յոթնամյակի վերջին Սովետական Միությունը բնակչության մեկ շնչին ընկնող արտադրանքի չափով առաջ կանցնի Եվրոպայի կապիտալիստական առավել զարգացած երկրներից։ Արտադրանքի բացարձակ չափով նա արտադրության մի շարք կարևորագույն տեսակներով կգերազանցի ԱՄՆ-ին, իսկ այլ տեսակներով՝ կմոտենա նրանց։ Գյուղատնտեսական կարևորագույն արտադրանքով ՍՍՌՄ-ը ԱՄՆ-ին կգերազանցի թե՛ բացարձակ և թե՛ բնակչության մեկ շնչի հաշվով։

Սովետական Միության հետ միևնույն ավյունով են տոգորված Չինաստանը, սոցիալիստական լագերի բոլոր երկրները։ Նրանց ժողովուրդները միավորված են ստեղծագործական ընդհանուր պաթոսով, կոմունիզմի փայլուն կատարներին հասնելու ժամկետները կրճատելու անհողդողդ ձգտումով։ Այժմ միայն կույրը կարող է չտեսնել սոցիալիզմի պատմական հաղթանակները, նրա առավելությունները կապիտալիստական սիստեմի նկատմամբ։

Ահա թե ինչպիսին է արդյունաբերական արտադրանքի աճի դինամիկան սոցիալիզմի և կապիտալիզմի երկրներում.

| | 1937 թ. | 1950 թ. | 1955 թ. | 1957 թ. |
|---|---|---|---|---|
| Սոցիալիզմի երկրներ . . | 100 | 365 | 756 | 867 |
| Կապիտալիզմի երկրներ . . | 100 | 141 | 189 | 202 |

Յոթնամյա պլանի կատարման և գերակատարման, ինչպես նաև սոցիալիստական մյուս երկրների էկոնոմիկայի զարգացման բարձր տեմպերի շնորհիվ համաշխարհային սոցիալիստական լագերը կարտադրի ամբողջ աշխարհի արդյունաբերական արտադրանքի կեսը և բնակչությանը կապահովի ամենաբարձր կենսամակարդակով։ Դրանով իսկ կապահովվի սոցիալիզմի գերակշռությունը կապիտալիզմի նկատմամբ՝ նյութական բարիքների արտադրության մեջ, որը մարդկային գործունեության վճռական ոլորտն է։ Դա կլինի համաշխարհային-պատմական նշանակություն ունեցող հաղթանակ։

Այս տեսակետից մեր երկրում կոմունիզմի կառուցման փորձը ունի համաշխարհային բնույթ, և ՍՍՌՄ-ի ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի նշանակությունը բնականաբար դուրս է գալիս Սովետական Միության սահմաններից։ Այդ պլանը սովետական ժողովրդի ո՛չ միայն ազգային, այլև ինտերնացիոնալ խնդիրների մարմնացումն է։ «Յոթնամյա պլանը ո՛չ միայն սովետական մարդկանց է վերաբերում, այլ ընդհանրապես մեր մոլորակի բոլոր մարդկանց»,— խոստովանում է մինչև իսկ ֆրանսիական «Լիբերասիոն» թերթը։

digitised by A.R.A.R.@

Հիրավի, պլանի իրականացմանը զուգընթաց հսկայական ուժով կկենսագործվի Վ. Ի. Լենինի հանճարեղ կանխատեսումն այն մասին, որ քանի գնա՝ այնքան Սովետական երկիրն իր տնտեսական քաղաքականությամբ ավելի մեծ չափով կազդի աշխարհի պատմության ընթացքի վրա, համայն մարդկության պատմական ճակատագրի վրա։ Դեռևս 1921 թվականի մայիսին, ՌԿ(բ)Պ Համառուսաստանյան X կոնֆերենցիայում արտասանած իր եզրափակիչ ճառում Վլադիմիր Իլյիչն ասում էր. «Այժմ միջազգային ռևոլյուցիայի վրա մենք մեր գլխավոր ներգործությունն անում ենք մեր տնտեսական քաղաքականությամբ։ Սովետական Ռուսաստանի ռեսպուբլիկային են նայում բոլորը, աշխարհի բոլոր երկրների բոլոր աշխատավորները, առանց որևէ բացառության և առանց որևէ չափազանցության» (Երկեր, հ. 32, էջ 562)։

Ժակ Դյուկլոն գրում է, որ Սովետական Միությունն աշխարհի բոլոր աշխատավորներին անգնահատելի ծառայություն է մատուցել։ Սոցիալիզմի մասին հին երազը նա իրականություն դարձրեց, իսկ այսօր նա առաջ է գնում կոմունիզմի ծավալուն շինարարության ճանապարհով։ Իսկ դա նշանակում է, որ կապիտալիստական աշխարհի միլիոնավոր մարդիկ կոմունիզմի տնտեսական և սոցիալական ռևոլյության մեջ տեսնում են իրենց հույսերի իրականացումը։

Մարդկության պատմության մեջ համաշխարհային հասարակությունը ոչ մի պարտիայի աշխատանքի, ոչ մի ծրագրի երբեք չի հետևել այնպիսի հսկայական հետաքրքրությամբ, ինչպես ՍՄԿՊ XXI արտահերթ համագումարին, որտեղ քննարկվում էր մարդկության ապագայի համար այդքան մեծ նշանակություն ունեցող ծրագիրը։ «Համագումարը,— ասել է Շվեդիայի Կոմպարտիայի Կենտկոմի գլխավոր քարտուղար Հ. Խագբերգը,— մի նոր, կարևոր էջ գրեց մարդկության պատմության մեծ գրքի մեջ»։

Յոթնամյա պլանն արդեն մի քանի ամիս է, ինչ քննարկում ու մեկնաբանում են ինչպես մեր բարեկամները, այնպես էլ մեր հակառակորդները։ Այն առաջին հերթին ամենալայն արձագանք գտավ սոցիալիստական երկրներում, որոնց աշխատավոր ժողովուրդները մեր հաջողություններով ուրախանում են այնպես, ինչպես իրենց նվաճումներով։ Սոցիալիզմի կառուցման գործում նրանց հաղթանակներն անքակտելիորեն կապված են կոմունիզմ կառուցող Սովետական երկրի հաջողությունների հետ։ ՍՍՌՄ-ը, որը սովետական ժողովրդի հերոսական աշխատանքով կուտակված հսկայական տնտեսական պոտենցիալը ի սպաս է դնում սոցիալիզմի և խաղաղության գործին, բոլոր սոցիալիստական երկրների զարգացման, սոցիալիստական լագերի նյութական և գաղափարական անհաղթահարելի ուժի ամուր հիմքն է։ Նրա օգնությամբ եղբայրական սոցիալիստական երկրներում կառուցվել և կառուցվում են մոտ 550 արդյունաբերական ձեռնարկություններ և 169 առանձին ցեխեր ու սարքավորումներ։

Յոթնամյակի տարիներին ավելի մեծ թափ կհաղորդվի այդ պրակտիկային, լայնորեն կզարգանան սոցիալիստական երկրների արտադրական ջանքերի համաձայնեցումը և ժողովրդա-տնտեսական պլանների կոորդինացումը։ Սոցիալիստական լագերի էկոնոմիկայի զարգացման մեջ կմեծանա աշխատանքի միջազգային բաժանման դերը, հատկապես նրա բարձրագույն ձևերի մասնագիտացման և կոոպերացման դերը։ Դա կնպաստի սոցիալիստական պետությունների զարգացման բուռն տեմպերի ապահովման գործին։ Դրանում է մեր ուժը, սոցիալիզմի առաջիկա հաղթանակների երաշխիքը կապիտալիզմի հետ խաղաղ մրցության մեջ։



Կապիտալիստական աշխարհում յոթնամյա պլանը նույնպես մեծ հետաքրքրություն և իրարանցում է առաջ բերել։ Բուրժուական մեկնաբանները որքան էլ որ ձգտում են նվազեցնել նրա նշանակությունը, այնուամենայնիվ ընդունում են, որ պլանում դրված խնդիրներն իսկապես որ վիթխարի են։ Անցել են այն ժամանակները, երբ սովետական պլաններին Արևմուտքում պատասխանում էին ուսերը հոռետեսորեն թափ տալով, առաջին հնգամյա պլանը համարում էին «անսանձ ֆանտազիայի տխուր էնցիկլոպեդիա», «խելագարություն», «պրոպագանդիստական տրյուկ» և այլն։ Ամերիկյան «Նյու-Յորք Թայմս» թերթը 1931 թվականի նոյեմբերին խիստ ինքնահավան գրում էր, որ սովետական «պլանային տնտեսությունը վաղ թե ուշ հակասության մեջ կընկնի փաստերի հետ և կավարտվի ձախողմամբ»։

Այժմ կենդանի իրականությունն ամբողջապես հերքել է բուրժուական կարգերի պաշտպանների նմանօրինակ «մարգարեությունները»։ Հազարավոր բուրժուական տնտեսագետներ մոնոպոլիստների հրահանգով բազմակողմանիորեն ուսումնասիրում են յոթնամյակի թվերը, քանի որ փորձը նրանց արդեն ցույց է տվել, որ ՍՍՌՄ-ը միշտ էլ կատարել և գերակատարել է իր պլանները։ Նրանք այլևս իրենց չեն հուսադրում այն սնամեջ համոզմունքով, թե սովետական տնտեսական և կուլտուրական շինարարության ծավալուն ծրագրերն անիրագործելի են։ Նրանք հասկացել են, որ սովետական պլանները կենսագործվում են լիովին և ապշեցուցիչ ճշտությամբ։

Ամերիկյան մամուլի արձագանքներից երևում է, որ այժմ շատ քչերն են փորձում կասկածի տակ առնել այն իրողությունը, որ Սովետական Միությունը կարող է գերազանցել ԱՄՆ-ի տնտեսական հզորությունը։ Մեկնաբանելով ՍՄԿՊ XXI արտահերթ համագումարի արդյունքները, ամերիկյան մամուլն ստիպված է խոստովանել կոմունիստական շինարարության ծրագրի հաջող կատարման, կապիտալիստական կարգի նկատմամբ սոցիալիզմի առավելությունների և անխուսափելի հաղթանակի մեջ սովետական ժողովրդի ինքնավստահությունը։ Նույնիսկ Դալեսը ստիպված խոստովանում է, որ «աշխարհում ոչ մի միջոց չկա, որը կարողանար Սովետական Միությանը խանգարել դառնալու է՛լ ավելի աճող տնտեսական և ռազմական հզորության երկիր»։

«Ամերիկյան գիտա-հետազոտական ինստիտուտ» կազմակերպությունը, որը խոշորագույնն է ԱՄՆ-ում, արդյունաբերական և այլ 30 հազար ֆիրմաների համար պատրաստել է մի զեկուցագիր՝ «միջազգային կոմունիզմի տնտեսական նոր մրցահրավերի մասին»։ Այս փաստաթղթի հեղինակները ստիպված են սևով սպիտակի վրա գրել, որ «սովետական, չինական և... արևելաեվրոպական արդյունաբերական արտադրության անընդհատ աճը վերջին հինգ տարիների ընթացքում սուր կերպով փոխեց տնտեսական հզորության միջազգային փոխհարաբերությունը»։

Յոթնամյակի վերաբերյալ բուրժուական բոլոր մեկնաբանությունները իհարկե, միատեսակ չեն, բայց տիրապետող տենդենցն այն է, որ կապիտալիստական սիստեմի հավատարիմ պաշտպաններն անգամ ստիպված խոստովանում են, որ կապիտալիզմի հետ մղվող մրցությունից սոցիալիզմի հաղթանակով դուրս գալը միանգամայն ռեալ բան է։ Նրանց սարսափեցնում է այն, որ յոթնամյակի վիթխարի խնդիրների լուծումը խոր տպավորության



digitised by A.R.A.R.@

կթողնի կապիտալիստական աշխարհի մարդկանց վրա, կկրկնապատկի կոմունիզմի գաղափարների ուժը։ «Մենք մեզ կխաբեինք,— գրում է ոչ անհայտ ամերիկյան հրապարակախոս Ուոլտեր Լիպմանը,— եթե մեզ հաշիվ չտայինք այն բանում, որ կոմունիստական պետությունների գլխավոր ուժը... նրանց օրինակի ուժն է»։

Այո, սոցիալիզմն իր օրինակով է ճանապարհ հարթում կապիտալիստական աշխարհի երկրներում։ Սակայն առանց ուժի գործադրման, պատերազմի և նրանց ներքին գործերին միջամտելու։ Դա կատարվում է, ամենից առաջ, հասարակական երկու սիստեմների խաղաղ տնտեսական մրցության ընթացքում կապիտալիզմի նկատմամբ սոցիալիզմի առավելությունների ցուցադրումով։ Սոցիալիստական երկրներում սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման հաջողությունների հետ մեկտեղ կապիտալի երկրների աշխատավորների ավելի լայն զանգվածներ են համոզվում, թե ինչպիսի առավելություններ է իր հետ բերում սոցիալիզմը։ Ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանի կենսագործումը կապիտալիստական աշխարհի նոր հարյուր միլիոնավոր մարդկանց ցույց կտա սոցիալիզմի առավելությունները կապիտալիզմի նկատմամբ։ «Մենք ուզում ենք,— XXI համագումարում իր եզրափակման խոսքում հայտարարեց Ն. Ս. Խրուշչովը,— կապիտալիստական երկրների հետ մրցել խաղաղ ասպարեզում, մրցել արտադրողական ուժերի զարգացման, երկրի տնտեսական պոտենցիալի զարգացման, ժողովրդի նյութական ու կուլտուրական բարեկեցության բարձրացման ասպարեզում։ Մենք ուզում ենք, որ ամեն մի հասարակարգ մրցության ընթացքում ցույց տա իր տնտեսական և հոգևոր ուժերը»։ Իսկ դրա անհրաժեշտ առաջին պայմանը՝ խաղաղության պահպանումն է ամբողջ աշխարհում։

***

Յոթնամյա պլանը խաղաղ շինարարության պլան է։ Այն լենինյան խաղաղ գոյակցության քաղաքականության արտահայտություն է, տոգորված մեր ժամանակի ամենավեհ նպատակի՝ խաղաղությունը պահպանելու ոգով։ Նրա իրականացումը անգնահատելի դեր կխաղա այդ արմատական հարցը լուծելու և ռեալ հնարավորություններ կստեղծի պատերազմը որպես միջազգային հարցերի լուծման միջոց վերացնելու համար։ «Խաղաղության, խաղաղ գոյակցության պրոբլեմները,— ասում է Ն. Ս. Խրուշչովը,— հարցերի հարցն են, քանի որ յուրաքանչյուր երկրի ժողովուրդ, ինչպիսի սոցիալական սիստեմ էլ այնտեղ գոյություն ունենա, հոգ է տանում այն մասին, որ լավ ապրի, խաղաղ աշխատի, ստեղծի կյանքի լավագույն պայմաններ»։

Սովետական Միության տնտեսական հզորության նոր հսկայական աճը, որ ձեռք կբերվի յոթնամյա պլանի կենսագործման շնորհիվ, մեծագույն ավանդ կհանդիսանա համընդհանուր խաղաղության պահպանման գործում, է՛լ ավելի կբարձրացնի մեր երկրի դերը՝ որպես բոլոր ժողովուրդների ազատության և անկախության պատվարի, որպես սոցիալիստական հզոր տերության, որն ի վիճակի է կործանիչ հարված հասցնել ամեն մի իմպերիալիստական ագրեսիայի։

Սովետական հասարակության սոցիալական էությունը, նրա էկոնոմիկայի բնույթը կանխորոշում են նրա արտաքին քաղաքականության խաղաղասիրական բնույթը։ ՍՄԿԿ XX համագումարի որոշումներին համապատասխան իրականացվող սովետական խաղաղասեր ճկուն արտաքին քաղաքականությունը լայն ճանաչում է գտել աշխարհի բոլոր մասերում։ Այն աննախընթաց չափով բարձրացրել է ՍՍՌՄ-ի միջազգային հեղինակությունը։ Յոթնամյա պլանը տնտեսապես է՛լ ավելի կհզորացնի մեր երկիրը, իսկ դրա հետ միասին ավելի շատ միջոցներ կընձեռի նրան միջազգային քաղաքականության ասպարեզում։ Որքան ուժեղ լինի մեր Հայրենիքը, այնքան ավելի շատ հնարավորություններ կունենա նրա արտաքին քաղաքականությունը՝ խաղաղության համար մղվող պայքարում։ Սոցիալիստական լագերի երկրների տնտեսական պոտենցիալն այնքան կաճի, որ նրանց վրա հարձակվելը ագրեսորների համար հավասար կլինի ինքնասպանության։



Սակայն առանց հետևողական պայքարի հնարավոր չէ ապահովել խաղաղությունն աշխարհում և խաղաղ գոյակցությունը կապիտալիստական պետությունների հետ։ Այդ պայքարի շնորհիվ է, որ այժմ ավելի ու ավելի տիրապետող է դառնում երկու սիստեմների խաղաղ գոյակցության գաղափարը։ Այս տեսակետից շատ բնորոշ էր ՄԱԿ-ի Գլխավոր Ասամբլեայի XIII սեսիայում, Չեխոսլովակիայի նախաձեռնությամբ պետությունների միջև խաղաղ գոյակցության սկզբունքների հաստատման և ամրապնդման հարցի քննարկումը։ Չնայած ԱՄՆ-ի բացահայտ դիմադրությանը, հարցի քննարկումը շատ արդյունավետ եղավ, հօգուտ նրա հանդես եկան ավելի քան 40 պատվիրակություն։ Ինը պատվիրակություն, որոնք սոցիալ-տնտեսական տարբեր սիստեմների պատկանող պետություններ էին ներկայացնում (Ավստրիա, Արգենտինա, Բոլիվիա, Գանա, Հնդկաստան, Իսլանդիա, Ցեյլոն, Չեխոսլովակիա և Հարավսլավիա), առաջարկեցին բանաձևի մի համաձայնեցված տեքստ, որն սկզբում մտցրել էր Չեխոսլովակիան։

Այդ միասնական նախագիծը միահամուռ կերպով ընդունվեց Ասամբլեայի կողմից, չնայած ԱՄՆ-ի ներկայացուցիչների բոլոր խանգարիչ փորձերին, որոնք նույնպես ստիպված եղան իրենց ձայնը տալ այդ նախագծին։ Քվեարկության ժամանակ ձեռնպահ մնաց միայն Չանկայշիականը։

Խաղաղասեր երկրները թե՛ տերիտորիայով, թե՛ բնակչության թվով և թե՛ բնական հարստություններով գերազանցում են իմպերիալիստական պետություններին։ Յոթնամյա պլանի նպատակն է օգտագործել այդ առավելությունները տնտեսական և կուլտուրական շինարարության, խաղաղությունն աշխարհում պահպանելու համար։ Այդ նպատակով Սովետական Միությունը ձգտում է ո՛չ միայն երկու սիստեմների խաղաղ գոյակցության և մրցության, այլև հակադիր սիստեմների պատկանող պետությունների համագործակցության, նրանց միջև առևտրի ընդլայնման։ Այսպիսի քաղաքականությունը խթան կհանդիսանա, որպեսզի «սառը պատերազմի» վրա ծախսվող ահռելի գումարները, որոնք Ջ. Բեռնալի հաշվումներով աշխարհում կազմում են 90 միլիարդ դոլար, օգտագործվեն խաղաղ նպատակներով։

Արևմտյան պետությունների վարած «սառը պատերազմի» քաղաքականության հետևանքով ստեղծված միջազգային լարվածության մեջ յոթնամյա պլանն այսօր իսկ խաղաղությունը պահպանելու և ամրապնդելու հզոր միջոց է։ Սովետական գիտնականների ստեղծած առաջին կոսմիկական հրթիռներն ու առաջին արհեստական մոլորակն արդեն սթափեցրել են ավանտյուրիստներից շատերին։ Մեր հրթիռային տեխնիկայի զարգացումը ցրեց պատրանքները

digitised by A.R.A.R.@

ԱՄՆ-ի անխոցելիության մասին: Դա նշանակում է, որ սովետական գիտությունն ու տեխնիկան իսկապես անգնահատելի ծառայություն մատուցեցին աշխարհում խաղաղությունն ապահովելու գործին:

Սակայն ԱՄՆ-ի որոշակի շրջաններին ձեռնտու չէ «սառը պատերազմի» դադարեցումը: «Զնհալ» լավ բառը ամերիկյան մի շարք քաղաքականագետների և ժուռնալիստների մոտ միայն կատաղություն է առաջացնում: Մինչև XXI համագումարում Խրուշչովի եզրափակման խոսքը, նրանք աղմկում էին այն մասին, որ Սովետական Միությունն իբր ոչ թե «սառը պատերազմի» վերացում է ցանկանում, այլ հաղթանակի է ձգտում այդ «պատերազմում»: Նրանց ուղղված ընկ. Խրուշչովի այն առաջարկությունից հետո, թե՝ արևմտյան տերությունները թող իրենց այդ պատերազմում «հաղթող» համարեն, իսկույն ձայներ հնչեցին, թե այդ Արևմուտքի համար հաղթանակ չի լինի, քանի որ դա տեղի կունենա «սովետական պայմաններով» և կհամապատասխանի «միայն Սովետական Միության» շահերին:

Սովետական գործերի ամերիկյան ոչ անհայտ «էքսպերտ» Հարրի Շվարցն իր տերերին խորհուրդ է տալիս, որ «պլանի հաջող կատարմանը խանգարող միակ արդյունավետ միջոցը միջազգային լարվածության ուժեղացումը և մեծ մասշտաբներով հակառևոլյուցիոն ելույթների կազմակերպումն է…»: Սակայն զուր ջանքեր են դրանք: Չնայած Շվարցի և նրա նմանների պլաններին, կոմունիզմը կապիտալիզմին կհաղթի առանց պատերազմի դիմելու: Այս համոզումն ավելի ու ավելի է տիրում աշխարհի բոլոր մարդկանց մտքերին, հսկայական ազդեցություն է ունենում Արևելքի ժողովուրդների վրա:

***

Երկրորդ համաշխարհային պատերազմից հետո Մեծ Բրիտանիայում իշխանության գլուխ անցած լեյբորիստների կառավարության առաջին միջոցառումներից մեկը գաղութների մինիստրության հոյակապ շենքի նախագծի կազմումն էր, որը պետք է կառուցվեր Լոնդոնի ամենաաչքի ընկնող տեղում՝ Պառլամենտի հրապարակում: Շենքի կառուցումն սկսվեց և նրա վրա նույնիսկ ծախսվեց ավելի քան մեկ միլիոն ֆունտ ստեռլինգ: Սակայն շուտով շինարարությունը դադարեցվեց: Ակնհայտ դարձավ, որ մինչև շենքի կառուցումն ավարտվի, գաղութային կայսրությունից այնքան քիչ բան կմնա, որ այդ շենքի դերը զերոյի կհավասարվի:

Հիրավի, հետպատերազմյան շրջանում ավելի քան 1,3 միլիարդ մարդ Ասիայում և Աֆրիկայում թոթափեցին գաղութային լուծը: Այդ թվից 670 միլիոնը վերջնականապես ազատվել է իմպերիալիստական շահագործման կապանքներից: Չինաստանը, Կորեական Ժողովրդա-Դեմոկրատական Ռեսպուբլիկան, Վիետնամի Դեմոկրատական Ռեսպուբլիկան վերջնականապես թոթափել են իմպերիալիզմի լուծը և սոցիալիզմ են կառուցում: Հնդկաստանը, Բիրման, Ինդոնեզիան, արաբական երկրների ճնշող մեծամասնությունը և այլ երկրներ թեև քաղաքական անկախություն են նվաճել, բայց դեռևս շարունակում են մնալ տնտեսության կապիտալիստական սիստեմի մեջ: Քաղաքական անկախության նվաճումը դեռ չի նշանակում տնտեսական ինքնուրույնություն, այն միայն առաջին քայլն է դրան հասնելու ուղղությամբ: Այդ երկրներում դեռևս տիրապետող են օտար կապիտալի դիրքերը և դրանով իսկ դեռևս բա-



ցառված չէ այդ երկրների ազգային ինքնուրույնությանն սպառնացող վտանգը: Հատկանշական է, որ 1948 թվականից սկսած, անգլիական կապիտալ ներդրումները Հնդկաստանում ավելացել են և այժմ կազմում են 300 միլիոն ֆունտ ստեռլինգ: Իմպերիալիզմը ձգտում է ուժեղացնել իր տնտեսական ներխուժումը անկախություն ստացած երկրներում, նրանց ռազմական պայմանագրեր է պարտադրում (ՍԵԱՏՕ, Բաղդադի պակտ), նրանց «օգնություն» է ցույց տալիս որոշակի տնտեսական, քաղաքական և ռազմական պայմաններով:

Դեռ 1920 թվականին Վ. Ի. Լենինն ընդգծում էր. «...անհրաժեշտ է բոլոր, հատկապես հետամնաց, երկրների ամենալայն աշխատավոր մասսաների մեջ անշեղորեն պարզաբանել և մերկացնել այն խաբեությունը, որ սիստեմատիկորեն անց են կացնում իմպերիալիստական տերությունները, որոնք քաղաքականապես անկախ պետություններ ստեղծելու անվան տակ ստեղծում են տնտեսական, ֆինանսական և ռազմական տեսակետից իրենցից լիովին կախված պետություններ» (Երկեր, հ. 31, էջ 172):

Անկախություն նվաճած ժողովուրդներն ուզում են ազատվել տնտեսական կախվածությունից, իմպերիալիստների միջամտությունից, ուզում են իրենք վճռել իրենց բախտը:

Սովետական պետությունը մարդկության պատմության մեջ առաջինը սահմանեց նոր տիպի միջազգային հարաբերություններ, որոնք զուրկ են շահագիտական շարժառիթներից: Արտասահմանյան Արևելքի երկրների հետ մեր տնտեսական համագործակցության բնորոշ գիծը Սովետական Միության օգնությունն է ամենից առաջ ծանր արդյունաբերության ձեռնարկությունների կառուցման գործում:

Այդ օգնությունը, սոցիալիզմի հսկայական հաջողությունները ոգևորում են տնտեսապես հետամնաց երկրների ժողովուրդներին՝ պայքարելու իսկական անկախության համար պատմական կարճ ժամկետներում տնտեսական հետամնացությունը հաղթահարելու համար: Սոցիալիզմի հաջողությունները գաղութային սիստեմն իսպառ վերացնելու շարժիչ ուժերից գլխավորն է:

Սոցիալիստական կարգի առավելությունների շնորհիվ Սովետական Միությունը շատ կարճ ժամկետում տեխնիկապես ու տնտեսապես հետամնաց երկրից դարձավ հզոր, տնտեսապես և կուլտուրապես աշխարհի ամենազարգացած պետություններից մեկը: Դա չէր կարող հարաճուն տպավորություն չգործել գաղութային ժողովուրդների վրա: Այս վերջիններիս վրա անգնահատելի ազդեցություն թողեց նաև մեր երկրում ազգային հարցի լուծումը: Ցարական Ռուսաստանի նախկին ազգային ծայրամասերը, որոնք աչք չէին բացում ճնշումից ու շահագործումից, Սովետական Միության բոլոր ժողովուրդների եղբայրական օգնությամբ դարձան զարգացած առաջավոր ռեսպուբլիկաներ, շատ ցուցանիշներով գերազանցելով Եվրոպայի արդյունաբերապես զարգացած երկրներին:

Արևելքի թույլ զարգացած երկրները տեսնելով սովետական ժողովուրդների օրինակը, չեն ցանկանում համակերպվել այն պայմանների հետ, որոնք իրենց դատապարտում են լճացման, կարիքի ու հետամնացության:

Ամերիկյան տնտեսագետներ Մ. Մեյերի և Ռ. Բոլդվինի տվյալներով Ասիայի և Աֆրիկայի գյուղական բնակչության մեկ շնչին 10—20 անգամ պակաս գյուղատնտեսական արտադրանք է ընկնում, քան զարգացած կապիտալիստական երկրներում:

digitised by A.R.A.R.@

Տնտեսապես հետամնաց երկրների ժողովուրդները մինչև այժմ չեն կարող ելք գտնել սովից, կապիտալիզմի ու գաղութակալության այդ ամենասարսափելի հետևանքից։ Այդ երկրների հարյուր միլիոնավոր մարդիկ իմպերիալիզմի քաղաքականության հետևանքով դատապարտված են աղքատության և կարիքի։ Այնտեղ մեկ մարդու տարեկան եկամուտը տասն անգամ ավելի պակաս է, քան զարգացած կապիտալիստական երկրներում, սննդամթերքների օգտագործումը (կալորիաներով հաշված) համարյա 2 անգամ պակաս է, բնակչության գրագիտության տոկոսը ցածր է յոթ անգամ, բժիշկների թիվը՝ հավասար բնակչության հաշվով պակաս է 12 անգամ, կյանքի միջին տևողությունը՝ համարյա երկու անգամ կարճ։ Իսկ ամերիկյան իմպերիալիզմն իր տնտեսական քաղաքականությամբ ավելի է նպաստում երկու մակարդակների խիստ տարբերության պահպանմանը։ Հարավ-արևելյան Ասիայի, Մերձավոր և Միջին Արևելքի շատ պետություններ հրաժարվում են ԱՄՆ-ի հետ անիրավահավասար տնտեսական կապերից, քանի որ իրենց դառը փորձով ճաշակել են կապիտալիզմի բոլոր «բարիքները»։

Նրանք համագործակցություն են փնտրում ՍՍՌՄ-ի և ժողովրդական դեմոկրատիայի երկրների հետ, սովորում են նրանց ինդուստրացման փորձից։ Սովետական Միության օգնությամբ Հնդկաստանը, Միացյալ Արաբական ռեսպուբլիկան, Ինդոնեզիան և այլ պետություններ իրենց երկրներում արդյունաբերական ձեռնարկություններ են կառուցում, սոցիալիզմի երկրներից արդյունաբերական սարքավորումներ են գնում։ Սոցիալիստական պետության առևտրա-տնտեսական քաղաքականության սկզբունքներն ու պայմանները բոլորովին նոր շիթ են միջազգային տնտեսական կապերի մեջ։ ՍՍՌՄ-ի վարկերը, ի տարբերություն կապիտալիստական պետությունների վարկերի, տրվում են առանց որևէ քաղաքական կամ ռազմական պայմանների և նպաստում են Ասիայի և Աֆրիկայի նոր պետությունների սուվերենության ամրապնդմանը։ Այդ վարկերի տոկոսները, ամերիկյան վարկերի համեմատությամբ, արտոնյալ են։ Սովետական Միությունը վարկերը մարելու համար օտար վալյուտա չի պահանջում, այլ համաձայնում է, որ տվյալ երկիրը դրանք մարի իր արտադրանքով։

Եթե 1955 թ. սկզբին աֆրիկական-ասիական երկրներին սովետական անշահախնդիր տնտեսական և տեխնիկական օգնության ընդհանուր գումարը հազիվ մի քանի տասնյակ միլիոն ռուբլի էր կազմում, ապա ներկայումս նրանց տրվող երկարաժամկետ վարկերը հասնում են մի քանի միլիարդ ռուբլու։ ՍՍՌՄ-ի առևտրական շրջանառությունը կապիտալիստական աշխարհի թույլ զարգացած երկրների հետ 1957 թվականին ավելի քան հինգ անգամ գերազանցում էր 1953 թվականի մակարդակը։ Յոթնամյակի ընթացքում այդպիսի համագործակցությունը շատ ավելի մեծ չափերով կընդլայնվի։

Այս տեսակետից ՍՄԿՊ XXI համագումարի ամբիոնից շատ պատկերավոր հնչեցին ընկ. Կուուսինենի խոսքերն այն մասին, որ ի դեմս Սովետական Միության և սոցիալիստական երկրների Ասիայի և Աֆրիկայի երիտասարդ պետություններն ունեն ոչ միայն անշահախնդիր, այլև ուժեղ բարեկամներ։ Կար ժամանակ, ասաց ընկ. Կուուսինենը, որ լավ մտահղացումներ ունենալով հանդերձ, սոցիալիզմն ուղղակի ոչինչ չուներ բաժանելու։ Այժմ այդ ժամանակն անցել է։ Հարուստ դառնալով, մենք չժլատացանք, ինչպես հաճախ է պատահում։ Յոթ տարի հետո մենք ավելի հարուստ կդառնանք։ Իսկ դա նշանակում



է, որ միայն մենք չէ, որ լավ կապրենք, լավ կլինի և մեր բարեկամների համար։ «Սոցիալիզմի բախտը,— ասաց ընկ. Կուուսինենը,— ընդհանրապես սերտորեն կապված է իմպերիալիզմի կողմից շահագործվող բոլոր ժողովուրդների բախտի հետ և առաջին հերթին, այն ժողովուրդների բախտի հետ, որոնք հերոսական պայքար են մղում գաղութարարների դեմ»։

Արևելյան առածն ասում է. «Որքան ավելի ուժեղ է իմ եղբայրը, այնքան ավելի ուժեղ եմ ես»։ Ուրեմն, որքան ավելի հզոր լինեն Սովետական Միությունը, ամբողջ սոցիալիստական լագերը, այնքան ավելի լավ կլինի թույլ զարգացած և հետամնաց երկրների ժողովուրդների համար, այնքան ավելի շատ Բխիլաիի մետալուրգիական կոմբինատներ կկառուցվեն նրանց համար։

Հիրավի, յոթնամյակի կենսագործումը միջազգային տնտեսական համագործակցության ընդլայնման և դրանով իսկ տնտեսական համաշխարհային կապերի գաղութային ստրուկտուրայի վերացման հետագա հնարավորություններ է բացում։ Մարդկության մի զգալի մասի համար դա կնշանակի մասսայական աղքատության, տնտեսական հետամնացության ավելի արագ հաղթահարման հնարավորություն։ Յոթնամյակը խոշոր ավանդ կհանդիսանա ազատության, տնտեսական, սոցիալական և կուլտուրական պրոգրեսի համար գաղութային և թույլ զարգացած երկրների պայքարում։

Ճապոնական ճանաչված տնտեսագետ պրոֆեսոր Կաձուո Նոնոմուրան, մեկնաբանելով ՍՄԿՊ XXI համագումարի որոշումները, ասել է. «Յոթնամյա պլանի հաջող իրագործումը հսկայական իդեոլոգիական ազդեցություն կունենա Ասիայի և Աֆրիկայի երկրների վրա, չխոսելով արդեն այդ երկրներին սովետական օգնության ավելացման մասին։ Այդ պլանի հաջող կատարումը մասնավորապես բացառիկ ազդեցություն կունենա ճապոնական աշխատավորների գիտակցության վրա և նոր խթան կծառայի այդ երկրում բանվորական և սոցիալիստական շարժման վերելքի համար» («Պրավդա», 6, II 1959)։ Հնդկական «Սվադհինատա» թերթը գրել է, որ պլանի հաջող կատարումը օգուտ կբերի ո՛չ միայն սոցիալիստական աշխարհին, այլև Ասիայի երկրներին։

Այդ երկրների ժողովուրդները գիտեն, որ նրանք սոցիալիստական լագերի երկրներից միշտ կարող են բարեկամական և անշահախնդիր օգնություն ստանալ ո՛չ միայն նրանց քաղաքական ինքնուրույնությանը սպառնացող միջազգային իմպերիալիզմի դեմ մղվող պայքարում, այլև տնտեսական անկախության համար մղվող դժվարին ճակատամարտում։

Ամերիկյան և մյուս մոնոպոլիստներն ամենից շատ վախենում են հենց Արևելքի երկրների տնտեսական հետամնացությանն արագ և ռևոլյուցիոն ճանապարհով վերջ տալու ուղիներից։ Նրանք այդ երկրներին առաջարկում են էլի մի հարյուրամյակ սպասել, մինչև որ Արևմուտքի «օգնությամբ» այդ երկրները կկարողանան վայելել տնտեսական զարգացման պտուղները։ Բայց այդ երկրների ժողովուրդներն սպասել չեն ուզում։ ԱՄՆ-ի ինֆորմացիոն գործակալության դիրեկտոր Ջորջ Ալլենը ստիպված է ընդունել, որ տնտեսապես թույլ զարգացած երկրները «գտնում են, որ սովետական սիստեմը կարող է նրանց օգնել վերակառուցելու իրենց տնտեսական և սոցիալական ստրուկտուրան արդեն այս սերնդի կյանքի ընթացքում»։ «Նյու-Յորք Թայմս» թերթը խոստովանում է, որ յոթնամյա պլանը խոր տպավորություն է թողնում մյուս երկրների և, առաջին հերթին, Ասիայի և Աֆրիկայի երկրների վրա։ «Սովետական էկոնոմիկայի զարգացումը, որը դեռ վերջերս հետամնաց երկիր էր... մի ուշա-

digitised by A.R.A.R.@

գրավ երևույթ է, որն Ասիայի և Աֆրիկայի շատ երկրներում հիացմունք է առաջացնում»,— գրում է «Էկոնոմիստ» ժուռնալը։ Խոսելով «Սովետական տնտեսական մրցահրավերի» մասին, ԱՄՆ-ի պետական քարտուղարի տեղակալ Ռոբերտ Մերֆին հայտարարել է. «Մենք մի հարցի առաջ ենք կանգնած, թե այդ թույլ զարգացած երկրների ժողովուրդները ո՞ր տնտեսական սիստեմը կընտրեն. աղքատության և սովի դեմ մղվող պայքարում կգնան նրանք կոմունիզմի՞ ուղղությամբ, թե՞ մեր արևմտյան սիստեմի... Այս հարցի պատասխանից է կախված աշխարհի ապագան»։ Պակաս հատկանշական չէ նաև անգլիական պացիֆիստական «Պիս Նյուս» շաբաթաթերթի մեկնաբանությունը։ «Եթե սովետական նոր յոթնամյա պլանում թվարկված խնդիրները ինչ-որ չափով կատարվեն,—գրում է շաբաթաթերթը,—ապա Արևմուտքը ոչ միայն տանուլ կտա ասիացիների և աֆրիկացիների մտքի համար մղվող ճակատամարտը։ Նա կզրկվի նաև շուկաներից»։

Արդարև սովետական յոթնամյակի և սոցիալիզմի մյուս երկրների տնտեսական պլանների հաջող կատարումը, որը մեծապես կնպաստի թույլ զարգացած և կիսագաղութային երկրների արդյունաբերական զարգացմանը, արմատապես կփոխի անարդարացի միջազգային «աշխատանքի բաժանումը», որը կապիտալիստական մոնոպոլիաներին հնարավորություն էր տալիս գիշատիչ կերպով շահագործելու միլիոնավոր մարդկանց։ Ահա թե ինչու սոցիալիզմի լագերի մեջ ամբողջ երկրագնդի հասարակ ժողովուրդը տեսնում է խաղաղության, բոլոր երկրների ազատության և տնտեսական անկախության հուսալի երաշխիքը։ Ահա թե ինչու ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման յոթնամյա պլանը ջերմ արձագանք գտավ Ասիայի և Աֆրիկայի երկրներում։

Յոթնամյա պլանով նախատեսված մեծագործությունները, ՍՄԿՊ XXI համագումարի ամբիոնից հայտարարեց Խալեդ Բագդաշը, «Միացյալ Արաբական ռեսպուբլիկայի Սիրիական շրջանում, ինչպես նաև ամբողջ Արաբական Արևելքում խանդավառություն, բերկրանք և հպարտություն են առաջացնում իրենց մեծ ու հավատարիմ բարեկամի նվաճումների հանդեպ»։ Հետամնաց երկրների մի շարք գործիչներ վստահություն են հայտնում, որ ՍՍՌՄ-ի տնտեսական հետագա առաջադիմությունը նրանց կօգնի իրենց ազգային անկախության համար մղվող պայքարում։

Գաղութային, կախյալ և հետամնաց երկրների ժողովուրդները պարզ գիտակցում են, որ սովետական յոթնամյա պլանն է՛լ ավելի մեծ երաշխիք կհանդիսանա Ասիայի, Աֆրիկայի և երկրագնդի մյուս մասերի միլիոնավոր մարդկանց ազգային անկախության համար։ Նրանք գիտեն, որ իմպերիալիզմին կարող են դիմագրավել և իրենց ազգային ինքնուրույնությունը պաշտպանել շնորհիվ հզոր Սովետական Միության և սոցիալիստական ամբողջ լագերի գոյության, որը բազմիցս հակահարված է տվել իմպերիալիստների ավանտյուրիստական ոտնձգություններին և կոնկրետ օգնություն ցույց տվել նրանց։

Սովետական Միության նվաճումները ոգևորում են ամբողջ աշխարհի ժողովուրդներին։ Յոթնամյա պլանի կենսագործումը է՛լ ավելի կնպաստի Սովետական Միության և սոցիալիստական ամբողջ լագերի ուժերի ամրապնդմանը, խոր ազդեցություն կունենա միջազգային կոմունիստական և բանվորական շարժման վրա, կապիտալիստական աշխարհի բոլոր աշխատավորների վրա, որոնք մեր ժողովրդի երջանիկ կյանքի մեջ տեսնում են իրենց վաղվա օրը։

---

# ԿՅԱՆՔԻ ՊԱՀԱՆՋԸ

## Բ. ՄՆՀՐԱԲՅԱՆ

Մեր աչքի առջև, մեկ սերնդի կյանքի ընթացքում, աշխարհում այնպիսի փոփոխություններ են տեղի ունենում, որոնց իրագործման համար մարդկությունն անցել է իր զարգացման նախընթաց ամբողջ շրջանը, որը Մարքսը նախապատմություն է անվանել։ Խորտակվում են իր դարն ապրած հասարակարգի հիմքերը, քայքայվում են հին կայսրությունները, կործանվում են այնպիսի բաներ, որոնք դեռ մոտ անցյալում թվում էին հավիտենական։ Ոչնչանում է հասարակական անհավասարության սիստեմը։ Կործանվում է կապիտալիզմը։

Հասարակական հին հարաբերությունների փլատակների վրա բարձրանում է սոցիալիզմը, որը կերպարանափոխում է ժամանակակից աշխարհը։ Մարքսի վեհ իդեաներն այն մասին, որ աշխատանքն անխուսափելիորեն հաղթելու է կապիտալին և որ աշխատանքը մարդկանց և ժողովուրդների միջև ստեղծված հարաբերությունների միակ տիրակալն է դառնալու, վերափոխում են աշխարհը՝ միլիոնավոր մարդկանց արթնացնելով պատմական ստեղծագործության համար։

Ժողովուրդների և պետությունների կյանքում տեղի ունեցող խոր փոփոխություններն անխուսափելիորեն արտահայտվում են նրանց փոխհարաբերություններում։ Նախորդ շրջաններում տիրապետելու և ենթարկվելու սկզբունքներով կառուցված միջազգային հարաբերությունները փոփոխության են ենթարկվում։ Նրանց փոխարինում են հավասարության և համագործակցության հարաբերությունները, իրենց բովանդակությամբ նոր միջպետական հարաբերությունները, որոնք հաղթանակում են։ Բայց հաղթանակում են խորտակելով այնպիսի խոչընդոտներ, որոնց արմատները ձգվում են մինչև դարերի խորքը։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի հաղթանակով աշխարհը բաժանվեց երկու տարբեր սիստեմների՝ կապիտալիստականի և սոցիալիստականի, որոնք արդեն քառասունմեկ տարի է, ինչ գոյություն ունեն կողք-կողքի։ Բայց այսօր, ինչպես երբեք մինչ այդ, մարդկության ճակատագիրը կախված է նրանից, թե ինչպես կզարգանան տարբեր հասարակարգ ունեցող երկրների հարաբերություններն իրար հետ։ Այդ կախումը նախ և առաջ պայմանավորվում է նրանց միջազգային քաղաքականության բովանդակությամբ, որը զարգանում է պատերազմի և խաղաղության հակադիր ուղղություններով։ Պատերազմի և խաղաղ գոյակցության պրոբլեմը՝ ուղղակի կամ միջնորդավորված ձևով շոշափելով բոլոր սոցիալական խմբերի, հասարակական ուժերի և պետությունների շահերը, իր վրա է գամում ամբողջ մարդկության ուշադրությունը։ Ավելին. նա վեր է ածվում չափանիշի, թե որքանով տարբեր դասակարգերը, քաղաքական պարտիաները, նրանց լիդերներն ու իդեոլոգները կողմնակից են մարդկության առաջ-

digitised by A.R.A.R.@

ընթաց շարժմանը, հասարակական առաջադիմությանը, քանի որ արդի պայմաններում խաղաղ գոյակցության ապահովման գործը համընկնում է հասարակության վերընթաց շարժման պահանջմունքների հետ։

Իսկ կա՞ն արդյոք ռեալ պայմաններ պատերազմը կանխելու համար։ Արդյո՞ք ռեա՞լ է հենց ինքը՝ պատերազմի կանխման համար մղվող մարտը։ Միգուցե դա «ազատ աշխարհի» դեմ մղվող «իդեոլոգիական պայքարի ձև է» միայն, ինչպես այդ պնդում է իմպերիալիզմի քաղաքական իդեոլոգիան։ Միգուցե ներկայիս հակամիլիտարիստական պայքարը նույնպես պարտության է դատապարտված, ինչպես և նախընթաց բազմադարյան պայքարը։ Ամենևին էլ ոչ. մի կողմից՝ կապիտալիզմի և, մյուս կողմից՝ սոցիալիզմի տնտեսական և քաղաքական զարգացման օրինաչափությունների գիտական վերլուծությունը բերում է այն եզրակացության, որ գոյություն ունի պատերազմը կանխելու ռեալ հնարավորություն։ Նրա օբյեկտիվ հիմքը կապիտալիստական սիստեմի քայքայման և վերընթաց սոցիալիստական սիստեմի ամրապնդման անհաղթահարելի պրոցեսն է, կամ պատերազմում և նրան լծորդված սպառազինությունների մրցավազքում շահագրգռված մոնոպոլիստական վերնախավերի հիմքերի սասանումը ու կայուն խաղաղության ձգտող հզոր ուժերի աճը։ Ըստ որում, օբյեկտիվորեն զարգացող այդ պրոցեսը և կառավարող մոնոպոլիստական շրջանների սուբյեկտիվ գործունեությունը չեն կարող վերացնել ո՛չ կապիտալիզմի արատները, նրա ներքին հակասությունները, ոչ էլ խափանել սոցիալիզմի զարգացումը։ Այդ է վկայում կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի մշտական խորացումը և սոցիալիզմի հզոր աճը, նրա վերածվելը վերընթաց գծով զարգացող համաշխարհային սիստեմի։

Այդ պրոցեսի արտահայտությունն է կապիտալիստական սիստեմի տեսակարար կշռի մշտական նվազումը և սոցիալիստական սիստեմի ընդարձակումը համաշխարհային արդյունաբերական արտադրության մեջ։ Արդեն այս տարի՝ 1959 թվականին, համաշխարհային սոցիալիստական սիստեմի ինդուստրիալ հզորությունը կհավասարվի ԱՄՆ-ի հզորությանը, իսկ 1965 թվականին կգերազանցի ամբողջ կապիտալիստական աշխարհի արդյունաբերական պոտենցիալը։ Սոցիալիզմի ինդուստրիալ և գիտա-տեխնիկական բարգավաճման համոզիչ արտահայտությունն են նրա նվաճումները միջուկային և հրթիռային գործում, ինչպես և շատ ուրիշ բնագավառներում, որոնք ապահովում են համաշխարհային սոցիալիստական սիստեմի երկրների ո՛չ միայն ընդհանուր արդյունաբերական առաջադիմությունը, այլև նրանց հուսալի պաշտպանունակությունը։

Պատահական չէ, որ նույնիսկ Ամերիկայի հետազոտական ինստիտուտի զեկուցման մեջ, որի կազմելու աշխատանքներին մասնակցել են վեց հարյուր էքսպերտները, ընդունվում է, որ «քաղաքական, տնտեսական, ռազմական և իդեոլոգիական ճակատներում» Արևմուտքը պարտություն է կրում: «Արևմուտքը կորցրել է իր նախկին ռազմական գերազանցությունը,— արձանագրում են զեկուցում կազմողները։—Վերջին տասնամյակի ընթացքում Սովետական Միությունը ո՛չ միայն կարողացավ հավասարվել, այլև հավանական է, որ գերազանցեց ռազմական տեխնիկայի բնագավառում։ Նրա տիեզերական հրթիռամոլորակը այժմ պտտվում է արևի շուրջը և ամբողջ աշխարհի համար հանդիսանում է ամենահամոզիչ ապացույցը տիեզերքի նվաճման գործում նրա գերազանցության մասին»։ Հեղինակների ասելով սոցիալիստական լագերի տն-



տեսական հաջողությունները մի տեսակ «քաղաքական մագնիս» են, որոնք դեպի իրենց են ձգում տնտեսապես թույլ զարգացած բոլոր երկրների ժողովուրդների հայացքներն ու համակրանքը։

Նման ոգով է ելույթ ունեցել նաև ամերիկյան սենատոր Ուայլին։ Նա հայտարարել է, որ «վերջին տարիները Սովետները արագ թռիչքներ են կատարել զենքի, հրթիռների, երկրագնդի արհեստական արբանյակների արտադրության մեջ, ատոմային էներգիայի, տեխնիկայի, գյուղատնտեսության և այլ բնագավառներում։ Մենք կարող ենք սպասել, որ ապագայում նրանք մեզ գործնականում մարտահրավեր ներկայացնեն մեր ջանքերի բոլոր բնագավառներում»։

Պատերազմի և խաղաղության ուժերի հարաբերակցության մեջ տեղի ունեցող փոփոխությունները, վերջին հաշվով, որոշիչ դեր են կատարում պատերազմը կանխելու համար։ Քանի որ ուժի վրա կառուցված քաղաքականությանն իրոք կարող է հակադրվել միայն այնպիսի քաղաքականություն, որը հիմնված է տնտեսական ու ռազմական հզորության վրա և ի վիճակի է կանխելու, խորտակելու ամեն մի ագրեսիա։

Աշխարհի դեմքը փոխող սոցիալ-տնտեսական և հասարակական-քաղաքական պրոցեսները ստիպողաբար անհրաժեշտ են դարձնում վերանայել դարերով գերիշխող պատկերացումները միջազգային հարաբերությունների մասին։ Սոցիալիզմի անպարտելիությունը բուրժուազիային ստիպում է ունենալ ռեալ մոտեցում իրականությանը, հրաժարվել հին պատկերացումներից, որոնք արդի պայմաններում վեր են ածվել լոկ պատրանքների։ Իսկ իրականության պատրանքային պատկերացումը ծնում է պարտության դատապարտված ոչ ռեալիստական քաղաքականություն։ Հետևապես, միջազգային քաղաքականության կոնկրետ հարցերի լուծման ժամանակ ամեն մի պետության արտաքին-քաղաքական գործունեության կարևորագույն խնդիրը այժմ առկա ուժերի հարաբերակցության ռեալիստական հաշվառումն է։ Այդ առավել ևս կարևոր է ներկա պայմաններում, երբ ուժերի և պրոցեսների՝ իրականությունից կտրված գնահատականը կարող է խիստ ծանր հետևանքներ ունենալ խաղաղության գործի համար։

Վերջին ժամանակներս միջազգային հարաբերություններում ստեղծված որոշ լարվածությունը, որը Բեռլինի հարցի շուրջը Սովետական առաջարկներին արևմտյան տերությունների ոչ բանական վերաբերմունքի հետևանք է, նորից պայքարի առաջին գիծն է քաշում գերմանական պրոբլեմը։ Ասենք, այդ անխուսափելի է։ Քանի որ Արևմտյան Գերմանիային է տրվում Հյուսիս-Ատլանտյան ագրեսիվ բլոկի հիմնական հարվածային ուժի դերը, ապա նա վեր է ածվում այդ կազմակերպության գլխավոր ատոմային և հրթիռային բազայի։ Արևմտյան Գերմանիայում միլիտարիզմն ու ռևանշիզմն արդեն բարձրացրել են իրենց գլուխները և սպառնում են խաղաղասեր ժողովուրդներին։ Նրանք ցինիկորեն հանդես են գալիս որպես «սառը պատերազմի» ակտիվ տրուբադուրներ, պաշտպանում և զարգացնում են «ուժի դիրքերից» ելնող քաղաքականությունը, մերժում են համաշխարհային լարվածությունը մեղմացնելու ամենակենսական պահանջը։ Ստեղծվում է այնպիսի մի դրություն, երբ գերմանական միլիտարիզմը կարող է մարդկությանը երրորդ անգամ ներգրավել համաշխարհային պատերազմի մեջ։

Այս պայմաններում սովետական առաջարկները Բեռլինի հարցի և Գերմանիայի հետ հաշտության պայմանագիր կնքելու մասին, արտահայտում են

digitised by A.R.A.R.@

ՍՍՌՄ-ի նոր հոգատարությունը եվրոպական և միջազգային անվտանգության ճակատագրի նկատմամբ, ինչպես նաև սոցիալիզմի երկրի պատրաստակամությունը՝ գործնական միջոցառումներով նպաստելու գերմանական պրոբլեմի լուծմանը և միջազգային լարվածության մեղմացմանը։

Բեռլինի հարցի վերաբերյալ սովետական առաջարկները հանգում են մի բանի, այն է՝ վերացնել օկուպացիոն ռեժիմը Բեռլինում և Արևմտյան Բեռլինը վերածել ապառազմականացված ազատ քաղաքի։ Եվ հենց դա է, որ չի համընկնում արևմտյան տերությունների կառավարող շրջանների շահերին։ 1958 թվականի նոյեմբերի 27-ին Բեռլինի հարցի վերաբերյալ Սովետական կառավարության արած կոնկրետ առաջարկներին նրանց առաջին արձագանքը ցույց տվեց, որ ԱՄՆ-ի, Անգլիայի, Ֆրանսիայի և Բոննի կառավարությունները առաջվա նման մտադիր են ընթանալու ավանտյուրաների և միջազգային կոնֆլիկտների հրահրման ճանապարհով։

Ամեն մի ուղղամիտ մարդ կարող է առանց որևէ դժվարության տեսնել այն անվիճելի ճշմարտությունը, որ Բեռլինի հարցի մասին սովետական առաջարկները ոչ ոքի, ոչ մի ժողովրդի վնաս չեն տալիս, ոչ ոքի էլ միակողմանի օգուտ չեն բերում։ Եվ իրոք, ի՞նչ անընդունելի բան կա սովետական առաջարկներում, որոնց իրագործման հետևանքով Արևմտյան Բեռլինը կդառնար ազատ քաղաք՝ իր կոնստիտուցիայով, որը կապահովեր նրա բնակիչների համար մարդու հիմնական իրավունքները և հիմնական ազատությունները, իր ազատ ընտրված պառլամենտով և կառավարությունով։ Սովետական առաջարկություններում ոչ մի պարտավորություն չի դրվում Արևմտյան Բեռլինի և նրա բնակիչների վրա, բացի այն հիմնականից, որ թույլ չտրվի որևէ պետության դեմ ուղղված քայքայիչ գործունեություն և պրոպագանդա։ Արևմտյան Բեռլինը կապառազմականացվեր և իր տերիտորիայում չէր ունենա օտարերկրյա զինված ուժեր։ Ոչ մի պետություն չէր կարողանա միջամտել ազատ քաղաքի տընտեսական և քաղաքական կյանքին։ Տնտեսական տեսակետից նա իրենից կներկայացներ մի միասնական ամբողջություն։ Իսկ Արևելքի և Արևմուտքի պետությունների հետ փոխադարձաբար շահավետ բազմակողմանի կապերի զարգացումը կապահովեր Արևմտյան Բեռլինի տնտեսության կայունությունն ու վերելքը։ Ավելին, ՍՍՌՄ-ն իր պատրաստակամությունը հայտնեց ապահովել ազատ քաղաքի ձեռնարկությունները ո՛չ միայն պատվերներով, այլև հումքով։ Վերջապես, սովետական առաջարկներով երաշխիքներ էին նախատեսվում չորս տերությունների և Միավորված Ազգերի Կազմակերպության կողմից։ Կարծես թե ամեն ինչ պարզ է։

Բայց այդպես չեղավ։ Սովետական առաջարկները միանգամից շփոթվածություն ստեղծեցին արևմտյան երեք տերությունների և արևմտա-գերմանական կառավարող շրջաններում։ Իսկ երբ նրանք սթափվեցին առաջին նյարդայնացումից, զրպարտության բուռն, մինչև օրս չթուլացող կամպանիա ծավալեցին Սովետական Միության դեմ՝ ապակողմնորոշելով միջազգային հասարակական կարծիքը։ Առանձին տենդայնությամբ են գործում ԱՄՆ-ի և Արևմըտյան Գերմանիայի կառավարող շրջանները։ Եվ դա բնական է։ Նրանք բոլորովին էլ չեն ուզում լուծել Բեռլինի հարցը։ Բեռլինը նրանց համար մի սեպ է, որն ուղղված է ԳԴՌ-ում կատարվող սոցիալիստական շինարարության դեմ, «սառը պատերազմի» ռազմաճակատային մի քաղաք է», նա «ամենաէժան ատոմային ռումբ է». ինչպես այդ հայտարարել է արևմտա-գերմանական սոցիալ-դեմոկրատ Էռնստ Ռեյտերը։



Արևմտյան տերությունները չեն ուզում զրկվել «Գերմանիայի սրտում» ոչ «պողպատյա սաղավարտ»-ի տիպի 74 միլիտարիստական միավորումներից, ոչ «ռազմաճակատային քաղաքի» 28 հազար վարչական ծառայողներից, որոնք կան ֆաշիստական պետական ապարատի աշխատակիցների ցուցակներում, ոչ էլ ոստիկանական պաշտոնյաներից, որոնք ֆաշիզմի տիրապետության շրջանում ակտիվ նացիստներ և գեստապոյականներ էին։

Ծանր հետևանքներով հղի միլիտարիզմի ուղիով Արևմտյան Գերմանիայի զարգացումը և միջազգային լարվածության սրումը ավելի հրատապ դարձրին գերմանական հարցի կարդինալ լուծման անհրաժեշտությունը։ Այս նպատակով Սովետական կառավարությունը 1959 թվականի հունվարի 10-ին դիմեց արևմտյան տերություններին, առաջարկելով, որպեսզի հիտլերյան Գերմանիայի դեմ պատերազմած բոլոր պետությունները, ինչպես նաև ԳԴՌ-ի և ԳՖՌ-ի ներկայացուցիչները քննարկեն Գերմանիայի հետ հաշտության պայմանագիր մշակելու և ստորագրելու հարցը։

Հաշտության պայմանագրի սովետական նախագիծն իր մեջ զուգորդում է գերմանական ժողովրդի իրավունքների, նրա խաղաղ դեմոկրատական զարգացման ապահովումը Եվրոպայում խաղաղության և ժողովուրդների անվտանգության պահպանման անհրաժեշտ միջոցառումների հետ։ Գերմանիայի հետ պայմանագրի կնքումը կայուն իրավական կարգ կստեղծեր, կվերացներ Արևմտյան Գերմանիայում եղած ռևանշիստական տրամադրությունների հնարավորությունը, կազատեր գերմանական ժողովրդին օտարազգի օկուպացիայից և թույլ կտար, որ նա ինքը լուծի իր ներքին և արտաքին քաղաքականության բոլոր հարցերը։ Հաշտության պայմանագրի կնքումը միանգամից կթուլացներ իրադրության լարվածությունը Եվրոպայում։

Սակայն արևմտյան տերությունների կառավարությունները համաձայնություն չտվին սովետական առաջարկներին։ Նրանք արտահայտվեցին հօգուտ «գերմանական պրոբլեմի» քննարկման «իր ամբողջ ասպեկտով», այսինքն՝ այնպես և այն նպատակով, որ հակառակ Սովետական Միության վերացնեն ԳԴՌ-ում գերմանացիների սոցիալ-տնտեսական խոշոր նվաճումները։ Այդ նշանակում է, որ արևմտյան տերությունները ձգտում են ստանալ ՍՍՌՄ-ի օժանդակությունը՝ բռնի կերպով փոխելու այն հասարակարգը, որն ընտրել է ինքը՝ գերմանական ժողովուրդը ԳԴՌ-ում։ Բայց դա անհեթեթություն է։ Նախ՝ սովետական ժողովուրդը երբեք չի միջամտել այլ երկրների ներքին գործերին և մտադիր չէ երբևէ միջամտելու, երկրորդ՝ սոցիալիստական սովետական պետությունը ոչ թե քաղաքական խաղ է վարում ԳԴՌ-ի նկատմամբ, այլ հանդես է գալիս որպես ԳԴՌ-ում գերմանացիների կողմից իրագործվող սոցիալիստական վերափոխությունների հետևողական և ամենահուսալի կողմնակիցը։ Սոցիալիստական պետությունը, նրա միջազգային քաղաքականությունը խորթ են մի որևէ պետության հետ ի հաշիվ այլ պետությունների անդրկուլիսյան գործարքներ կատարելը։ Այդ է, որ չեն կարող հասկանալ իմպերիալիստական շրջանները։

Սովետական Միությունը բազմիցս նշել է, որ գերմանացիների փոխարեն ինքը չի զբաղվի Գերմանիայի վերամիավորման հարցով, մինչդեռ այդ կնշանակեր խախտել գերմանական երկու պետությունների սուվերեն իրա-

digitised by A.R.A.R.@

վունքները, միջամտել գերմանական ժողովրդի ներքին գործերին։ Հանդես գալով գերմանական ժողովրդի ներքին գործերին միջամտելու դեմ, Սովետական կառավարությունն իր հետևողական պատրաստակամությունը ցուցադրեց նաև կատարելու Պոտսդամի համաձայնություններից բխող իր հիմնական պարտավորությունները՝ չթույլատրել միլիտարիզմի վերականգնումը Գերմանիայում և ապահովել երկրի զարգացումը խաղաղության, դեմոկրատիայի և առաջադիմության ուղիներով։

Բայց ՍՍՌՄ-ի արտաքին քաղաքականության այս հիմնական ուղղությունը հակասում է արևմտյան տերությունների շահերին և ծրագրերին։ Նրանք ամեն ինչ անում են, որպեսզի տապալեն համաձայնեցրած որոշումների ընդունումը գերմանական պրոբլեմի, եվրոպական ու միջազգային անվտանգության ապահովման հարցերի վերաբերյալ։ ՍՍՌՄ-ի խաղաղասիրական նոր ջանքերին աղավաղված մեկնաբանություն տալով, նրանք փորձում են ռազմական հիստերիա բորբոքել, ձգտելով կանխել միջազգային լարվածության մեղմացումը։ Իսկ միջազգային հարաբերություններում լարվածության պահպանումը դա նրանց համար ռազմական պատվերների նոր հնարավորություններ է ստեղծում, շահույթի նոր միլիարդներ է բերում ի հաշիվ ժողովուրդների շահերի։

Բայց ժողովուրդների ճակատագիրը, նրանց մտքերը, նրանց հույսերն ու ակնկալությունները իմպերիալիստական տերությունների կառավարող շրջանների հոգատարության առարկան չեն կարող լինել։ Նրանք միայն մեկ աստված, մեկ հոգս ունեն, դա կանխիկ դրամն է։ Ահա այդ «դեղին սատանային» է ենթարկում մոնոպոլիստական կապիտալը իր գործունեությունը։ Կապիտալը հանուն նրա, ինչպես Մարքսն է ասել, «ոտնահարում է մարդկային բոլոր օրենքները» և պատրաստ է դիմելու ամեն տեսակ ոճրագործությունների, նույնիսկ «կախաղանի սպառնալիքի ներքո»։ Ներկայումս արևմտա-գերմանական և միջազգային կապիտալիզմի համար այդպիսի կախաղանը նրանց կողմից նախապատրաստվող պատերազմն է։

Արևմտյան Բեռլինը, «բլոկադայի մեջ ընկնելու» դեպքում, ապահովելու պատրվակի տակ այժմ սպառազինություն է կուտակվում, տենդորեն ծավալվում է բնակչության հոգեբանական մշակումը «սառը պատերազմի ոգով», բազմաթիվ նախագծեր են առաջարկվում, որոնցով պահանջվում է նոր հատկացումներ կատարել ռազմական կարիքների համար, ընդարձակել միլիտարիստական կազմակերպությունները, բորբոքել ռազմական կրքերը։ Մեծ աշխատանք են ծավալել ԱՄՆ-ի և Արևմտյան Գերմանիայի ռազմական շրջանները, ռևանշիստորեն տրամադրված ֆաշիստական գեներալները, որոնք ֆինանսական կապիտալի տերերի հոգատար ձեռքով տեղավորվել են ԳՖՌ-ի և ՆԱՏՕ-ի բանակների ղեկավար պաշտոններում։

Իսկ անցյալում ջախջախված այդպիսի գեներալների թիվը բավական մեծ է։ Ինչպես նշված է «Հիտլերյան գլխավոր շտաբը հրամանատարություն է անում Ադենաուերի բանակում» փաստաթղթի մեջ, ներկայումս բունդեսվերի հրամանատարներից ավելի քան 100 գեներալներ և ծովակալներ նախկին հիտլերյան սպաներ են, որոնք բարձր և բարձրագույն աստիճաններ են ունեցել։ Արևմտագերմանական ավելի քան 70 գեներալներ հիտլերյան վերմախտի գերագույն հրամանատարության ղեկավար աշխատողներ կամ գլխավոր շտաբի սպաներ են։ Ընդ որում արևմտա-գերմանական գեներալներից և ոչ



մեկը չի փոխել իր մտածելակերպը ու չի հրաժարվել իր անցյալից։ Բայց նրանք բոլորն էլ այսօր գործում են։ Ասենք հենց ինքը՝ Շտրաուսը միտինգներից մեկում հռետորական էքստազի մեջ ընկնելով սպառնաց, որ «կջնջի աշխարհագրական քարտեզից Սովետական Միությունը»։ Ինչպես թերթերն են հաղորդել, սրամիտ ունկնդիրները մի աշակերտական ռետին են ուղարկել Բոննի պաշտպանության մինիստրին։ Պակաս ճարպկությամբ չեն հանդես գալիս նաև ամերիկյան գեներալները, որոնք ի դեպ ասած, բարձր դիրքեր են գրավում ԱՄՆ-ի բանակում։ Հայտնի է, որ ամերիկյան բանակի շտաբի պետ գեներալ Թեյլորը հանդես է եկել մասնակի զորահավաք հայտարարելու պահանջով։ Ամերիկյան այլ զինվորականներ Դալեսի պլանի համաձայն «զրահատանկային պարեկի» վարքագծի տակտիկա են մշակում, որը, ինչպես նրանք ենթադրում են, անհրաժեշտ կլինի «դեպի Բեռլին ճեղքում կատարելու համար»։

Բայց կոմունիստ ղեկավարները թույլ ջղերի տեր մարդիկ չեն, իսկ համաշխարհային սոցիալիստական սիստեմի մարդկանց չի կարելի վախեցնել ռազմատենչ աղմկարարությամբ։ Նրանք մշտապես պատրաստ են արժանի հակահարված տալու ամեն մի ագրեսիայի։ Այդ է նշել Ն. Ս. Խրուշչովը սույն թվականի փետրվարի 24-ին իր ելույթում ընտրողների առաջ, զգուշացնելով Արևմուտքի չափից դուրս տաքարյուն գլուխներին քաղաքական ավանտյուրաներից։

Մանրամասն կանգ առնելով գերմանական պրոբլեմի վրա՝ Ն. Ս. Խրուշչովն ընդգծեց, որ արևմտյան տերությունների առաջարկությունները ներկայիս միջազգային քաղաքականության կարևորագույն պրոբլեմի նկատմամբ հիմնական մի թերություն ունեն։ Նրանք չեն ելնում ռեալ փաստերի հաշվառումից, նրանք տարակարծիք են այդ փաստերի հետ։ Ավելին, նրանք հակասում են փաստերին։ Արևմտյան տերությունների առաջարկություններն ավելի շուտ արտացոլում են ցանկալին, քան իրականը, և դրանում է նրանց սնանկությունը։

Արևմտյան տերությունների առաջադրած բոլոր հարցերը կառուցված են քաղաքական պատրանքների խախուտ հողի վրա։ Ասենք ռեա՞լ է արդյոք Արևմուտքի կոչը միջամտել գերմանական ժողովրդի ներքին գործերին՝ նպատակ ունենալով «լճռելու» Գերմանիայի վերամիավորման հարցը, մի հարց, որը գերմանական ժողովրդի ազգային խնդիրն է, կամ ռեա՞լ է արդյոք այսօր, երբ Գերմանիայի տերիտորիայի վրա գոյություն ունեն երկու պետություններ, տարբեր սոցիալական կառուցվածքով, արհամարհել այդ փաստը, որը հսկայական պատմական նշանակություն ունի գերմանական ժողովրդի, ինչպես և Եվրոպայի բոլոր ժողովուրդների ճակատագրի համար։ Եվ կամ, վերջապես, թող թույլ տրվի մեզ հարցնել, ինչի՞ վրա են կառուցում իրենց հաշիվները մարդիկ, որ նիզակներ են ճոճում և սպառնում են «ուժով մտնել Բեռլին», երբ հաշտության պայմանագիր կնքվի երկու կամ մեկ գերմանական պետության հետ։ «Այն դրությունը, որ ստեղծվել է պատերազմից հետո,— ասում է Ն. Ս. Խրուշչովը,— չի կարելի առանց բռնություն կիրառելու փոխել միակողմանի գործողություններով, իսկ պետությունների միջև եղած հարաբերություններում բռնություն գործադրելը—դա պատերազմ է։ Մենք պատերազմ չենք ուզում և կողմնակից ենք նախորդ պատերազմի հետևանքների արագ վերացմանը։ Մենք ուզում ենք, որ արևմտյան տերությունները ևս հրա-

digitised by A.R.A.R.@

ժարվեն իրենց մտադրություններից՝ որևէ հարց պատերազմի միջոցով լուծելու։ Ներկա պայմաններում սպառնալիքների և ուլտիմատումների մեթոդը, և մանավանդ ՍՍՌՄ-ի նկատմամբ, պարզապես անպետք միջոց է, քանի որ նա չի համապատասխանում ուժերի ռեալ հարաբերակցությանը։ Պատերազմները և ուլտիմատումները պետք է ընդմիշտ բացառել միջազգային հարաբերությունների պրակտիկայից և հանձնել պատմության արխիվը»։

Կյանքը Արևմտյան տերություններից պահանջում է կոնստրուկտիվ քայլերի դիմել գերմանական հարցի և միջազգային քաղաքականության այլ հարցերի շուրջը սովետական առաջարկների վերաբերյալ, ելնելով միջազգային համագործակցության և ընդհանուր խաղաղության ապահովման շահերից։ Մենք կողմնակից ենք համագործակցելու բուրժուական երկրների հետ՝ ելնելով խաղաղության շահերից։ Մենք համագործակցության կողմնակից ենք, բայց դեմ ենք ժողովուրդների սուվերեն իրավունքների խախտմանը։ Մենք համագործակցության կողմնակից ենք միայն փոխադարձ հիմքի վրա, միայն կողմերի հավասարության փոխադարձ ճանաչման հիմքի վրա, մենք կողմնակից ենք համագործակցության միջազգային քաղաքականության վիճելի հարցերը բանակցությունների և փոխադարձ զիջումների միջոցով կարգավորելու։

Միջազգային համագործակցություն՝ այն պայմանով, որ ճանաչվի կողմերի և նրանց շահերի հավասարությունը միջազգային քաղաքականության որևէ հարցի լուծման ժամանակ. այդպիսին է արդի միջազգային հարաբերությունների զարգացման միակ ռեալ ուղին, որը կարող է ապահովել կայուն և տևական խաղաղություն բոլոր ժողովուրդների միջև։ Հենց այդ ուղղությամբ է ծավալում իր ջանքերը Սովետական պետությունը գերմանական պրոբլեմի, զինաթափումների, միջուկային զենքի արգելման պրոբլեմների լուծման ժամանակ, եվրոպական անվտանգության և Հեռավոր Արևելքում ու Խաղաղ օվկիանոսում «խաղաղության գոտի» ստեղծելու հարցերում։

Այդ են վկայում ՍՍՌՄ-ի և ԱՄՆ-ի, ՍՍՌՄ-ի և Անգլիայի ու կապիտալիստական աշխարհի այլ երկրների միջև եղած հարաբերությունների բարելավման նպատակին ուղղված սովետական ջանքերը։ Ընկեր Ա. Ի. Միկոյանի ուղևորությունը Միացյալ Նահանգներ և այն սիրալիր ընդունելությունը, որ ցույց տրվեց Սովետական Միությունում Անգլիայի պրեմիեր մինիստր Մակմիլանին, չէին կարող անհետ անցնել, չէին կարող առաջ չբերել ԱՄՆ-ի և Անգլիայի ժողովուրդների համակրանքի զգացմունքների մի նոր հորդում դեպի ՍՍՌՄ-ի ժողովուրդները, որոնց հետ ուս ուսի տված՝ մոտ անցյալում նրանք ֆաշիստներից պաշտպանել են իրենց ազատությունն ու անկախությունը, իրենց զավակների երջանկությունը, խաղաղ կյանքի նրանց իրավունքները։

Կյանքը պահանջում է ռեալ մոտեցում ունենալ միջազգային քաղաքականության կենսական պրոբլեմներին։ Քանի որ միայն այդպիսի մոտեցումը կարող է լինել ընդունելի մեթոդ բոլոր երկրների համագործակցությունն ապահովելու համար։ Կյանքի պահանջները հարթում են իրենց ճանապարհը՝ խորտակելով «սառը պատերազմի» ապարդյուն քաղաքականությունը։

# ԿԱՊԻՏԱԼԻՍՏԱԿԱՆ ԵՐԿՐՆԵՐԻ ԷԿՈՆՈՄԻԿԱՆ 1958 ԹՎԱԿԱՆԻՆ*

Ա. ՄԱՆՈՒԿՅԱՆ

ՍՄԿՊ XXI համագումարին ընկ. Ն. Ս. Խրուշչովի զեկուցման թեզիսներում ընդգծվում է, որ «կապիտալիզմի երկրներում եղած անկումն ու քայքայումը հանդիսանում են կապիտալիստական կարգի ռեակցիոն էության դատապարտվածության, կապիտալիզմը «բարելավելու» և գունազարդելու, նրա աղաղակող խոցերն ու անտագոնիստական հակասությունները կոծկելու ռեֆորմիստական և ռևիզիոնիստական փորձերի ապարդյունության անվիճելի ապացույցը»։

Կապիտալիստական էկոնոմիկայի ժամանակակից զարգացումը նոր ուժով հաստատում է այն փաստը, որ կապիտալիզմն անկարող է ազատվելու արտադրության անարխիայից, ճգնաժամերից, գործազրկությունից, որոնք անհամար աղետներ են բերում ժողովրդական զանգվածներին։

Բուրժուական էկոնոմիստները, օգտագործելով կապիտալիստական էկոնոմիկայում տեղի ունեցող բարդ պրոցեսները, առանձին երկրների տնտեսական վիճակի տարբերությունը, փորձում են հերքել այն դրույթը, ըստ որի կապիտալիզմը թևակոխել է տնտեսական ցնցումների և ճգնաժամերի լուրջ հրջան։ Սակայն այդ փորձերը կրախի են մատնվում։

Կապիտալիստական համաշխարհային տնտեսությունը երբեք չի բնորոշվել իր բոլոր օղակների բացարձակ միօրինակությամբ։ Առանձին երկրների և առանձին բնագավառների ցիկլի ցանկացած փուլում երբեմն որոշ չափով գերազանց, երբեմն ընդհանուր շարժման հակադիր ուղղությամբ դրսևորվում է տնտեսության զարգացման դինամիկան։ Որպես օրինակ կարելի է հիմնվել Ֆրանսիայի վրա, որը 1930 թվականից շարունակեց ավելացնել իր արտադրությունը, երբ կապիտալիստական աշխարհի մյուս բոլոր երկրներում նշմարվում էր ճգնաժամ, կամ ԱՄՆ-ի տեքստիլ արդյունաբերությունը, որը 1931 թվականին նկատելիորեն ավելացրեց իր արտադրանքն այն ժամանակ, երբ այլ բնագավառների արտադրությունը շարունակում էր ահագնաթափ ընկնել։

Պայմանների հսկայական տարբերությունը, որոնցում գտնվում էին կապիտալիստական երկրները համաշխարհային երկրորդ պատերազմի ժամանակաշրջանում և նրա ավարտումից հետո, հանգեցրեց այնպիսի տնտեսական հետևանքների, որոնք շոշափելի ազդեցություն ունեցան վերարտադրության ցիկլային ընթացքի վրա, պայմանավորելով նրա էական տարբերությունն առանձին երկրներում։

Պատերազմից հետո կապիտալիստական բոլոր երկրներում զգալիորեն

* Որոշ համառոտումներով արտատպվում է „Мировая экономика и международные отношения“ ամսագրի 1959 թվականի № 1-ից։



digitised by A.R.A.R.@

աճած ժամանակավոր և արհեստական գործոնների ներգործությունն առանձին երկրների էկոնոմիկայի և առանձին բնագավառների վրա զգացվում է տարբեր ժամանակներում և տարբեր ձևով։ Միօրինակության լրիվ բացակայության հետևանքով, որը գոյություն է ունեցել միշտ, հատկապես ակնառու է դառնում կապիտալիստական երկրների հետպատերազմյան էկոնոմիկան ուսումնասիրելիս, որը, համենայն դեպս, բոլորովին չի նշանակում համաշխարհային կապիտալիստական տնտեսության վերարտադրության համար ընդհանուր ընթացքի լիկվիդացիա։ Սակայն դրանից հետևում է, որ ցիկլի փուլերի մասին եղած հիմնավոր եզրակացությունների համար անհրաժեշտ է վերցնել բոլոր պրոցեսների գումարը, հետազոտել համաշխարհային կապիտալիստական էկոնոմիկան իբրև մի ամբողջություն։

1954 թվականի աշնանից մինչև 1957 թվականի վերջն ընկած ժամանակաշրջանը համաշխարհային կապիտալիստական էկոնոմիկայի վերելքի փուլն էր, չնայած նրան, որ արդյունաբերական արտադրությունը (այսինքն՝ կոնյունկտուրայի կարևորագույն ցուցանիշը) ԱՄՆ-ում և Անգլիայում ժամանակ առ ժամանակ չէր բարձրանում, այլ դոփում էր տեղում կամ նույնիսկ ընկնում էր։ Այդ շրջանը վերելքի փուլ էր, քանի որ երկրների ճնշող մեծամասնության մեջ և շատ բնագավառներում արդյունաբերական արտադրությունը աճում էր, բարձրանում էին շատ ապրանքների գները, թանկանում էր ապրանքների տեղափոխման վարձը, պատվերների տեղաբաշխումը գրեթե ամենուրեք աճում էր (և հաճախ շատ արագ թափով նավերի պատվերները՝ 1956/57 թվականներին), կամ պահպանվում բարձր մակարդակի վրա, ընդարձակվում էր միջազգային առևտուրը, շատ երկրներում աճում էր զբաղվածությունը, գործազրկությունը, եթե չէր էլ կրճատվում, համենայն դեպս չէր էլ աճում։

1959 թվականի գարնանը, երբ երևան կգան հանրագումարային տվյալներ, հնարավոր կլինի ասելու, թե ինչ չափով փոխվել է դրությունը այդ ցուցանիշներից յուրաքանչյուրի նկատմամբ, սակայն մինչև այդ տվյալներն ստանալը ևս պարզ է, որ 1958 թվականը, անկասկած, եղել է ճգնաժամի տարի։ Որովհետև այդ տարի էր, որ տեղի էր ունենում գրեթե կապիտալիստական բոլոր երկրների արդյունաբերական արտադրության անկումը, միջազգային առևտրի ընդհանուր կրճատումը, վճարումների խիստ դժվարությունը մի շարք երկրներում, ընթացիկ պատվերների տեղաբաշխման մակարդակի անկումը, ամենուրեք չկատարված պատվերների պորտֆելի խիստ կրճատումը, զբաղվածության անկումը և գործազրկության խիստ աճումը, բազմաթիվ ապրանքների տեղափոխության և գների անկումը, արտադրական կարողությունների բեռնվածության զգալի իջեցումը, կապիտալ ներդրումների կրճատումը և մի շարք կարևոր բնագավառների գերարտադրությունը։ 1958 թվականի հանրագումարները համոզիչ կերպով ապացուցում են կապիտալիզմի անկարողությունը՝ ապահովելու էկոնոմիկայի անխափան աճը և վերելքը։

Մոտավորապես 1954 թվականի աշնանից կապիտալիստական երկրներում սկսված տնտեսական վերելքի հետևանքով կապիտալիստական աշխարհի արդյունաբերական արտադրությունը 1955 թվականին, համեմատած նախորդ տարվա հետ, աճեց 11 տոկոսով և 1956 թվականին՝ 4,5 տոկոսով։ Անգամ 1957 թվականին, երբ խոսքը վերաբերում էր վերելքի շրջանի ավարտ-



մանը, կամ, եթե օգտագործենք անգլիական պատկերավոր արտահայտությունը՝ «գերհասունացում», «հոգնած բում», ապա արդյունաբերական արտադրությունն աճեց 2—2,5 տոկոսով։ Միայն երկու խոշոր երկրներում՝ ԱՄՆ-ում և Կանադայում արտադրության տարեկան միջին մակարդակը 1957 թվականին այնպես էր, ինչպես 1956 թվականին, սակայն այդ երկրներն ավելի շուտ բացառություն էին։ Մյուս բոլոր երկրներում տեղի ուներ արտադրության աճ. Ճապոնիայում, օրինակ, այն կազմում էր 16,2 տոկոս։

1958 թվականին կապիտալիստական աշխարհի էկոնոմիկան, այժմյան նրա բարդ դրության և տարբեր երկրներում նրա անհամաչափ զարգացման պայմաններում, բնորոշվում է արդյունաբերական արտադրության անկումով։ Այդ վերաբերում է ինչպես կապիտալիստական ողջ աշխարհին, նույնպես և ԱՄՆ-ին, Կանադային, Անգլիային, Ճապոնիային, Բելգիային, Լյուքսեմբուրգին, Նորվեգիային, Նիդեռլանդիային, Դանիային, Հնդկաստանին, որոնք միասին վերցրած, տալիս են կապիտալիստական աշխարհի արդյունաբերական ընդհանուր արտադրության մինչև 70 տոկոսը։ Միայն Իտալիայում և ԳՖՌ-ում, ըստ երևույթին, արդյունաբերությունը 1958 թվականին մոտավորապես 1957 թվականի մակարդակին կլինի, իսկ Ֆրանսիայում նույնիսկ տեղի կունենա նրա նկատելի բարձրացում։ Համենայն դեպս, այդ երեք երկրների դրությունը չի փոխի ընդհանուր պատկերը։

Կապիտալիզմի խոշորագույն երկրում՝ ԱՄՆ-ում արդյունաբերության արտադրության անկումը մեկ տարում, ըստ երևույթին կկազմի շուրջ 7 տոկոս, իսկ կապիտալիստական բոլոր երկրներում միասին վերցրած՝ շուրջ 3—4 տոկոս։ Այսպիսով, վերելքի փուլն ավարտված է և կապիտալիստական աշխարհը թևակոխել է 1957—1958 թվականները՝ ճգնաժամի ժամանակաշրջանը։ Ճիշտ այնպես, ինչպես 1956—1957 թվականներին բոլոր երկրների արտադրության համերաշխ զարգացման բացակայությունը հիմք չէր տալիս հրաժարվելու կապիտալիստական էկոնոմիկայի՝ որպես վերելքի փուլերի վիճակի բնութագրումից, նույնպես էլ արտադրության անհամաչափությունը և նրա անկման զիգզագները ներկայումս թույլ չեն տալիս աչք փակել այն փաստի հանդեպ, որ կապիտալիստական էկոնոմիկան թևակոխել է ճգնաժամի ժամանակաշրջանը։

Քանի որ համաշխարհային երկրորդ պատերազմից հետո դեռ ոչ մի ճգնաժամ իր մասշտաբով նման չի եղել 1929—1933 թվականների ճգնաժամին, ուստի բուրժուական տնտեսագետներն սկսեցին եռանդուն կերպով տարածել առասպել այն մասին, որ իբր թե հետպատերազմյան կապիտալիզմը հասել է զարգացման՝ առանց ճգնաժամերի։

Մինչդեռ կապիտալիզմի խոշորագույն երկրում՝ ԱՄՆ-ում, իմպերիալիստական երկրորդ պատերազմից հետո տեղի է ունեցել ցիկլային ճգնաժամ 1948—1949 թվականներին, մասնակի ճգնաժամ՝ 1951—1952 թվականներին տեքստիլ, կաշվի, կարի արդյունաբերության մեջ, միջանկյալ ճգնաժամ՝ 1953—1954 թվականներին, չխոսելով արդեն 1956 թվականի ավտոմոբիլային արտադրության (27 տոկոսով) և բնակարանային շինարարության (16 տոկոսով) կտրուկ անկման մասին։ Վերջապես, 1957 թվականի օգոստոսից ԱՄՆ-ում սկսվեց նոր ճգնաժամ, որի հետևանքով արդյունաբերական արտադրության ինդեքսը 1956 թվականի դեկտեմբերին 147-ից 1958 թվականի ապրիլին իջավ մինչև 126-ի (կամ 14,3 տոկոս), (1947—1949 թվականներին=

digitised by A.R.A.R.@

100-ի)։ Եթե անգամ ենթադրենք, որ 1958 թվականի ապրիլ ամիսը ներկա տնտեսական ճգնաժամի ցածր կետն է ԱՄՆ-ում, ապա արտադրության անկման առավելագույն չափն ավելի մեծ դուրս եկավ, քան 1948—1949 թվականներին, երբ արտադրության իջեցման ցածր և բարձր կետերի միջև եղած տարբերությունը կազմում էր 10,5 տոկոս, քան 1953—1954 թվականներին, երբ նա կազմում էր 10,2 տոկոս։ Իհարկե, այդ անկումը նույնպես հեռու է 1929 թվականի հուլիսի և 1933 թվականի հուլիսի միջև եղած 54 տոկոսի անկումից։ Համենայն դեպս, անհրաժեշտ է նկատի ունենալ, որ արդյունաբերական արտադրության անկման ամեն մի տոկոսը ԱՄՆ-ում այժմ «քաշում է» $2^1/_2$ անգամ ավելի, քան 1929 թվականին, և այժմյան 14,3 տոկոսի անկումն իր բացարձակ չափերով համասարազոր է այն ժամանակվա 35 տոկոսին։

Անհրաժեշտ է հաշվի առնել նաև հետևյալ հանգամանքը. 1957 թվականին ԱՄՆ-ի արդյունաբերական արտադրության մակարդակը ճիշտ այնպես էր, ինչպես 1956 թվականին։ Ինչ վերաբերում է առանձին բնագավառների, ինչպես, օրինակ, ածխի հանույթին և բրդյա կտորների արտադրությանը, ապա դրանք 1957 թվականին արդեն 12 տոկոսով և 25 տոկոսով ցածր էին քան 1951 և 1950 թվականներին, գյուղատնտեսության սարքավորման արտադրությունը 19 տոկոսով ցածր էր, քան 1952 թվականին, մարդատար ավտոմոբիլների գծով՝ 23 տոկոսով և ապրանքատար ավտոմոբիլների արտադրությունը 10 տոկոսով ցածր էր, քան 1955 թվականին, անտառանյութի արտադրությունը 14 տոկոսով ցածր էր, քան 1955 թվականին, երկաթուղու սարքավորման արտադրությունը՝ 13 տոկոսով ցածր էր, քան 1952 թվականին և այլն։

1958 թվականին այդ բնագավառներում արտադրության ճգնաժամային անկումը կարծես թե լրացնում է այն անկումը, որ տեղի ուներ նրանցում դեռ մինչև ճգնաժամերը։

Համաշխարհային երկրորդ պատերազմից հետո եղած ժամանակաշրջանն առայժմ չգիտե ճգնաժամերի այնպիսի մասշտաբ, ինչպես 1929—1933 թվականների ճգնաժամը։ Բայց հազիվ թե ամերիկյան կապիտալիզմի պատմության մեջ նույն տևողությամբ լինի մի այնպիսի շրջան, որի ընթացքում երկիրն ապրեր ցիկլային, ապա մասնակի, հետո միջանկյալ ճգնաժամեր, իսկ այժմ ցիկլային նոր ճգնաժամ, չխոսելով արդեն գյուղատնտեսության ապրած դժվարությունների մասին։

Օգտակար է հիշել հիսուն տարի առաջ գրված Լենինի խոսքերը. «Միայն ամենակարճ ժամանակ և միայն ամենակարճատես մարդիկ կարող էին արդյունաբերության մի քանի տարվա վերելքի և ծաղկման ազդեցության տակ մտածել Մարքսի ուսմունքի հիմքերի փոփոխման մասին։ Որ ճգնաժամերը չեն սպառել իրենց ժամանակը, իրականությունն այդ շուտով ցույց տվեց ռեվիզիոնիստներին. ճգնաժամը վրա հասավ ծաղկումից հետո։ Փոխվեցին առանձին ճգնաժամերի ձևերը, հաջորդականությունը, պատկերը, բայց ճգնաժամերը մնացին իբրև կապիտալիստական կարգի անխուսափելի բաղկացուցիչ մասը» (Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 15, էջ 27)։

Մասնակի և միջանկյալ սուր ճգնաժամերը կարող են, իհարկե, ետ սպահել և թուլացնել ցիկլային ճգնաժամի թափը։ Նման հնարավորության մասին Մարքսն ուղղակի ասում է. «Այդպիսի մասնակի ճգնաժամերը միշտ նախորդում են պարբերական համընդհանուր ճգնաժամին։ Եթե նրանք շատ են



սրվում, ապա նրանք միայն թուլացնում են ընդհանուր ճգնաժամը և մեղմացնում նրա սրությունը» (К. Маркс и Ф. Энгельс, Соч. т. 26, стр. 355)։ Երբ բուրժուական տնտեսագետները և նրանց ռեվիզիոնիստական ձայնափողերը կամենում են դիտել հետպատերազմյան առանձին ճգնաժամերի ձևերը, հաջորդականությունը և պատկերը կամ կապիտալիզմի ինչ-որ նվաճումը, արդյոք նրանք չե՞ն հիշեցնում ռուսական հին հեքիաթի մի հերոսին, որը տեսնելով թե ինչպես են տանում հանգուցյալին, ցընծությամբ բացականչում է. «Ձեր գործը հաջողակ լինի» («Таскать вам не перетаскать»)։

ԱՄՆ-ի արդյունաբերական արտադրության անկման պատճառը և տընտեսական դրության ընդհանուր վատթարացումը սկսած վերջին ճգնաժամի սկզբից, կարելի է բնութագրել հետևյալ թվերով. Նավթի հանույթը 1956 թվականի սեպտեմբեր—1957 թվականի օգոստոսի 358,1 միլիոն տոննայից 1957 թվականի սեպտեմբեր—1958 թվականի օգոստոսին հասավ 326,0 միլիոն տոննայի, կամ պակասեց 32,1 միլիոն տոննայով։ Պողպատի ձուլումը համապատասխանորեն 110,3 միլիոն տոննայից՝ 77,5 միլիոն տոննայի, կամ՝ 32,8 միլիոն տոննայով։ Բիտում պարունակող ածխի հանույթը 1958 թվականի տասն ամսում կազմեց 297,1 միլիոն տոննա, 1957 թվականի նույն ժամանակի 380,2 միլիոն տոննայի փոխարեն, այսինքն՝ պակասեց 83,1 միլիոն տոննայով։ Համապատասխանորեն մարդատար ավտոմեքենաների արտադրությունը 5002 հազար մեքենայի դիմաց կազմեց 3139 հազար մեքենա։

Բարձված հաստոցների արժեքը, ինչպես սպասվում է, մեկ տարում կազմելու է 400 միլիոն դոլար, որը 52 տոկոսով պակաս է, քան 1957 թվականին։

1958 թվականին ԱՄՆ-ը պողպատի ձուլումով ետ են շպրտված մոտ 9 տարով (մինչև 1949 թվականը), ավտոմոբիլների արտադրությամբ՝ 10 տարով (մինչև 1948 թվականը), ածխի և երկաթահանքի հանույթով՝ 19 տարով (մինչև 1939 թվականը)։ ԱՄՆ-ում 1958 թվականին, 1957 թվականի դիմաց, արդյունաբերական արտադրանքի սպասվող 7 տոկոսի անկումը նշանակում է նրա վերադարձը 1953 թվականի մակարդակին, այսինքն՝ դեպի արտադրանքի այն աճի լրիվ լիկվիդացիան, որը տեղի է ունեցել 1953 թվականից հետո։ Մինչդեռ հենց այդ նույն ժամանակամիջոցում՝ 5 տարում, ՍՍՌՄ-ի արդյունաբերության արտադրանքն աճեց 70 տոկոսով։

ԱՄՆ-ի արտահանման կրճատումը 1958 թվականին, համեմատած 1957 թվականի հետ, կկազմի մոտ 16—18 տոկոս, ներմուծմանը՝ 3—4 տոկոս, կապիտալ ներդրումների նվազումը՝ 16 տոկոս, այդ թվում կապիտալ ներդրումները երկաթուղում, որն ապրում է ծանր և սուր ճգնաժամ՝ 46 տոկոս։

Խիստ կերպով իջավ աշխատավարձի ֆոնդը, ըստ որում բնորոշ է, որ ԱՄՆ-ի մշակող արդյունաբերության արտադրական բանվորների աշխատավարձի ֆոնդը 1958 թվականի հուլիսին կազմեց 144,8 (ինդեքսը՝ 1947—1949=100), 1956 թվականի դեկտեմբերի 171,4-ի դիմաց, իջեցում 15,5 տոկոս, այն ժամանակ, երբ արտադրությունը հենց նույն ժամանակամիջոցում ընկավ 149-ից մինչև 136, կամ 8,7 տոկոսով։

Կապիտալիստները ճգնաժամերը լայնորեն օգտագործում են նրա համար, որպեսզի ավելացնեն շահագործման նորման։ Պաշտոնական տվյալներով լրիվ գործազուրկների թիվը 1958 թվականի հունիսին կազմում էր 5 միլիոն 437 հազար մարդ։ Դա հետպատերազմյան ողջ շրջանի առավելագույն թիվն է։ Տա-

digitised by A.R.A.R.@

րեկան միջինը կլինի 4,9—5 միլիոն մարդ, որը 60 տոկոսով բարձր է, քան 1957 թվականին։ Սակայն չխոսելով անգամ մասնակի գործազրկության մասին, այն մարդկանց շրջանակը, որը գործազրկության հետևանքով տուժում է, ավելի ընդարձակ է, քան այդ մասին կարելի է դատել գործազուրկների տարեկան միջին տվյալներով։ Այսպես, եթե 1957 թվականին գործազուրկների տարեկան միջին թիվը եղել է 2 միլիոն 936 հազար մարդ, ապա հիշյալ տարում նպաստներ ստանալու նախնական հայտերը եղել են 14 միլիոն 149 հազար, այդ քանակությամբ մարդիկ էլ հենց այս կամ այն շրջանում արտադրությունից դուրս են շպրտված եղել։ 1958 թվականի հունվարից մինչև մայիս այդ կարգի հայտերի թիվը եղել է 9 միլիոն 415 հազար. այդպիսի մակարդակի պահպանումը և հաջորդ ամիսներին, նշանակում է, որ 1958 թվականի ընթացքում գործազրկությունից տուժել են 20 միլիոնից ավելի մարդ։

Կանադայի տնտեսական դրությունն ընդհանուր շատ նմանություն ունի ԱՄՆ-ի տնտեսական դրության հետ։ Արդյունաբերական արտադրությունն այնտեղ 1958 թվականի հունվարից հուլիս ամիսը, համեմատած 1957 թվականի հունվար-հուլիս ամիսների հետ՝ իջել է 3,8 տոկոսով, իջել է նաև պողպատի և չուգունի ձուլումը (1,5 միլիոն տոննա, 1,8 միլիոն տոննայի դիմաց), ալյումինի արտադրությունը (215 հազար տոննա, 230 հազար տոննայի դիմաց), թղթի մասսայի արտադրությունը (4,4 միլիոն տոննա, 4,8 միլիոն տոննայի դիմաց), մարդատար և ապրանքատար ավտոմեքենաներ (182 հազար և 31 հազար, 219 հազարի և 44 հազարի դիմաց). կրճատվել է ներմուծումը (330 միլիոն դոլարով), պակասել է զբաղվածությունը 11 տոկոսով և սուր կերպով աճել է գործազրկությունը։ Բեռների բարձումը երկաթուղում իջել է 7,4 տոկոսով։

Սակայն ճգնաժամի զարգացումը ԱՄՆ-ում շատ յուրօրինակ էր. արդյունաբերական արտադրության անկումից հետո՝ 1956 թվականի դեկտեմբերի 147-ի դիմաց, 1958 թվականի ապրիլին՝ 126, սկսեց նկատելի բարձրացում և նոյեմբերին այդ ցուցանիշը կազմեց 141։ Այսպիսով, ճգնաժամի անկման գրեթե երեք քառորդը վերականգնվեց։

Որքանո՞վ է կայուն այդ բարձրացումը։ Կշարունակվի՞ արդյոք այն հետագայում։ Անցե՞լ է արդյոք ճգնաժամի ցածրագույն կետը։ Մենք այս հարցին լրիվ հավաստիությամբ պատասխանել չենք կարող։ Բայց կասկածից վեր է, որ ԱՄՆ-ի էկոնոմիկան ապրեց նոր ճգնաժամ, որն ԱՄՆ-ի բանվոր դասակարգին հսկայական աղետներ բերեց։ Այդ աղետները շարունակվում են, քանի որ արդյունաբերության բարձրացումը թեկուզ և նվազագույն չափով՝ շոշափեց գործազրկությունը, որը 1958 թվականի հոկտեմբերին կազմում էր 3 միլիոն 805 հազար մարդ, այսինքն՝ 52 տոկոսով ավելի, քան 1957 թվականի հոկտեմբերին։ Ռեսպուբլիկականների խոշոր պարտությունն ամենասերտ և անմիջական կապ ունի 1958 թվականի ճգնաժամի հետ։ Բնորոշ է, որ ամենաշատ կորուստը նրանք կրեցին այն նահանգներում, որոնք ուժեղ չափով տուժել էին ճգնաժամից և, մասնավորապես, Պենսիլվանիայում, Արևմըտյան Վիրգինիայում և Կոնեկտիկուտում։

ԱՄՆ-ի արդյունաբերական արտադրության ներկա աճի մեջ որոշ դեր է խաղում պաշարների կրճատումը անցյալ ամիսներին։ Բավական է ասել, որ պողպատի ձուլումը 1958 թվականի առաջին ամիսներին 40 տոկոսով պակաս էր անցյալ տարվա մակարդակից, երբ պողպատի սպառումն ընկավ միայն



20 տոկոսով։ Վերջին 15 ամիսների ընթացքում 30 միլիոն տոննայից մինչև 18 միլիոն տոննա պողպատի պաշարների կրճատմամբ սկսեց նրա ձուլման ավելացումը, և այժմ պողպատի արտադրությունը նորից գերազանցում է նրա սպառումը։

Այս հանգամանքների հետ միասին, որոնք կապված են կապիտալիստական արտադրության և շրջանառության յուրահատուկ դինամիկայի հետ, ամենատարբեր ձևերով նշանակալի դեր է խաղում պետության միջամտությունը։

Խիստ կերպով ավելացել է սպառազինման պատվերների տեղաբաշխումը.

(Միլիարդ դոլարներով)

| 1957 թ. | | 1958 թ. | |
|---|---|---|---|
| Հուլիս-սեպտեմբեր . . | 2,1 | Հունվար-մարտ . . . | 4,6 |
| Հոկտեմբեր-դեկտեմբեր . . | 3,9 | Ապրիլ-հունիս . . . | 5,4 |

Արդյունաբերական արտադրության աճի գործում որոշակի դեր է խաղացել նաև բնակարանային շինարարության ընդլայնումը, որը մասամբ նույնպես կապված է պետական միջամտության հետ. պետական դրամներով գրավ դրած տների գնումը, շինարարական ընկերություններին նոր շինարարության միջոցներ մատակարարելը և այլն։ Ամերիկյան բուրժուական մամուլը շատ է խոսում բնակարանային շինարարության բնագավառի վարկավորման թեթևացման մասին։ Կապիտալիզմի նույթյունն ավելի ցայտուն կերպով դրսևորվում է այն բանում, որ այլ «թեթևացում»-ների շարքում աչքի ընկնող տեղ է գրավում բնակարանային շինարարության վարկերից գանձվող տոկոսների բարձր լիմիտի վերացումը։ Վաշխառուների ձեռքերին ազատություն,— ահա թե որն է «արտոնյալ» վարկավորման էությունը։

«Ֆերստ Նէյշնլ սիտի Բենկ»-ի Բյուլետենը նշում է. «Պատվերների մեծացման և ապրանքների բեռնման գործում շատ մեծ դեր են խաղում արտոնյալ վարկավորումը և պետական ծախսերը»։ Այդ ծախսերը 1957 թվականի երրորդ եռամսյակում 114,5 միլիարդ դոլարից բարձրացան և 1958 թվականի երկրորդ եռամսյակում հասան 123,5 միլիարդ դոլարի։

Վերջապես, չպետք է մոռանալ և այն, որ 1958 թվականի ամառը և աշունը միջազգային լարվածության սրման շրջան էր։ Դա, անկասկած, ազդեց գնումների մակարդակի և պաշարների ծավալի վրա։

Առայժմ լուրջ փոփոխություններ չկան զարգացման հիմնական խոր տենդենցների մեջ, որոնք վերջին հաշվով, որոշում են զարգացման ընթացքը երկար ժամանակով։ Արտադրական կարողությունների օգտագործումը գտնվում է շատ ցածր մակարդակի վրա։ Ինչպես նշում է «Նյուսուիկ» ամսագիրը, սև մետալուրգիայի բեռնվածությունը օգոստոսի վերջում կազմում էր 60 տոկոս, հաստոցաշինությանը՝ 25 տոկոս։ «Այդ կապակցությամբ,—գրում է ամսագիրը,— հաստոցաշինության մեջ կարողությունների ոչ մի ընդարձակում չի կատարվում»։ Արդյունաբերության գծով ամբողջովին վերցրած կարողությունների օգտագործումը, բուրժուական մամուլի գնահատմամբ, կատարվում է 70 տոկոսով։ Անկասկած է, որ անցյալում սկսված շինարարության ավարտումը, արդյունաբերության մի շարք ճյուղերում կավելացնի նոր կարողություններ։

digitised by A.R.A.R.@

Պաշտոնական շրջանների գնահատությամբ, երրորդ եռամսյակում սպասվում էր կապիտալ ներդրումների վրա կատարած ծախսերի այնպիսի մակարդակ, ինչպիսին էր երկրորդում, իսկ չորրորդ եռամսյակում, հաշվի առնելով սեզոնային մոմենտները, պետք է տեղի ունենար բոլորովին աննշան բարելավում։

Բնորոշ է, որ 1958 թվականի երկրորդ եռամսյակում մշակող արդյունաբերության մեջ կապիտալ նոր ներդրումների հատկացումները, որոնք հնարավորություն են տալիս դատելու ապագա ներդրումների մասին, համեմատած 1957 թվականի երկրորդ եռամսյակի հետ, իջել է 35 տոկոսով (1,9 միլիարդ դոլարից 1,3 միլիարդ դոլարի) և այդ թվում գունավոր մետաղների գծով 48 տոկոսով, ածխի և նավթի գծով՝ 35 տոկոսով։ Հատկացումների չծախսված ֆոնդը 1957 թվականի հունիսի 30-ի 8,1 միլիարդ դոլարից 1958 թվականի հունիսի 30-ին իջավ մինչև 5,3 միլիարդ դոլարի։

Կարևոր է ընդգծել նաև այն, որ արդյունաբերության աճը չի ուղեկցվում հիմնական արտադրողի՝ բանվոր դասակարգի զբաղվածության և եկամտի աճով, նրա գնողունակության աճով։ Ամեն ամիս հարյուր հազարավոր նոր բանվորներ զրկվում են նպաստ ստանալու իրավունքից. այսպես, 1958 թվականի հունիսին նպաստ ստանալու իրավունքից զրկվել է 252 հազար մարդ, իսկ 6 ամսում՝ 1 միլիոն 204 հազար մարդ։

«Ֆորչուն» ամսագիրը իր նոյեմբերյան համարում խոստովանում է, որ «գործազրկության նշանակալի չափերը կլինեն կայուն»։ 1959 թվականին սպասվում է գործազրկության կտրուկ աճ, նույնպես և ֆերմերի մաքուր եկամուտների անկում՝ 5—10 տոկոսով։

«Այժմ, երբ տնտեսական ակտիվությունը բարձրանում է,—գրում է «Բէրրոնզ» ամսագիրը,—ընկերությունների ղեկավարները հայտնում են ծախսերի իջեցման մասին, որպես այս տարվա առաջին կեսի կարևորագույն նվաճման մասին։ Խոշորագույն արդյունաբերողը հայտնում է, որ նա իր ձեռնարկության 75 տոկոսի բեռնվածության դեպքում ստանում է նույն շահույթը, ինչպիսին նա ստացել է ճգնաժամի նախօրյակին, երբ բեռնվածությունը 95 տոկոս էր։ Պողպատաձուլության արդյունաբերության խոշոր ընկերության նախագահը նշեց, որ երբ 1958 թվականի չորրորդ եռամսյակում շարք կմտնեն նորագույն ագրեգատները, ընկերությունը շահույթ կստանա նույնիսկ բեռնվածության 45 տոկոսի դեպքում»։

Այդ նշանակում է հակասության հետագա սրում մի կողմից արտադրության և մյուս կողմից՝ աշխատավորության սպառման միջև։ Մոտակա 1—2 տարում չեն երևում ոչ անձնական սպառման հաստատուն առաջընթացի աճման նախադրյալներ, ոչ էլ կապիտալ ներդրումների հաստատուն բարձրացում։ Լուրջ փոփոխություններ տեղի չունեցան նաև վարկավորման ոլորտում պարտքերի բնագավառում։ Պարտքերը երկրում հրեշավոր չափով մեծ են։ Մասնավորապես մեծ են գրավդրման և սպառողական պարտքերը։ Նոր վարկերը, որոնք այժմ հատկացվում են բնակարանային շինարարությանը, առավել ևս կավելացնեն այդ պարտքերը։

Սեզոնային գործոնների, ավտոմոբիլների նոր մոդելների թողարկման, ռազմական արտադրության հնարավոր ավելացման ազդեցության տակ և այլն, արտադրության ներկա վերելքի տենդենցը կարող է պահպանվել (բայց պարտադիր չէ, որ պահպանվի) մինչև այս տարվա ապրիլ-մայիսը։ Սև մե-



տալուրգիայի մեջ հնարավոր գործադուլի սպասումը նույնպես ժամանակավորապես կնպաստի արտադրության ընդարձակմանը։ 1959—1960 թվականներին արդյունաբերության արտադրության հետագա սիստեմատիկ աճի նախադրյալները չեն երևում։ Ավելի հավանական է թվում արդյունաբերական արտադրության իջեցում, հնարավոր է թերևս, ավելի ցածր մակարդակի, քան 1958 թվականի ապրիլին էր, կամ էլ արտադրության տատանում՝ նախաճգնաժամյան շրջանի առավելագույն մակարդակից ցածր։

***

ԱՄՆ-ի ծայրահեղ հակասական դրության մասին վկայում են բուրժուական տնտեսագետների շրջանում եղած տարաձայնությունները կոնյունկտուրայի զարգացման հավանական ընթացքի գնահատման գործում։

Այսպես, «Ֆորչուն» ամսագիրը հայտարարում է, որ էկոնոմիկայի աշխուժացումն սկսում է ընդունել իսկական բումի բնույթ։ Ճիշտ հակառակ տեսակետի վրա է տնտեսագետ Անտոնի Հաուբիսը։ Նա գտնում է, որ արդյունաբերական արտադրության ինդեքսը զարգացման թռիչքի ներկա պրոցեսում կարող է դեռ հասնել 140—142-ի, բայց 1959 թվականի գարնանը արտադրության տենդենցը նորից կտանի դեպի իջեցում և որի հետևանքով ինդեքսը կվերադառնա 1958 թվականի ապրիլի մակարդակին (126), բայց և կարող է ավելի իջնել և հասնել, օրինակ, 120-ի։

Հաուբիսը հնարավոր է համարում նաև պետական ծախսերի կրճատում ընտրություններից հետո, արտասահմանի պահանջարկի նվազում ամերիկյան ապրանքների նկատմամբ 2—4 միլիարդ դոլարով։ Կանգ առնելով հատկապես ֆոնդային բիրժայի հեռանկարների վրա, Հաուբիսը գալիս է այն հետևության, որ ակցիաների կուրսը պետք է ընկնի, և այդ անկումը կլինի ավելի զգալի, քան 1957 թվականի աշնանը։ Հեռանկարները ԱՄՆ-ում, եզրակացնում է նա, իսկական առումով չեն փոխվելու այնքան ժամանակ, քանի դեռ չի փոխվել դրությունը ամբողջ (կապիտալիստական) աշխարհում։

Այն դերը, որ ներկա մոմենտում խաղում են պետական ծախսերը, միանգամայն տեղին է հետաքրքրվել, թե ինչպիսի վիճակումն են ԱՄՆ-ի պետական ֆինանսները։ Այս տեսակետից անհրաժեշտ է նշել երկու մոմենտ. 1) 1958/59 բյուջետային տարում սպասվում է 10—12 միլիարդ դոլարի դեֆիցիտ, եկամուտները սպասվում են 67,0 միլիարդ դոլարի չափով, ծախսերը՝ 79,2 միլիարդ դոլար. 2) 1958 թվականի օգոստոսի 1-ին գանձարանի $1^5/_8$ տոկոսանոց պարտավորագրի թողարկումը բոլորովին գնորդներ չգտավ, և էմիսիայի ամբողջ գումարը՝ 1,2 միլիարդ դոլար, գնվեց Ֆեդերալ ռեզերվների սիստեմի կողմից։ Ակներևաբար նկատի ունենալով այս փաստը և պետական փոխառությունների կուրսի խիստ անկումը, «Բերրոնզ» ամսագիրը խոսում է պետական պարտավորությունների նկատմամբ շուկայում եղած աղետի մասին», իսկ «Ֆերստ Նէյշնլ Բենկ»-ի սեպտեմբերյան բյուլետենը հայտարարում է. «Եթե գանձարանը սկսի բաց թողնել արժեթղթեր, որ կարող է և պատրաստ է գնել միայն Ֆեդերալ ռեզերվների սիստեմը, այդ դեպքում նա (գանձարանը) ի վիճակի չի լինի ծածկելու դրամի իր պահանջները դրամական ազատ շուկայում, ապա ուրեմն բաց կլինի անզուսպ ինֆլյացիայի ճանապարհը»։

Այսպիսով, ԱՄՆ-ի տնտեսական դրության համար որոշ վտանգ է ծագում

digitised by A.R.A.R.@

այն կողմից, որի վրա սովորաբար ամենաքիչ ուշադրություն են դարձնում, այսինքն՝ պետական ֆինանսների կողմից։ Չպետք է նաև մոռանալ, որ ԱՄՆ-ի էկոնոմիկան հազարավոր թելերով կապված է կապիտալիստական այլ երկրների էկոնոմիկայի հետ։ Այդ պատճառով էլ չի կարելի ԱՄՆ-ի էկոնոմիկայի զարգացման հեռանկարները դիտել առանց հաշվի առնելու այն, թե ինչպես կզարգանա դրությունը կապիտալիստական մյուս երկրներում։ Եթե 1957 թվականի վերջին և 1958 թվականի սկզբին ԱՄՆ-ի ճգնաժամը ցած քաշեց կապիտալիստական մյուս երկրների էկոնոմիկան, ուրեմն չի բացառված նաև այն, որ դրության վատացումը մյուս երկրներում բացասաբար կազդի ԱՄՆ-ի էկոնոմիկայի վրա։

Ամենակարևոր նոր երևույթը կապիտալիստական երկրների էկոնոմիկայում, բացի ԱՄՆ-ից, 1958 թվականի երկրորդ կեսում պետք է հաշվել տնտեսական դրության կտրուկ վատացումը Անգլիայում, որը հազիվ թե կարելի է այլ կերպ բնութագրել, քան տնտեսական ճգնաժամի սկիզբ։ Անգլիայում տնտեսական դրության վատացումն սկսվեց ավելի ուշ, քան ԱՄՆ-ում, բայց երբ արդյունաբերական արտադրությունն սկսեց բարձրանալ ԱՄՆ-ում, Անգլիայում, ընդհակառակը, այն նկատելիորեն սկսեց կրճատվել։ 1958 թվականի հունիսին նա 6 տոկոսով ցածր էր, քան 1957 թվականին և մի տարվա ընթացքում հավանաբար 2—3 տոկոսով ցածր, քան նախորդ տարում։ Պողպատի ձուլումը առաջին եռամսյակում 1 տոկոսով պակաս էր, քան 1957 թվականի առաջին եռամսյակում, երկրորդ եռամսյակում՝ 10 տոկոսով, երրորդում՝ 16 տոկոսով պակաս, քան 1957 թվականի համապատասխան եռամսյակներում։ Ածխի հանույթը ցածր է 1957 թվականից 3—4 տոկոսով, միաժամանակ կտրուկ կերպով աճում են չվաճառված ածխի պաշարները (գերազանցապես մանր), 1958 թվականին հասնելով 18 միլիոն տոննայի։ Ճգնաժամային դրությունն ընդգրկել է տեքստիլ արդյունաբերությունը։ Զգալի չափով՝ 10 տոկոսով, ընկավ ներմուծումը, որը մասամբ կապված է հումքի գների իջեցման հետ։ Տեղի ունի, չնայած փոքր մասշտաբով, արտահանման անկում։ Խիստ կերպով պակասել են երկաթուղային փոխադրումները։

Գործազրկությունն Անգլիայում շեշտակիորեն աճեց և 1958 թվականի հոկտեմբերին հասավ 552 հազար մարդու, որը 80 տոկոսով բարձր էր, քան 1957 թվականի հոկտեմբերին և բարձր էր, քան երբևէ՝ պատերազմից հետո։ Չնայած կապիտալիստների դիմադրությանը, բանվորներին հաջողվեց հասնել իրենց աշխատավարձի 2—4 տոկոսի բարձրացմանը, բայց արտաժամյա աշխատանքների կրճատումը իջեցնում է բանվորների վաստակը։ Բնակարանների շինարարությունը կրճատվեց 10 տոկոսով, համեմատած 1957 թվականի հետ։ Եռամսյակից եռամսյակ կրճատվում է արդյունաբերական շենքերի կառուցմանը հատկացված տարածությունը և 1957 թվականի հունվար—սեպտեմբեր ամիսներին 30 տոկոսով պակաս էր, քան մեկ տարի առաջ։ Մշակող արդյունաբերության մեջ տեղի ունեցավ ներդրումների կրճատում 2 տոկոսով, 1959 թվականին սպասվում է կապիտալ ներդրումների հետագա կրճատում՝ 17,5 տոկոսով, այդ թվում սարքավորման ծախսեր՝ 10 տոկոսով, շենքերի և կառուցումների ծախսեր՝ 25 տոկոսով։

Բնորոշ է, որ հաստոցների պատվերների չկատարման պարտքը, որը մեկ տարի առաջ կազմում էր 90,1 միլիոն ֆունտ ստեռլինգ, 1958 թվականի հուլիսի վերջին կազմեց 64,3 միլիոն ֆունտ ստեռլինգ։



ԳՖՌ-ի դրության վատթարացման որոշակի ցուցանիշ է հանդիսանում պատվերների դինամիկան, որն ահազանգում է ճգնաժամի մոտեցման մասին։ Սկսած 1957 թվականի նոյեմբերից պատվերների ընդունումը 1958 թվականի ապրիլ, հունիս և հուլիս ամիսներին էր միայն բարձր, քան անցյալ տարվա համապատասխան ամիսներին։ 1957 թվականի օգոստոսից, բացառությամբ մեկ ամսվա, միայն 1958 թվականի հունիսի, պատվերների ընդունումը ցածր էր նաև արդյունաբերության բեռնվածության ասպարեզում։ Այն անխուսափելի կերպով պետք է վերջիվերջո հասցնի արդյունաբերական արտադրության մակարդակի իջեցման։

Առկա է սև մետալուրգիայի դրության լուրջ վատթարացում։ Պողպատի ձուլումը 1958 թվականի առաջին կեսում ավելի պակաս էր, քան 1957 թվականին։ 1958 թվականին այն կազմում էր 1 միլիոն 888 հազար տոննա, որը 15,1 տոկոսով պակաս էր, քան 1957 թվականի հոկտեմբերին։ Եթե անցած տարվա առաջին կեսում պողպատի ձուլումը 1957 թվականի մակարդակին էր, ապա երրորդ եռամսյակում 680 հազար տոննա պակաս էր, քան 1957 թվականին։ Ամբողջ տարվա համար, ինչպես սպասում են, այն կկազմի 23 միլիոն տոննա, որը 1,5 միլիոն տոննայով պակաս կլինի, քան 1957 թվականին։ Այդ բնագավառի արդյունաբերությունը ծանրաբեռնված է միայն 80 տոկոսով, սպասվում է բեռնվածության իջեցում մինչև 75 տոկոսի։ Ածխի հանույթը գտնվում է 1957 թվականի մակարդակի սահմաններում, բայց ամեն ամիս ավելանում են պաշարները, որոնք 1958 թվականի օգոստոսին 10 անգամ գերազանցեցին 1957 թվականի օգոստոսի մակարդակը, ետևում թողնելով 1929—1933 թվականների ճգնաժամերի ընթացքում եղած առավելագույն մակարդակը։ Ե՛վ սև մետալուրգիայում, և՛ ածխարդյունաբերության մեջ լայնորեն կիրառվում է կրճատ բանվորական օր, հաճախակի են հեռացումները։

Ալյումինի արտադրությունը 1958 թվականի հունվար-օգոստոսին 11 տոկոսով պակաս էր, քան 1957 թվականի 8 ամիսներին։ Թե՛ պատվերները, թե՛ արտադրությունը տեքստիլ արդյունաբերության մեջ զգալիորեն ցածր են, քան նախորդ տարում։ Համեմատած 1957 թվականի օգոստոսի հետ, 1958 թվականի օգոստոսին պատվերները տեքստիլ արդյունաբերության մեջ պակաս էին 16 տոկոսով, կաթի արդյունաբերության մեջ՝ 21 տոկոսով, կաշվինը՝ 23 տոկոսով, կոշիկինը՝ 29 տոկոսով։

Արդյունաբերական արտադրության բարձր մակարդակի կարևորագույն գործոններից մեկը ԳՖՌ-ում արտահանության աճն էր։ Եվ այդ բնագավառում տեղի ունեցան լուրջ փոփոխություններ։ 1957 թվականի սեպտեմբերից մինչև 1958 թվականի մայիսը արտահանման պատվերները զգալիորեն ցածր էին, քան նախորդ տարվա նույն ամիսներին։ Նույնիսկ վերջին ժամանակներս դժվարություն է նկատվում մարդատար ավտոմոբիլների պատվերների գծով, որոնց վաճառքն արտասահմանում վերջին տարիներին անընդհատ ընդարձակվում էր։ Անցած տարվա փետրվարից ամուր կերպով հաստատվեց արտահանման ավելի ցածր մակարդակ, քան 1957 թվականին։

Առհասարակ ընկավ արդյունաբերական կարողությունների բեռնվածությունը. 1955 թվականի 88,3 և 1956 թվականի 84,8 տոկոսից մինչև 81,5 տոկոսի 1957 թվականին, և 76 տոկոսի՝ 1958 թվականի առաջին եռամսյակին։ Կապիտալ ներդրումները ժողովրդական տնտեսության մեջ 1958 թվականի առաջին եռամսյակում պակասեցին 4 տոկոսով։

digitised by A.R.A.R.@

Ածխարդյունաբերության, սև մետալուրգիայի և տեքստիլ արդյունաբերության ճգնաժամը այս կամ այն չափով ընդգրկել է կապիտալիստական բոլոր երկրները։

Եթե մինչև վերջին ժամանակներս շահագրգռված շրջաններում փորձում էին լռել ածխի սպառման ուղղակի կրճատման փաստի մասին, ապա այժմ բացահայտորեն ընդունում են ածխի սպառման «բրուտալ» կրճատման մասին, որը մի քանի աղբյուրներ գնահատում են տարեկան 40 միլիոն տոննա, ածխի և պողպատի եվրոպական միավորման համար և 10 միլիոն տոննա՝ Անգլիայի համար։ Պողպատի ձուլման անկում, ածխի անչափ պաշարների կուտակում, տեքստիլ արտադրանքի անկում տեղի ունի նաև Բելգիայում, որը նույնպես ներքաշվեց ճգնաժամի մեջ։ Արդյունաբերական արտադրությունն այնտեղ 1958 թվականի հունվար-օգոստոսին ընկավ 6 տոկոսով, արտահանումը հունվար-սեպտեմբերին նույնպես կրճատվեց 6 տոկոսով։

Համականշական է արդյունաբերական արտադրության դինամիկան Նիդեռլանդիայում։ Փոփոխությունները նախորդ տարվա համապատասխան շրջանների հետ կազմում են.

| | | | |
|---|---|---|---|
| 1954 թ. . . . | —10,0 տոկոս | 1957 թ. . . . | — 2,4 տոկոս |
| 1955 թ. . . . | — 7,3 տոկոս | 1958 թ. (առաջին կիսամյակը) | — 2,4 տոկոս |
| 1956 թ. . . . | — 4,2 տոկոս | | |

Սա գրեթե կապիտալիստական ամբողջ աշխարհի արտադրության դինամիկայի ճիշտ պատճենն է։

Ճապոնիայում 1958 թվականի ապրիլից արդյունաբերական արտադրության ինդեքսը զգալիորեն ցածր էր, քան 1957 թվականի համապատասխան ամիսներին։ Ընկավ տեքստիլ արդյունաբերության և պողպատի արտադրանքը։ Սկսվեց վատացումը նավաշինարարության բնագավառում։ Մեծ չափով իջավ ներմուծումը, իսկ անցած տարվա հուլիս-սեպտեմբերին 1957 թվականի մակարդակից ետ էր մնում նաև արտահանումը։ Ինչպես և մյուս բոլոր կապիտալիստական երկրներում, կրճատվում են կապիտալ ներդրումները։ Անգամ լավատեսորեն տրամադրված տեսաբանները ցածր մակարդակի հասած արտադրության ժամանակավոր տատանումները համարում են հավանական երկար ժամանակվա համար։ Աճում է գործազրկությունը մշտական բանվորների և, հատկապես սուր կերպով, ժամանակավոր բանվորների շրջանում։

Տնտեսական դրության վատթարացում տեղի է ունենում անգամ այնպիսի երկրներում, որտեղ արտադրության մակարդակը 1958 թվականին բարձր էր, քան 1957 թվականին։ Ֆրանսիայում 1958 թվականի հունվար-օգոստոս ամիսներին, համեմատած 1957 թվականի հետ, տեղի ուներ արտադրության աճ 7—8 տոկոսով, իսկ տարվա վերջում սպասվում էր 2—3 տոկոս աճ։ Բայց 1958 թվականի սեպտեմբերին արդյունաբերական արտադրության ինդեքսը հավասար էր 1957 թվականի սեպտեմբերի մակարդակին, որը, հավանաբար, ահազանգում էր արտադրության կրճատման մասին նաև Ֆրանսիայում։ Ռեալ աշխատավարձի անկումը կառավարության կողմից վարկավորման սահմանափակումների հետ միասին լուրջ կերպով անդրադառնում է սպառողական ապրանքների արտադրության վրա։ Խիստ կերպով ընկավ երկար գործածության սպառողական ապրանքների վաճառքը, որի հետևանքով շատ ձեռնարկություններ աշխատում են ոչ լրիվ շաբաթ։



Մամուլը հաղորդում է նաև երկաթուղու միջոցով բեռներ փոխադրելու կրճատման մասին, որը 1958 թվականի սեպտեմբերին 4 տոկոսով ցածր էր, քան մեկ տարի առաջ։ Ունիվերմագների վաճառքի գումարը, անգամ արժեզրկված ֆրանկներով մեկ տոկոսով ցածր էր, քան 1957 թվականի սեպտեմբերին, որը, հաշվի առնելով նաև այդ շրջանում տեղի ունեցած գների բարձրացումը, նշանակում է ռեալ ապրանքաշրջանառության խիստ նկատելի իջեցում։ Դանդաղում է արդյունաբերական սարքավորման պատվերների ստացումը։

***

Սուր ճգնաժամը շարունակվում է ծովային բեռնատար նավագնացության շրջանում։ Շատ երկրներում գրեթե կանգ է առել նավերի պատվերների ընդունումը, չեղյալ են համարվում շատ պատվերներ։ Հաշվի առնելով, որ միայն 5 միլիոն տոննա ընդհանուր տոննաժով տանկեր նավերը լրիվ բեռնվածությամբ կանգնած են, իսկ հին պատվերներով նավերի կառուցման ավարտումը կհանգեցնի բեռնատարողության ներկա ծավալի՝ առօրյա պահանջները գերազանցող մեծացման, Բրիտանական նավագնացության պալատի պրեզիդենտ Ռ. Ռոպները վերջերս հայտարարեց՝ հետագայում Անգլիայում 1 միլիոն բրուտտո տոննա նավերի պատվերների չեղյալ համարելու հնարավորության մասին։

Մեծ թվով նավաշինական փոքր ֆիրմաներ Անգլիայում մտահոգում են իրենց պատվերների սպառմանը։ Փորձելով ներգրավել նոր պատվերներ, ճապոնական ֆիրմաները դիմում են 35—45 տոկոսով գների իջեցման, համեմատած 1956—1957 թվականներին նրանց կառուցման առավելագույն գների հետ։ Ֆրանսիական նավաշինարարները 1958 թվականին նավերի պատվերներ են ստացել 12 հազար բրուտտո տոննա, այն ժամանակ, երբ չեղյալ հայտարարված նավերի պատվերների ընդհանուր տոննաժը կազմում է 225 հազար բրուտտո տոննա։ Նավաշինարարության «Լուար-Նորմանդիա» կոնցեռնը նախատեսում է իր 4500 բանվորներից կրճատել 900 հոգի։ Ճգնաժամի ազդեցությունը նավագնացության վրա, նավաշինարարության վիճակի վրա, ամենուրեք դառնում է ավելի ու ավելի շոշափելի։

Բավական երկար ժամանակ է, ինչ հումքի և մթերքների շուկայում նկատվում է գների անկում, որն սկսվեց ԱՄՆ-ում դեռ մինչև ճգնաժամը։ Հատկապես զգալիորեն ընկան վոլֆրամի, պղնձի, կապարի, ցինկի, անագի, կաուչուկի, բրդի, սուրճի, շաքարի, պլատինի, մարգանեցի հանքաքարի, մետաքսի և այլնի գները։ Դա լրջորեն ազդեց հումքի գերարտադրության վրա և հանգեցրեց միանգամայն տարբեր միջոցառումների կենսագործման, նպատակ ունենալով լիկվիդացնել գերարտադրությունը և կանխել գների անկումը։

Հայտնի է անագի միջազգային կազմակերպության գործունեությունը, որն անցկացրեց անագի ներմուծման գների իջեցում 40 տոկոսով, իսկ այժմ նախատեսվում է իջեցում 48 տոկոսով։ Դա հանգեցրեց հսկայական գործազրկության Մալայայում, վալյուտայի մուտքի կտրուկ անկման Բոլիվիայում և Նիգերիայում (Աֆրիկա)։

Սահմանափակող համաձայնություններ են կիրառվում նաև շաքարի և ցորենի վերաբերյալ։

Ալմաստի սինդիկատը, որի ձեռքով է անցնում կապիտալիստական եր-

digitised by A.R.A.R.@

*կըրներում ալմաստի հանույթի 80 տոկոսը, զգալ տվեց, որ ինքը պատրաստ է օգտագործելու այդ նպատակի համար հատկացված 20 միլիոն ֆունտ ստեռլինգ գումարը, որպեսզի անհրաժեշտության դեպքում կանգնեցնի ալմաստի վաճառքը։ Պղնձի հանույթի և ձուլման ընկերություններն իրենց արտադրանքը կրճատեցին 10 տոկոսով (ԱՄՆ-ում կրճատում տեղի ունեցավ ավելի զգալի չափով)։*

*Մոտավորապես 20 տոկոսով կրճատվեց կապարի և ցինկի, 28 տոկոսով ալյումինի (համեմատած եղած կարողությունների հետ), 33 տոկոսով նիկելի արտադրությունը։ Լոնդոնում տեղի ունեցավ խորհրդակցություն, որը հատուկ կոչով դիմեց բոլոր երկրներին՝ շուկայի դրությունն առողջացնելու նպատակով առաջիկայում ևս սահմանափակել ցինկի և կապարի արտադրությունը։ Հարավ-Աֆրիկյան Միությունում 40 տոկոսով, Կանադայում՝ 33 տոկոսով կրճատվում է պլատինի արտադրությունը։*

*Արտադրության և վաճառքի սահմանափակումը համապատասխան ճյուղերում ծնում է գործազրկություն, տանում է դեպի գյուղացիների եկամուտների անկում։ Դրա հետ միասին արտադրության և ներմուծման հարկադիր կըրճատումը, որը տեղի է ունենում փոխադարձ սուր պայքարի պայմաններում, հանգեցնում է միջպետական լուրջ բախումների։*

*Նավթի ներմուծման սահմանափակումը ԱՄՆ-ում բողոքներ առաջ բերեց Կանադայում և Վենեսուելայում։ 1958 թվականի հոկտեմբերի մեկից ԱՄՆ ներմուծված կապարի և ցինկի 20 տոկոսի կրճատումը սուր բողոքներ առաջացրեց Մեքսիկայում, Պերուում, Կանադայում, Բոլիվիայում, Ավստրալիայում, որոնց համար այդ մետաղների վաճառքը ԱՄՆ-ում հանդիսանում էր վալյուտային մուտքի կարևոր աղբյուր։ Միաժամանակ ամերիկացիները, որոնք իրենց սրբազան իրավունքն են համարում քմահաճորեն սահմանափակելու ներմուծումները ԱՄՆ, որպեսզի բարձր գներ պահպանեն նավթի, կապարի, ցինկի վրա, կտրուկ բողոք հայտնեցին Բելգիային և ԳՖՌ-ին, որոնք չեն ցանկանում ԱՄՆ-ից ներմուծել ածուխ, որովհետև չգիտեին, թե ինչ անեն իրենց սեփական ածուխը։*

*Արտահանման ֆիզիկական ծավալի կրճատումը հումքի և պարենի գների իջեցման հետ միասին, հասցրեց տնտեսապես թույլ զարգացած երկրների վալյուտային մուտքի խիստ իջեցման։ Այսպես, հաղորդումների համաձայն Հնդկաստանը 1958 թվականի հունվար-հունիսին 500 միլիոն ռուփի պակաս է ստացել իր արտահանումներից, քան 1957 թվականի առաջին կեսին, Պակիստանը՝ 600 միլիոն ռուփի պակաս և այլն։ Մինչդեռ տնտեսապես թույլ զարգացած երկրների ներմուծման պահանջները չեն կրճատվում և կապիտալիստական երկրներից ներմուծած ապրանքների գներն ավելի շուտ բարձրանում են, քան իջնում։*

*Դրա հետևանքով մեծ չափով աճեց տնտեսապես թույլ զարգացած երկրների արտաքին առևտրի պարտքի մնացորդը, որը 1957 թվականին կազմում էր 4035 միլիոն դոլար, քանի որ տնտեսապես թույլ զարգացած երկրների առևտրական և վճարման բալանսները շարունակում են պասսիվ մնալ. 1958 թվականին տեղի ունեցավ վալյուտայի անընդհատ հոսք, այդ երկրների վալյուտային դժվարությունների աճ, որոնք հասցնում են մի շարք վալյուտաների կուրսի իջեցման և դևալվացիայի։ Բրազիլիայում 1957 թվականի օգոստոսի և 1958 թվականի փետրվարի միջև ընկած շրջանում դոլարի կուրսերից մեկը կազմում*



*էր 70 կրուզեյրո, ապա այն բարձրացվեց մինչև 84 կրուզեյրոյի, հետո մինչև 104 կրուզեյրոյի և, վերջապես, մինչև 137 կրուզեյրոյի, դրանով իսկ արտացոլելով կրուզեյրոյի կուրսի կատաստրոֆիկ անկումը։ Բրազիլիայի վճարման բալանսի դեֆիցիտն սպասվում է 500 միլիոն դոլար և նա ձգտում է հին վարկերի վճարման ժամկետների երկարացման։ Ֆունտ ստեռլինգի ազատ կուրսն Արգենտինայում 1958 թվականի սկզբին 104-ից հասավ մինչև 200-ի՝ նույն թվականի աշնանը։ Կոլումբիային անհրաժեշտ էր 103 միլիոն դոլարի փոխառություն, որպեսզի «ծածկեր սուրճի գների անկման հետևանքով առաջացած դեֆիցիտը»։ Առավել լուրջ դժվարություններ են կրում այնպիսի երկրներ, ինչպես Պակիստանը և Թուրքիան, որոնք ակտիվ մասնակցում են սպառազինման մրցավազքին և ՆԱՏՕ-ի ագրեսիվ պլաններին։ Թուրքիան փաստորեն կանգնեց պետական սնանկացման և արտաքին պարտքերի վճարումը դադարեցնելու առաջ, որը հանդիսանում է նոր կարևոր փաստ և բնութագրում է կապիտալիստական աշխարհի տնտեսական դրության հետագա վատթարացումը։ Ձեռնարկվեցին միջոցներ, որոնց արևմտյան մամուլը բացահայտ կերպով անվանում է «rescue operation»—պետական սնանկացումը փրկող գործողություն։ 2,80 թուրքական լիրային՝ մեկ դոլար կուրսից Թուրքիան ստիպված էր անցնելու 9 լիրա վճարելու կուրսին։ Թուրքիային վարկ էր տրված 559 միլիոն դոլարի չափով։ Եվրոպական տնտեսական համագործակցություն կազմակերպող երկրները 6 ամսով երկարաձգել են Թուրքիայի պարտքերի վճարումը։ Արդյո՞ք այդ վարկերը և նրանց մարման ժամկետի երկարացումը մի հատուցում չէ այն օգնության համար, որ Թուրքիան ցույց է տալիս անգլո-ամերիկյան ավանտյուրայի սանձազերծմանը Մերձավոր Արևելքում։*

* * *

*1958 թվականի ապրիլ-մայիսին կապիտալիստական աշխարհի տնտեսական դրությունը բնութագրվում էր հետևյալ գծերով.*

*ԱՄՆ-ում և Կանադայում՝ ճգնաժամով, ըստ որում ԱՄՆ-ում այդ շրջանին նախորդող ամիսներում ամեն ամիս տեղի էր ունենում արտադրության սըրընթաց անկում.*

*կապիտալիստական մյուս երկրների տնտեսական դրության վատթարացմամբ, որն սկսվեց կապիտալ ներդրումների նվազեցումով.*

*հումքի շուկաների ճգնաժամով, տնտեսապես թույլ զարգացած երկրների առևտրական և վճարման բալանսի վատթարացումով.*

*բեռնատար նավագնացության բնագավառի սուր ճգնաժամով, տեքստիլ, ածխի և պողպատաձուլման արդյունաբերության մեջ սկսված ճգնաժամով։*

*1958 թվականի աշնան համաշխարհային տնտեսական ճգնաժամն արտացոլող այս երևույթներից ոչ մեկը 1958 թվականի վերջում չէր լիկվիդացված։ Չնայած արդյունաբերական արտադրության նկատելի բարձրացմանը ԱՄՆ-ում, գործազրկության չափերը, կապիտալ ներդրումների ծավալը, շատ բնագավառներում, արտադրողական կարողությունների օգտագործման աստիճանը, արտաքին առևտրի ծավալը մնում են ճգնաժամային մակարդակին։ Հաշվի առնելով արտադրության նոր իջեցման հնարավորությունը ԱՄՆ-ում, ներկայումս վաղաժամ կլիներ եզրակացություններ անել դեպրեսիայի անցնելու վերաբերյալ։ Պետական ռազմական պատվերների տեղաբաշխումը, բա-*

digitised by A.R.A.R.@

*ցառությամբ առանձին ամիսների, հասավ առավելագույն աստիճանի, որն ավելի աչքի ընկավ կորեական դեպքերի շրջանում, խրախուսվող բնակարանային շինարարություն դրավ դրված տների գնումով, արտադրության վերադարձը (օրինակ, պողպատի) այն մակարդակին, որը համապատասխանում է ներկայիս սպառման մակարդակին, պետության կողմից որոշ միանվագ գումարի վճարումը, սեզոնի մոմենտները — այս բոլորը բավական են նրա համար, որպեսզի ապահովվի արտադրության բարձրացումը մի շարք ամիսների ընթացքում, բայց ոչ նրա համար, որպեսզի լիկվիդացվեն այն նախադրյալները, որոնք հանգեցրին ներկայիս ճգնաժամին: Արդյունաբերական արտադրության աճը ԱՄՆ-ում 1958 թվականի ապրիլից հետո ամենևին չփոխեց ճգնաժամի ընդհանուր պատրագները կապիտալիստական ամբողջ աշխարհում:*

*Կապիտալիստական շատ երկրների տնտեսական դրությունը շարունակում է վատանալ: Ճգնաժամն ուժեղացավ կապիտալիստական երկրների տեքստիլ, ածխի և պողպատի ձուլման արդյունաբերության մեջ: Ճգնաժամը նավագնացության մեջ ավելի և ավելի է անդրադառնում նավաշինության վրա: Տընտեսապես թույլ երկրների առևտրական և վճարման բալանսի վատացումը հանգեցրեց վալյուտա-ֆինանսային լուրջ ցնցումների, ընդհուպ մինչև պետական սնանկացման և արտաքին վճարումների դադարեցման: Լեռնարդյունաբերության արտադրանքի շուկայի մասնակի բարելավմանը հակադրվում է գյուղատնտեսության արտադրանքի շուկայի զգալի վատացումը: Դրության վատացում է նկատվում այնպիսի երկրներում, ինչպես Ֆրանսիան և այնպիսի շուկաներում, ինչպես ավտոմոբիլների շուկան, որը մինչև վերջին ժամանակներս, ԱՄՆ-ի և Կանադայի սահմաններից դուրս չենթարկվեց գերարտադրության ճգնաժամի հարվածներին: Չնայած բոլոր երկրների և արդյունաբերության բնագավառների համար բացակայող ընդհանուր և միատեսակ վիճակի վատացմանը, առկա է ճգնաժամի դրսևորման բազմատեսակություն համաշխարհային կապիտալիստական տնտեսության ամենատարբեր ոլորտներում, որը անհերքելիորեն ապացուցում է, որ կապիտալիստական էկոնոմիկան թևակոխել է խոր ցնցումների և ճգնաժամերի շրջանը:*

*1958 թվականը կմտնի պատմության մեջ որպես նշանավոր ուղենիշ երկու սիստեմների մրցման մեջ: Սոցիալիստական էկոնոմիկայի հսկայական հնարավորությունները դեռ այնքան պայծառ կերպով չէին դրսևորվել, ինչքան այս տարի՝ սոցիալիզմի բոլոր երկրների արտադրության բուռն աճման մեջ: Իսկ կապիտալիստական էկոնոմիկան 1958 թվականին այնպիսի մի հարված ստացավ, որն ուժեղագույնն էր, սկսած համաշխարհային երկրորդ պատերազմի ժամանակից:*

---

# ԸՆԹԱՆԱԼ ՆՈՐ ԿՅԱՆՔԻ ՀՈՒՆՈՎ

*Կոմունիստական պարտիայի XXI արտահերթ համագումարը, որով սկսվեց կոմունիզմի ծավալուն կառուցման նոր ժամանակաշրջանը, մեր հետագա առաջընթացի հոյակապ ծրագիր մշակեց, որը դառնալու է մեծ առօրյա մեր Հայրենիքի բազմազգ ժողովուրդների կամքով ու ջանքերով: Մեր երկրում կոմունիզմի ծավալուն կառուցման դարաշրջանը ո՛չ միայն հզոր տեխնիկայի ու գիտության, նոր հայտնագործությունների ու գյուտերի դարաշրջան է, այլև մեծ գաղափարների ու խոհերի, մարդկային բարոյականության է՛լ ավելի բյուրեղացման ու վեհացման դարաշրջան: Ահա թե ինչու պարտիայի XXI համագումարը, քննության առնելով ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1959—1965 թվականների կոնտրոլ թվերի մասին ընկեր Ն. Ս. Խրուշչովի զեկուցումը, հատուկ ուշադրություն դարձրեց մասսաների գաղափարական դաստիարակության խնդիրներին, կոչ անելով շարունակել անհաշտ պայքարը բուրժուական գաղափարախոսության բոլոր տիպի ոտնձգությունների ու ռեցիդիվների դեմ, զարգացնել սովետական մարդկանց բնավորության վեհ գծերը՝ հայրենասիրությունն ու ինտերնացիոնալիզմը, ազնվությունն ու ճշմարտասիրությունը, նվիրվածությունը պարտիային ու ժողովրդին:*

*Կոմունիզմի դարաշրջանի մարդու ձևավորման, նրա ներքնաշխարհի է՛լ ավելի հարստացման գործում մեծագույն դեր է վստահված սովետական գրականությանը, որը միշտ հպարտորեն հնչեցրել է աշխատավոր մարդու անունը, դարձել նրա նվիրական իղձերի ու երազանքների թարգմանը: Սովետական մարդն իր կոփվածքով ու հոգևոր կերպարով սոցիալիզմի ամենակարևոր նվաճումներից մեկն է, սոցիալիստական հասարակարգի մեծագույն հարստությունը: Եվ, միանգամայն բնական է, որ յոթնամյակը մտավ մեր ժողովրդի կյանքի մեջ ո՛չ միայն որպես տնտեսության ու գիտության նոր վերելքի, արտադրողական ուժերի չտեսնված զարգացման պլան, այլև որպես սովետական մարդկանց կոմունիստական հատկությունների հետագա հարստացման, նրանց գաղափարական-քաղաքական աճի, աշխարհում ամենահումանիստական քաղաքացու հոգևոր աշխարհի ձևավորման պլան:*

*Կոմունիստական հասարակարգի զարգացման նոր ժամանակաշրջանի բնորոշ կողմն այն է, որ նրա նյութա-տեխնիկական բազայի ստեղծումը և այն կերտող մարդու դաստիարակությունը կատարվում են միաժամանակ: Ազատ աշխատանքը փշրել է մարդու ստեղծագործ ուժերի դարավոր կապանքները, տվել է նրան անսահման հնարավորություններ՝ ազնվորեն ծառայելու իր Հայրենիքին ու ժողովրդին: Ահա թե ինչո՛ւ ամենուրեք՝ գործարաններում ու հանքահորերում, ֆաբրիկաներում ու կոլտնտեսություններում, ուսումնական ու գիտական հաստատություններում սովետական մարդիկ յոթնամյակն ընկալեցին որպես իրենց կենսական, հարազատ գործը, որպես իրենց խոհերի ու երազանքների արտահայտություն:*



digitised by A.R.A.R.@

Այդ հոգեհարազատությունը, պարտիայի ու կառավարության առաջադրած յոթնամյակն իրագործելու հայրենասիրական մղումը առաջ բերեցին աշխատանքի նոր ձևեր ու մեթոդներ, որոնց առաջնեկը կոմունիստական աշխատանքի բրիգադաներն են, որոնք արդեն վեր են ածվել հզոր շարժման։ Այդ շարժումն ընդգրկել է Սովետական Միության արդյունաբերական բոլոր ձեռնարկությունները։

Այն առաջավոր բրիգադաներն ու բանվորները, որոնք հաստատակամորեն որոշել են աշխատել ու ապրել կոմունիստաբար, պարտավորվում են բարձրացնել ո՛չ միայն արտադրության, այլև իրենց կուլտուրական ու տեխնիկական զարգացման մակարդակը։ Իսկ դա նշանակում է, որ կոմունիզմի դարաշրջանը թևակոխած մարդը լինելու է անհամեմատ ավելի խստապահանջ կյանքի ու արվեստի նկատմամբ, ավելի անողոքաբար է պայքարելու անցյալի տխուր մնացուկների դեմ, ամենուրեք և ամեն ինչում հաստատելու է կոմունիստական բարոյականության վեհ սկզբունքները։ Ծնվում է մի նոր հերոս, որի խոր ու բազմակողմանի պատկերումը սովետական գրողի սրբազան պարտքն է։

Անդրադառնալով գրականության և արվեստի առաջնահերթ խնդրին, ընկ. Ն. Ս. Խրուշչովը նշում է, որ զարգացման գլխավոր գիծն այն է, որ գրականությունը և արվեստը միշտ անխզելիորեն կապված լինեն ժողովրդի կյանքի հետ, ճշմարտացիորեն արտացոլեն մեր սոցիալիստական իրականության հարստությունն ու բազմազանությունը, ցայտուն և համոզիչ կերպով ցույց տան սովետական ժողովրդի վերափոխիչ մեծ գործունեությունը, նրա ձգտումների ու նպատակների վեհությունը, բարոյական բարձր հատկությունները։ Գրականության և արվեստի հասարակական վսեմ խնդիրն է ժողովրդին պայքարի հանել կոմունիզմի կառուցման նոր հաջողությունների համար։

Ահա մեր գրականության մեծ ու պատվավոր ուղին։ Այս կենսալի սկզբունքների հանդեպ որքա՜ն ողորմելի ու սնանկ են թվում հին և նոր ռևիզիոնիստների պնդումներն այն մասին, թե միայն ոչինչ չարտահայտող արվեստը կարող է ազատություն տալ գրողին, որ գրողի քաղաքական ու փիլիսոփայական հայացքները որևէ նշանակություն չունեն ստեղծագործության համար, որ աշխարհայացքը մի բան է, գեղարվեստական երկը՝ այլ։ Արևմտյան Գերմանիայի գրականագետներից մեկը՝ Լոտար Ֆոն Բոլուսեկը նույնիսկ պնդում է, որ գոյություն ունի եվրոպական արվեստ, որը հեռու է մտքից ու գիտությունից, այլև չի ծառայում հասարակական շահերին ու հասարակական հիմնարկներին, զուրկ է որևէ նպատակից, և որ այն ամենը, ինչ դուրս է այդօրինակ արվեստի շրջանակներից, գրականություն չէ, իրավունք չունի գոյություն ունենալու։ Էլ չենք խոսում այն մասին, որ որոշ գրողներ, հատկապես Ֆրանսիայում, ստեղծել են յուրահատուկ մի ուղղություն, որի նպատակն է պատկերել միայն իրը, առանց մարդու, առանց հերոսի։

Կարելի է բերել և այլ օրինակներ՝ ցույց տալու, թե ինչպիսի բազմակողմանի նեխում է ապրում բուրժուական, այսպես կոչված, նպատակազուրկ արվեստը։ Եվ սա ինքնանեխում չէ, այլ տեղի է ունենում գաղափարական անհաշտ պայքարում, առաջավոր մտքերի հարվածների տակ, սոցիալիստական ռեալիզմի գրականության միջազգային հեղինակության աճման հետևանքով։ Մեր գրողների ու գրականագետների նպատակն է՝ պատկերել սովետական մարդուն՝ իր աշխատանքի ու կենցաղի վեհության մեջ, ցույց տալ նրա գաղափարական հասունությունը, միաժամանակ խարազանել այն ամենը, ինչ անհարիր է կո-



մունիստական բարոյականությանը, կրում է բուրժուական աշխարհից ժառանգած եսասիրության ու շահամոլության կնիքը, դեմ է հասարակական շահերին։

Կատարելով պարտիայի հավատարիմ օգնականի իր դերը, սովետական բազմազգ ընտանիքում ստեղծագործական որոշակի հաջողությունների են հասել նաև սովետահայ գրողները։ Այդ հաջողություններն ամփոփվեցին Հայաստանի Սովետական գրողների չորրորդ համագումարում, որը գրականության պարտիականության լենինյան սկզբունքների կենսահաստատության մի նոր վկայություն է։ Ուրախությամբ պետք է նշել, որ սովետահայ գրականության զարգացումը վերջին տարիների ընթացքում նշանավորվել է վճռական շրջադարձով դեպի արդիականության հարցերը, գրողները ավելի հաճախ են դիմում մեր մեծ առօրյայի հերոսին։ Կյանքը ցույց տվեց, որ այն գրողները կարողացան մնայուն երկեր ստեղծել, որոնք ի վիճակի են կարևորը զատել երկրորդականից, տեսնել դարաշրջանի առաջընթացը պայմանավորող ուժերն ու երևույթները, խիզախում են նորի հաստատման համար։ Իսկ նրանք, ովքեր փորձեցին իրենց երկերում ծուռ հայելու մեջ ցույց տալ մեր իրականությունը, սնվելով միայն բացասականի իրական կամ կեղծ ականքներից, ովքեր չկարողացան մեռնողը տարբերել ապրողից,— ձախողվեցին՝ մի անգամ ևս ապացուցելով այն ճշմարտությունը, թե առանց ժամանակի առողջ զգացողության, առանց գաղափարական հստակության ու հասարակական բարձր գիտակցության անհնար է քիչ թե շատ արժեքավոր երկ ստեղծել։

Սովետական Հայաստանի գրողների համագումարի ամբիոնից իրավացիորեն հնչեց նաև սեփական ուժերին վստահ ազնիվ անբավականության ձայնն այն մասին, որ չնայած ձեռք բերած հաջողություններին, գրականությունը դեռևս ետ է մնում կյանքից, մեծ պարտք ունի ժողովրդին, իր ողջ ուժերը չի մոբիլիզացրել մեր դարաշրջանի գեղարվեստական տարեգրությունը արվեստի նոր երկերով հարստացնելու համար։ Առանձնապես այդ պարտքը զգալի է բանվոր դասակարգի կյանքի ու աշխատանքի պատկերման գործում։

Սովետական տարիներին մեր ռեսպուբլիկան դարձել է արդյունաբերական երկիր, աճել են բանվորական, ինժեներա-տեխնիկական հիանալի կադրեր, առաջավոր գիտությանն ու տեխնիկային տիրապետած մարդիկ։ Անճանաչելիորեն փոխվել է մեր Հայրենիքի դեմքը, նրա երբեմնի լեռնային խստությանը հաղորդելով քնքշություն ու կենդանություն։ Պատմական այդ մեծ պրոցեսը, որի ընթացքում ստեղծվել են ոչ միայն նորանոր գործարաններ ու ֆաբրիկաներ, այլև մարդկային հոյակապ բնավորություններ, սոցիալիստական կենսաձևի նոր երևույթներ, մարդկային նոր փոխհարաբերություններ, ցավոք սրտի, դեռևս իրենց արժանի արտացոլումը չեն գտել սովետահայ գրականության մեջ։ Այդ ուղղությամբ առայժմ հաջող կամ անհաջող փորձեր են կատարում երիտասարդ հեղինակները, որոնց կուտակած հետաքրքիր ու հարուստ նյութը հաճախ մնում է հում վիճակում գեղարվեստական վարպետության, գրական հարուստ փորձի ու բարձր կուլտուրայի պակասի հետևանքով։

Մեր երկրում ստեղծվել են բոլոր պայմանները, որպեսզի սովետական արվեստը և գրականությունը առաջինը լինեն աշխարհում ո՛չ միայն բովանդակությամբ, այլև գեղարվեստական ուժով ու վարպետությամբ։ Պարտիա-

digitised by A.R.A.R.@

կան այս պահանջը դարձել է արդեն օրակարգի հարց, որի իրագործմանը պետք է իրենց ողջ ուժերը նվիրաբերեն նաև սովետահայ գրողները։ Այս տեսանկյունից մոտենալով գրականության արդի վիճակին, չի կարելի չնշել, որ ոչ բոլոր գրողներն են կանգնած վարպետության այն մակարդակին, որ պահանջում է կոմունիզմի դարաշրջանը թևակոխած, աշխատանքի ու արվեստի հաճույքը ճաշակած ընթերցողը։

Պետք է ընդգծել այն իրողությունը, որ բոլոր գրողներին չէ, որ հաջողվում է տեսնել այն կենսական կոնֆլիկտը, որի մեջ ավելի խոր և ճշմարտացիորեն են արտացոլվում մեր ժամանակակցի բնավորության հիմնական գծերը, նրա կատարած գործի մեծությունը, նրա ստեղծած իրականության համաշխարհային նշանակությունը։ Մենք ընդգծում ենք այս հանգամանքը, որովհետև շատ վեպերում հերոսների կատարած աշխատանքը հազիվ օրինակելի է միայն բրիգադի, ցեխի սահմաններում, ուրախություն է պատճառում փոքր թվով մարդկանց, զուրկ է հասարակական հնչեղությունից։ Աշխատանքի նշանակության այս նեղացումը առաջին հերթին հետևանք է գրողի տեսադաշտի նեղության, նրա մտածողության սահմանափակության։ Սրանք այնպիսի պակասություններ են, որոնք հեշտությամբ դուռ են բացում վաղուց մաշված սխեմաների առջև, իսկ սխեմաներով, մերկապարանոց դատողություններով չի կարելի օգնել ընթերցողին՝ ավելի խոր գիտակցելու կոմունիստական նոր հարաբերությունների նշանակությունը, կոլեկտիվի ուժը, չի կարելի համոզել նրան, թե որն է գեղեցիկն ու օրինակելին, որը՝ դատապարտելին։ Գաղտնիք չէ, որ այլանդակը երբեմն այնպես է փետրազարդվում, որ մոլորեցնում է անփորձ երիտասարդին՝ շեղելով նրան բարոյական ճիշտ ճանապարհից։ Անհրաժեշտ է զինել մարդկանց, հատկապես երիտասարդությանը, կյանքի երևույթներն ինքնուրույն ճանաչելու ունակությամբ։

Այդ խնդրում մեծ անելիքներ ունի նաև պոեզիան։ Հաղթահարելով մերկապարանոց հռետորականությունն ու պարադայնությունը, միաժամանակ պահպանելով անցյալի առողջ ու կենսական տրադիցիաները, սովետահայ պոեզիան նույնպես շոշափելի շրջադարձ կատարեց դեպի արդիականության այրող հարցերը, երգեց մարդուն՝ իր կոնկրետ աշխատանքում, փառաբանեց նրա անցած հերոսական ուղին, երգեց նրա սրտի քնքշությունն ու հումանիզմը, միաժամանակ առատորեն նյութ քաղեց մարդու զգացմունքներից և շռայլորեն նորից վերադարձրեց նրան։ Սակայն, պետք է խոստովանել, որ դեռևս քիչ չեն, այսպես կոչված, անձնական լիրիկայի անվան տակ հրապարակ եկող ճիչերը, քաղքենիական անցողիկ մտորումներ պարունակող, հասարակական արժեքից զուրկ ոտանավորները։ Որոշ բանաստեղծներ, տարեց թե երիտասարդ, առանց հոգնելու, բայց ընթերցողին ձանձրույթ պատճառելով՝ շարունակում են արցունք թափել մանկության արահետների վրա, մենավոր ուռիների շվաքում։

Երբեք չպետք է մոռանալ, որ այժմ մեզ հարկավոր են քաղաքական բարձր պաթոսով գրված, մեր դարաշրջանի հերոսականությանը վայել բանաստեղծություններ ու պոեմներ, որոնք ազնիվ մղումներ առաջացնեն մարդկանց հոգում, օգնեն նրանց՝ դիմելու նորանոր սխրագործությունների, հարստացնեն նրանց անձնական և հասարակական կյանքը մեծ գաղափարներով ու զգացումներով։ Այս պահանջն ինքնին արդեն խոսում է այն մասին, որ կոմունիզմի դարաշրջանը թևակոխած սովետական մարդը ավելի շատ



կարիք ունի իսկական լիրիկայի, որովհետև նա դարձել է առավել զգացմունքառատ, առավել լայն ու խոր է նրա ապրումների ու երազանքների աշխարհը։

Վերջին տարիներին որոշակի աշխուժություն է նկատվում նաև դրամատուրգիայի ասպարեզում։ Ստեղծվել են մի շարք պիեսներ, որոնք հաջողությամբ բեմադրվում են ռեսպուբլիկայի և միութենական թատրոններում։ Սակայն այդ աշխուժությունը դեռ շատ է հեռու այն իսկական նվաճումներից, որ պարտավոր են ձեռք բերել մեր դրամատուրգները։ Դրա համար պարտիան ու կառավարությունը ստեղծել են բոլոր հնարավորությունները։ Չի կարելի նորմալ և ընդունելի համարել այն տենդենցը, երբ շատ պիեսներ կառուցվում են անիմաստ թյուրիմացությունների, էժանագին ծիծաղաշարժության վրա։

Փոխանակ թափանցելու կյանքի երևույթների խորքը, տեսնելու գոյություն ունեցող իսկական կոնֆլիկտները, դրամատուրգներից ոմանք ընթանում են հեշտ ճանապարհով, ամեն կերպ աշխատում են զվարճացնել հանդիսատեսին, մոռանալով, որ կատակերգության միակ նպատակը հանդիսատեսից ծիծաղ կորզելը չէ։ Ահա թե ինչու շատ հաճախ մարդը մղվում է ետին պլան, փոխադարձաբար ոչնչացվում են նրա դրական ու բացասական գծերը և հանդիսատեսի առջև կանգնում են անկիրք ու անկյանք կերպարներ, զուրկ ինքնուրույնությունից ու անհատականությունից։ Ինչպես ամեն մի երկ, այդ թվում նաև դրամատիկական ստեղծագործությունը, կարող է դարեր ապրել և միշտ էլ մնալ երիտասարդ, եթե այն դարաշրջանի իրական և ճշմարիտ արտացոլումն է։ Սրանով է բացատրվում Շեքսպիրի, Շիլլերի, Մոլիերի, Օստրովսկու, Սունդուկյանի, Շիրվանզադեի ստեղծագործությունների երկարակեցությունը, նրանց ներգործող մեծ ուժն ու էսթետիկական չխամրող հմայքը։

Իսկ ո՞րն է մեր ելակետը այս խնդրում։

«Կազմակերպելով գաղափարական աշխատանքը,— ասում է ընկեր Խրուշչովը,— մենք ելնում ենք այն բանից, որ կոմունիստական բարոյականության դաստիարակումը պետք է կապված լինի կոմունիստական շինարարության խնդիրների լուծման հետ։ Մենք ո՛չ միայն տեսականորեն, այլև կենսական մեծ փորձով յուրացրել ենք գիտական կոմունիզմի այն խոր ճշմարտությունը, որ մարդկանց կյանքի պայմանների ու հայացքների փոփոխության մեջ վճռական դեր է խաղում ռևոլյուցիոն պրակտիկան։ Դաստիարակության լավագույն դպրոցը, ամենախիստ ուսուցիչը՝ կյանքն է, մեր սովետական իրականությունը»։

Խնդիրների այս բարձունքից դիտելով մանկա-պատանեկան գրականության վիճակը, չի կարելի չանհանգստանալ։ Բանն այն է, որ մանկական գրողներից շատերը կտրված լինելով կյանքից, անվերջ հեքիաթներ ու լեգենդներ են գրում, առանց հաշվի առնելու, որ դրանցով անհնար է մեծ սկզբունքների պատրաստ քաղաքացիներ դաստիարակել, սեր առաջացնել դեպի աշխատանքը, զարգացնել նրանց ընկերասիրության, ինտերնացիոնալիզմի զգացումը, կոփել դժվարություններ հաղթահարելու նրանց կամքը։ Արդիականությունը, իր բարդ ու բազմապիսի երևույթներով, պետք է ներխուժի նաև մանկական գրականության մեջ, դառնա նրա ոգեշնչման միակ և հարուստ աղբյուրը։ Միայն այս դեպքում գրականությունը կարող է կատարել իր ակտիվ դերը կոմունիստական հասարակարգի ապագա կառուցողների աշխատանքային դաստիարակության մեծ ու պատվավոր գործում։

digitised by A.R.A.R.@

Գրողների համագումարում, ինչպես նաև համագումարին նախորդած
բանավեճերում ու ելույթներում իրավացիորեն նշվեց, որ գրական քննադա-
տությունն ու գրականագիտությունը զգալի աշխատանք են կատարել ինչպես
անցյալի ժառանգության մի շարք պրոբլեմների մարքսիստական մեկնաբան-
ման, այնպես էլ արդի գրականության պրոցեսների լուսաբանման ու գնա-
հատման գործում: Դրա հետ մեկտեղ նշվեցին նաև քննադատության թերու-
թյուններն ու բացերը, պահանջվեց, որ քննադատներն ավելի լրջորեն ուսում-
նասիրեն գրականության զարգացման ընթացքը, անաչառ ու սկզբունքային
դիրքերից մոտենան գրական նոր երկերի գնահատմանը: Այս կամ այն երկը
գնահատելիս քննադատի միակ ելակետը պետք է լինի նրա գաղափարական
և գեղարվեստական մակարդակը, այն, թե տվյալ ստեղծագործությունն ի՞նչ
չափով կարող է օգնել մասսաների կոմունիստական դաստիարակությանը:

Գաղտնիք չէ, որ մեր քննադատները որևէ գիրք գնահատելիս երբեմն մո-
ռանում են իրենց սկզբունքայնությունը, հանդես չեն գալիս ապոլիտիկության,
ազգային սահմանափակության և այլ հիվանդագին երևույթների դեմ: Քննա-
դատությունը որոշ չափով հանդուրժող է դարձել նաև գրական խոտանի նկատ-
մամբ: Գրողի դեմքին ու դիրքին նայելը, ապա նոր միայն գրքի մասին խո-
սելը, որպես «քննադատության» ձև, դեռևս լիովին արմատախիլ չի արվել:
Գրական մամուլի էջերում տպագրվում են մակերեսային ու հակասական
հոդվածներ, որոնք չեն կարող որևէ կերպ օժանդակել գրականության առջև
կանգնած պրոբլեմների լուծմանը: Քննադատությունը դեռևս անբավարար է
մեկնաբանում գեղարվեստական երկերը, միշտ չէ, որ կարողանում է ճիշտ ու
համոզիչ ընդհանրացումներ կատարել:

Առանձնապես անբավարար է մեր ամսագրերում և թերթերում գետեղվող
գրախոսությունների վիճակը: Գրախոսականը պետք է դառնա քննադատու-
թյան այն մարտական ժանրը, որին վիճակված է առաջինը գնահատել նոր եր-
կը, առաջինը ցույց տալ նոր խոսքի արժանիքներն ու թերությունները՝ ճիշտ
կողմնորոշելով ընթերցողին: Կա մի այլ, տհաճ երևույթ ևս, որը նույնպես
պետք է վերացնել: Երբեմն գովերգում են միջակ, գորշ ստեղծագործություն-
ները կամ վատաբանվում թերություններ ունեցող, սակայն իր ամբողջության
մեջ հաջողված երկը: Ինչ խոսք, որ այս տիպի քննադատական ծայրահեղու-
թյունները նույնպես չեն կարող օգնել ոչ գրողին, ոչ էլ ընթերցողին:

Քննադատության մասին խոսելիս մենք չենք կարող չանդրադառնալ նաև
արդիականության ըմբռնման հարցերին: Եթե վերցնենք գրական քննադա-
տության վիճակը միայն հետպատերազմյան շրջանում, մենք կտեսնենք, որ
պարտիայի հայտնի որոշումները, կենտրոնական մամուլի ելույթները խորա-
պես օգնել են նաև քննադատներին՝ ճիշտ հասկանալու սովետական գրակա-
նության խնդիրները, զինել են նրանց մարքսիստական էսթետիկայի կուռ ու
հուսալի սկզբունքներով, ցույց են տվել, թե որն է գրական երկի գնահատ-
ման չափանիշը: Չնայած դրան, որոշ քննադատներ սկսեցին կոնֆլիկտներ
որոնել լավի ու լավագույնի միջև (շրջանցելով բացասական երևույթները),
ինչ-որ շինծու սխեմաներ հորինել՝ կյանքի գունազարդմանը էսթետիկական
հիմնավորում տալու համար, ապա, չկարողանալով ճիշտ հասկանալ թե-
րությունների պարտիական քննադատության նպատակը, բռնեցին ամեն ինչ
մրոտելու ուղին: Իսկ բոլորովին վերջերս նորից փորձեր արվեցին հարու-



թյուն տալու «դիստանցիայի» տեսությանը, որը պահանջում է գրողից՝ միշտ
ետ նայել, չքայլել ժամանակին համընթաց, գրել արդեն անցյալ դարձած
դեպքերի մասին: Սրանք պատահական երևույթներ չեն, այլ հետևանք են
բուրժուական գաղափարախոսության ազդեցության, որի դեմ պայքարելը
քննադատության առաջնահերթ խնդիրն է:

Այս տեսակետից մոտենալով հարցին, պետք է շեշտել, որ արդիականու-
թյան համար պայքարը միաժամանակ պայքար է նաև ճշմարտության հա-
մար, և, միանգամայն բնական է, որ Հայաստանի գրողների չորրորդ համա-
գումարը քննադատներից նույնպես պահանջեց ավելի ամուր կապվել կյան-
քին, խորապես հասկանալ մեր օրերի վեհությունը: Մենք այժմ կանգնած ենք
գիտության մեծագույն վերափոխումների շեմքին, երբ իրականություն են
դառնում մարդկության ամենախիզախ երազանքները: Անհրաժեշտ է, որ գրող-
ները տիրապետեն գիտության, տեխնիկայի ու կուլտուրայի նորություննե-
րին, գրեն այնպիսի երկեր, որոնց ապագա ընթերցողը կարողանա ճիշտ
պատկերացում կազմել մեր ժամանակակիցների ո՛չ միայն հոգևոր, այլև
տնտեսական-տեխնիկական հզորության մասին, զգան, թե մեր ինչ թռիչք-
ներ են ունեցել, ինչպիսի դժվարություններ են կրել նրանք մարդկության ճա-
կատագրի համար մղված պայքարում:

Արդիականության պահանջը դեռևս ոչ բոլորի համար է պարզ ու հասկա-
նալի: Ոմանք կարծում են, թե արդիականությունը բացառում է ոչ հեռավոր
դեպքերի մասին գրելը, ուրիշները արդիականության սահմանները հասցնում
են մինչև միջնադար: Մինչդեռ գրել ժամանակակից երկ, չի նշանակում ար-
տացոլել այսօրն իր ստատիկ վիճակում, չտեսնել այդ երևույթի երեկն ու
վաղը: Էսթետիկական այդ պահանջը ենթադրում է դարաշրջանի ոգու պատ-
կերում, հասարակության շարժիչ ուժերի արտացոլում: Դժվար է նշել որևէ
խոշոր երկ, որ չկրի գրողի ապրած օրերի կնիքը: Նույնիսկ պատմական երկե-
րի ստեղծման հիմնական շարժառիթը ժամանակի այրող խնդիրներն են եղել:
Հետևաբար, սովետական ընթերցողը իրավունք ունի գրողներից պահանջելու
այնպիսի ստեղծագործություններ, որոնք հագեցած լինեն մեր օրերի շնչով,
սովետական մարդկանց հերոսական անցյալի դրվագներով ու ապագայի պայ-
ծառ երազանքներով: Հետևելով Գորկու, Մայակովսկու և Չարենցի տրադի-
ցիաներին, ստեղծագործորեն յուրացնելով անցյալի գրականության հարուստ
փորձը, սովետահայ գրողները չպետք է մոռանան ռեալիստական արվեստի
հիմնական դրույթներից մեկը.

Կարո՞ղ ես քեզ կոփել այնպես, որ քո մեջ ամփոփես անցյալը,
Բայց և լինել ներկայում նոր, քան նորերը բոլոր:

Չարենցն իրավացի էր, երբ գրողին համարում էր իր դասակարգի առա-
ջամարտիկը, որը կոչված է ո՛չ միայն արձագանքելու կյանքի նոր կանչերին,
այլև նպաստելու, որ դրանք վերածվեն համաժողովրդական սիմֆոնիայի:

Արդիականության հարցը անշուշտ առնչվում է սոցիալիստական հայ
ազգի անցյալի կուլտուրական ժառանգության օգտագործման հետ: Բանն
այն է, որ որոշ գրականագետներ ու փիլիսոփայության բնագավառի աշ-
խատողներ փորձում են ազգային կյանքը մեկուսացնել մյուս ժողովուրդների
կյանքից, բացառապես ընդգծել բնավորության այն կողմերը, որոնցով տվյալ
ժողովուրդը տարբերվում է մյուսից: Այդ տիպի մտածողներին բոլորովին ան-

digitised by A.R.A.R.@

հասկանալի է ինտերնացիոնալիզմի ոգին ազգային բնավորությունների մեջ:
Ավելին, նրանք հակված են ետին պլան մղվող, արդեն իր դարն ապրող կեն-
ցաղային երևույթները ներկայացնել որպես կարևորը ազգային կյանքում,
գրականության մտահոգության միակ առարկան: Սրանք ազգային սահմանա-
փակության ռեցիդիվներ են, որոնց դեմ նույնպես պետք է հետևողական պայ-
քար մղել: Այս առումով բնորոշ օրինակ է Ռ. Կարապետյանի «Գրականության
ազգային բնույթի մասին» հոդվածը («Սովետական Գրականություն» № 3,
1957 թ.), որի մեջ այնքան ներդաշնակ են մտքի սահմանափակությունն ու
մշուշապատ տրամաբանությունը, որոնք և հեղինակին հանգեցրել են ազգա-
յին սահմանափակության: Պարզ պատկերացում չունենալով ձևով ազգային,
բովանդակությամբ սոցիալիստական կուլտուրայի սկզբունքի մասին, չկա-
րողանալով դուրս գալ միամիտ հասկացված ազգային կյանքի, ազգային բնա-
վորությունների, ազգային կուլտուրայի շրջանակներից, Կարապետյանը կամա
թե ակամա անտեսել է սոցիալիստական ազգերի ստեղծած գրականություննե-
րի նոր որակը, նրանց կյանքում ու հոգևոր աշխարհում տեղի ունեցած փո-
փոխությունները, որոնք ավելի են մերձեցրել նրանց, դարձնելով բազմազգի,
բայց միասնական մի ժողովուրդ: Սովետահայ գրական քննադատության կա-
րևոր խնդիրներից մեկն էլ անհաշտ պայքարն է ազգային սահմանափակու-
թյան ու տիրացուականության բոլոր տիպի ու գույնի ռեցիդիվների դեմ:

Վերջին ժամանակներս որոշ քննադատներ նորից ցանկացան բանավեճ
սկսել սովետական գրականության դրական հերոսի հասկացողության շուրջը:
Թվում էր, թե այլևս վիճելու հարց չկա, թե ինչպիսին պետք է լինի սովետա-
կան մարդը կյանքում և գրականության մեջ, դրա օրինակներն անթիվ են:
Ինչպես ամեն տեղ, գրականության մեջ էլ սխեման, դոգմատիզմը վնասակար
են: Յուրաքանչյուր հերոսի կերպարը պետք է դիտել և գնահատել կոնկրետ
գործունեության, կոնկրետ կոլեկտիվի մեջ: Նույն պայմաններում երկու գրա-
կան հերոսներ կարող են տարբեր ապրումներ ունենալ. մեկը կարող է կար-
ճատև տատանումների մեջ ընկնել դժվարության ժամանակ, մյուսը՝ կրծքա-
բաց դիմավորել ամեն ինչ՝ նպատակին հասնելու համար: Եվ, չնայած այդ
տարբերությանը, երկուսն էլ կարող են սիրելի լինել: Հետևաբար անօգուտ են
այն վեճերը, թե դրական հերոսը պե՞տք է բացասական գծեր ունենա, թե ոչ:
Դրական կերպարի անհատական և հասարակական վարքագծի արժեքը որոշ-
վում է բարոյականության այն նորմերով, որ բնորոշ է սովետական հասարա-
կարգին: Ըստ որում, բնավորության այդ գծերը պետք է դրսևորվեն տիպա-
կան հանգամանքներում: Սովետական գրականության հերոսի և հասարակու-
թյան միջև վերացված են անտագոնիստական հակասությունները: Պատմու-
թյան մեջ առաջին անգամ մարդը հանդես է գալիս միջավայրի հետ ունեցած
ներդաշնակությամբ: Այստեղից պարզ է, որ բավական չէ արդիական թեմա
շոշափելը, անհրաժեշտ է, որ մարդիկ նույնպես լինեն արդիական, օժտված
կոմունիզմի շինարարի խոհերով ու բարոյական մաքրությամբ: Սովետահայ
գրականության կարևորագույն խնդիրն է ցույց տալ հանրօգուտ աշխատան-
քում աճող մարդուն, որը դաստիարակվում է կոլեկտիվիզմի և աշխատասիրու-
թյան, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի և հայրենասիրության, նոր
հասարակարգի բարոյականության վեհ սկզբունքների ոգով, մարքսիզմ-լենի-
նիզմի ոգով: Ահա այս մեծ քաղաքացին է, որ պետք է դառնա մեր գրքերի
գլխավոր հերոսը:



Վերը ասածից բնավ չի հետևում, թե մեր օրերում բացասական կերպար-
ների ստեղծումը սոցիալիստական ռեալիզմի գրականության խնդիրը չէ: Եթե
բացասականի մերկացումը ինքնանպատակ չէ, կատարվում է դրականի ճանա-
պարհը հարթելու և դրականը հաստատելու նպատակով, ապա դա անհրաժեշտ
է և օգտակար: Պարտիան դատապարտեց «անկոնֆլիկտայնության» թեորիան
հենց նրա համար, որ փորձեր էին արվում գրականությունը հեռու պահել ան-
ցյալի վերապրուկները խարազանելու կարևոր խնդրից, շրջանցում էր կյանքի
իրական հակասությունները: Պարտիան դատապարտեց իրականության ինչ-
պես գունազարդման, այնպես էլ սևացման տենդենցները, պաշտպանելով
կյանքի արտացոլման լենինյան ճշմարտության սկզբունքները:

Մեր երկրում կոմունիզմի կառուցումը մեծագույն վերափոխություններ է
առաջացնում նաև մարդկանց հոգևոր աշխարհում: Հասարակական նոր կյանքի
բուռն զարգացումը զերծ չի լինելու հակասություններից, իսկ մարդիկ՝ թերու-
թյուններից: Սովետական գրողը, ինչպես միշտ, այս նոր ժամանակաշրջանում
ևս, պետք է հավատարիմ մնա կյանքի ճշմարտությանը, արտացոլի կարևորը
և խարազանի այդ կարևորի առաջընթացը արգելակող բացասականը: Միայն
գաղափարական հստակությունը կարող է հաստատուն հող ստեղծել իսկական
տաղանդի զարգացման համար: Չկա մեծ արվեստ, առանց մեծ գաղափարի:
Սա մի ճշմարտություն է, որը չի կարելի մոռացության տալ: Հենց այստեղ է
հանդես գալիս գրողի պարտականությունը, նրա ընդհանրացման ուժը, դարա-
շրջանի ոգին արտահայտելու նրա կարողությունը:

Առաջ քաշելով բարձր գաղափարայնության խնդիրը՝ մարքսիստական
էսթետիկան միաժամանակ պահանջում է մեծ վարպետություն: Կարևոր գաղա-
փարի և կենսական ձևի ներդաշնակությունը միշտ էլ եղել է մեծ արվեստա-
գետների մտահոգության առարկան: Սխալվում են այն ընկերները, որոնք
կարծում են, թե վարպետությունը տաղանդի գաղափարայնությունից անջատ
ինչ-որ հատկություն է, որը իբր դրսևորվում է միայն գրելու ժամանակ: Մինչ-
դեռ վարպետությունը սկսվում է նյութի ուսումնասիրումից և ավարտվում վե-
պի կամ բանաստեղծության վերջին տողով: Այդ ժամանակաընթացքում գրո-
ղին մտահոգում են կենսական նյութի ընտրությունը, երկի կոմպոզիցիոն
ամբողջականությունը, սյուժեի տրամաբանական զարգացումը, հերոսների
տիպականացումը և բազմաթիվ այլ հարցեր, որոնց հաջող լուծումը միաժա-
մանակ պահանջում է և՛ բարձր գաղափարայնություն, և՛ մեծ վարպետու-
թյուն: Մենք քիչ դեպքեր չգիտենք, երբ վարպետության պակասի հետևանքով
տուժել է ո՛չ միայն նյութը, այլև երկի գաղափարը: Գեղարվեստական ցածր
մակարդակը հաճախ իր հետ բերում է նաև գաղափարական դժգունություն,
երբեմն էլ լուրջ սայթաքումներ: Այնպես որ ձախողված դրական կերպարը,
որքան էլ անսխալ մտքեր արտահայտի նա, ձախողված է նաև իդեապես: Այս
հանգամանքը երբեմն մոռացության են տալիս գրողները, որոնց երկերը հա-
ճախ ուռչում են ոչ թե մտքերի առատությունից, այլ դրանց պակասից սըն-
վող շատախոսությունից:

Կոմունիստական պարտիայի XXI համագումարը, նշելով սովետական ժո-
ղովրդի անօրինակ հաջողությունները, արդյունաբերության, գյուղատնտեսու-
թյան ու գիտության ասպարեզներում, միաժամանակ հաստատեց այն իրո-
ղությունը, որ մեր երկրում ձևոք է բերվել բոլոր ազգերի ու ազգությունների

digitised by A.R.A.R.@

կուլտուրայի չտեսնված բարգավաճում։ Այդ բարգավաճման փառավոր ուղին է անցել նաև Սովետական Հայաստանը, պատմականորեն կարճ ժամանակամիջոցում դառնալով զարգացած արդյունաբերության ու տեխնիկայի ռեսպուբլիկա։ Այդ ամենը ձեռք են բերել այն մարդկանց հերոսական աշխատանքով, որոնց հավատարմությամբ ու աղնվորեն ծառայում է սովետահայ գրականությունը։ Սկսվել է պատմության մեջ չտեսնված ստեղծագործությունների մի նոր դարաշրջան՝ կոմունիստական հասարակարգի ծավալուն կառուցման դարաշրջանը, որի խոր ու բազմակողմանի պատկերումը և հավերժացումը գալիք սերունդների համար սովետական յուրաքանչյուր գրողի սրբազան պարտքն է, նրա պարտիականության ու ստեղծագործական իսկական աղատության ազնիվ չափանիշը։

---

# ՂԵԿԱՎԱՐԵԼ՝ ԵԼՆԵԼՈՎ ՆՈՐ ԽՆԴԻՐՆԵՐԻՑ

## Բ. ՍԱՐԳԻՍՈՎ

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXI համագումարը կարևոր ուղենիշ հանդիսացավ մեր պարտիայի, սովետական ժողովրդի, ամբողջ առաջավոր մարդկության կյանքում։ Այն նշանավորեց մեր երկրի զարգացման նոր շրջանի՝ կոմունիստական հասարակարգի ծավալուն շինարարության ժամանակաշրջանի սկիզբը, և ժողովուրդն իրավամբ այն անվանեց կոմունիզմ կառուցողների համագումար։

Պարտիայի XXI համագումարում ընկեր Ն. Ս. Խրուշչովի փայլուն, խորապես բովանդակալից զեկուցումը, նրա եզրափակման խոսքը և համագումարի որոշումները կոմունիստական շինարարության հոյակապ խնդիրների մշակման տնտեսական և տեսական մասշտաբների մեծությամբ, կազմակերպական թափի և տեսական հզորության օրգանական զուգորդմամբ դասվում են մեր ժամանակի և մասնավորապես Սովետական Միության Կոմունիստական պարտիայի ամենանշանակալից փաստաթղթերի շարքը։

Դրանց մեջ արտացոլված է մեր պարտիայի և սովետական ժողովրդի գործունեության մի ամբողջ պատմաշրջան, հանրագումարի են բերված մեր երկրում սոցիալիզմի հաղթանակի փառահեղ արդյունքները, տրված է տնտեսության, քաղաքականության, գաղափարական աշխատանքի և միջազգային հարաբերությունների ասպարեզում պարտիայի և ժողովրդի բազմաբովանդակ և նպատակասլաց գործունեության գիտականորեն հիմնավորված ծրագիրը։

Պարտիական կազմակերպությունների աշխատանքի համար մեծ նշանակություն ունեն XXI համագումարի որոշումներում ձևակերպված դրույթները երկրի կյանքում ՍՄԿՊ ղեկավար դերի հետագա ուժեղացման մասին։

Վերջին տարիներում պարտիական կազմակերպությունների ամբողջ գործունեությունն ընթացավ ՍՄԿՊ XX համագումարի որոշումների կենսագործման նշանաբանով, որով նշանավորվեց լենինյան գաղափարների, պարտիայի մասին լենինյան ուսմունքի, պարտիական և պետական ղեկավարության լենինյան սկզբունքների հաղթանակը։ Այդ տարիներին, հատկապես, փայլուն կերպով դրսևորվեց Կոմունիստական պարտիայի ղեկավարող և ուղղություն տվող դերը, մասսաների մեջ տարվող հսկայական կազմակերպական և դաստիարակչական աշխատանքների ստեղծագործական բնույթը, որը պսակեց տնտեսության և կուլտուրայի բոլոր բնագավառներում ձեռք բերված հոյակապ հաջողությունները։

Ջախջախելով և ճանապարհից դեն շպրտելով Մալենկովի, Կագանովիչի, Մոլոտովի, Բուլգանինի և Շեպիլովի հակապարտիական խմբակը, պարտիան

digitised by A.R.A.R.@

իր լենինյան Կենտկոմի ղեկավարությամբ մեր երկիրը համարձակ կերպով տանում է դեպի կոմունիզմ։

Անցած հնգամյակը, ըստ էության, դարձավ այն մեծ պատմաշրջանի նախադուռը, որն այժմ թևակոխում է Սովետական Միությունը։ ՍՍՌՄ-ում տնտեսական և կուլտուրական շինարարության փառահեղ արդյունքները և այդ արդյունքների վրա հենվող մեր երկրի զարգացման յոթնամյակի ոգևորիչ պլանները հանդիսանում են սոցիալիզմի և կոմունիզմի գործում Կոմունիստական պարտիայի մարքսիստական-լենինյան ղեկավարության հաղթանակը։

Մեր հասարակության զարգացման օրինաչափությունն այն բանի մեջ է, որ սոցիալիզմից դեպի կոմունիզմ անցնելուն զուգընթաց ավելի ու ավելի է աճում Կոմունիստական պարտիայի դերը։ Այն հատկապես կբարձրանա ներկա էտապում՝ կոմունիզմի ծավալուն կառուցման շրջանում։ Զարգացնելով և ստեղծագործաբար կիրառելով մարքս-լենինյան տեսությունը, բազմակողմանիորեն ճանաչելով սովետական հասարակության զարգացման տենդենցները, պարտիան բացահայտում է երկրի տնտեսության հետագա զարգացման աճող պահանջմունքները, նախանշում և հաջողությամբ կենսագործում է կոմունիստական շինարարության ծրագիրն ու հերթական խնդիրները, իր ճանապարհից հեռացնելով այն ամենը, ինչ իր դարն ապրել, հնացել է, ինչ արգելակում է մեր առաջընթացին, լայն ճանապարհ բանալով այն նորի, առաջավորի համար, որ ծնունդ է առնում մասսաների ստեղծագործությամբ։

ՍՄԿՊ XXI համագումարի աշխատանքում ակնառու կերպով բացահայտվեց, թե որքան են աճել պարտիայի, նրա յուրաքանչյուր կազմակերպության ուժերը, ինչպես է բարձրացել պարտիայի հեղինակությունը, նրա ղեկավար դերը երկրի կյանքում, ինչպիսի ուժով է հորդում պարտիայի գաղափարական կյանքը, ինչպիսի բարձր ստեղծագործական վերելք և մեծագույն ակտիվություն է տիրում նրա բոլոր կազմակերպություններում։

Պարտիայի բազմակողմանի և բեղմնավոր գործունեությունը մեզ սովորեցնում է, որ երբ առաջանում են նոր, առավել բարդ խնդիրներ, պարտիան ամենից առաջ հոգում է պարտիական կազմակերպությունների, նրանց բոլոր օղակների ամրապնդման մասին, հոգում է, որպեսզի առաջիկայում ևս պարտիական շարքերը լինեն միշտ մարտունակ և մոբիլիզացիոն վիճակում, որ է՛լ ավելի բարձրանա կոմունիստների դերը որպես մասսաների ղեկավարների և կազմակերպիչների։

Յոթնամյա պլանի կատարման գործում XXI համագումարի որոշումների, պարտիական կազմակերպությունների առաջ դրված գլխավոր խնդիրներից մեկը մասսաների քաղաքական և աշխատանքային ակտիվությունը գլխավորելն է։ Մեր երկրի զարգացման ներկա փուլում, երբ աշխատավորական լայն խավերի պատմական գործունեության մասշտաբների մեծացման հետ միասին ավելի է հարստանում կոմունիստական շինարարության պրակտիկան, մասսաների պրակտիկ փորձը, առավել չափով կարևոր է դառնում Կոմունիստական պարտիայի այն սկզբունքը, որն արտահայտված է լենինյան հայտնի ֆորմուլայի մեջ՝ մասսաների առջևից գնացողը, նրանց գլխավորողը ո՛չ միայն սովորեցնում է մասսաներին, այլև սովորում է մասսաներից։ Դա նշանակում է, որ ամենից առաջ պարտիական կազմակերպությունները պետք է ավելի շատ, ավելի խոր և բազմակողմանի ուսումնասիրեն և օգտագործեն մասսաների փորձը, որի մեջ արտահայտվում է մեր ստեղծագործ ժողովրդի



կոլեկտիվ իմաստնությունը կոմունիզմի հաղթանակն արագացնելու նրա բուռն ձգտումը։ Մասսաների փորձի, աշխատավորների ստեղծագործական կոլեկտիվ մտքի վրա հենվող պարտիական կազմակերպական և քաղաքական աշխատանքն առավել կենսունակ ու արդյունավետ է, նորություններ է մտցնում պարտիական աշխատանքի պրակտիկայի և ոճի մեջ, թելադրում է այդ աշխատանքի նոր կենսական ձևեր ու մեթոդներ, լայն ասպարեզ է բացում ժողովրդի նախաձեռնության, ակտիվության ու ստեղծագործության համար։

Պարտիական և պետական ղեկավարության լենինյան սկզբունքների հետևողական կենսագործման, մասսաների մեջ տարվող իսկական քաղաքական աշխատանքի, պարտիայի և ժողովրդի միաբանության վառ օրինակ է ՍՄԿՊ Կենտկոմը, որը կազմակերպում է համապետական նշանակություն ունեցող բոլոր կարևոր հարցերի համաժողովրդական քննարկում։ Նախքան խոշոր հարցեր լուծելը Կենտրոնական Կոմիտեն խորհրդակցում է ժողովրդի հետ, լսում աշխատավորների կարծիքը, հաշվի առնում նրանց առաջարկները, դիտողությունները, ցանկությունները։ Երկրի կառավարման վճռական հարցերի համաժողովրդական քննարկումները սովետական մարդկանց ավելի ու ավելի են բարձրացնում մինչև համապարտիական, համապետական մտածողության մակարդակը, ավելի ու ավելի են բարձրացնում նրանց հետաքրքրությունը դեպի իրենց Սովետական պետության գործերը։ Այդ վիթխարի միջոցառումները պարտիայի կողմից լավագույն ապացույցն են լենինյան այն դրույթի գործադրման, որ պետությունն ուժեղ է մասսաների գիտակցականությամբ, երբ մասսաները գիտեն ամեն ինչ, ամեն ինչի մասին կարող են դատել և ամեն ինչ անում են գիտակցաբար։

Սովետական մարդկանց խոհերն արտացոլող այդ միջոցառումները գրավում են միլիոնավոր աշխատավորների միտքը, նրանց մեջ առաջ բերելով ուժերի նոր լիցք, ռևոլյուցիոն էներգիա և ստեղծագործական նախաձեռնություն, վերածվում են ամենահաղթ նյութական ուժի։

Ռեսպուբլիկայում պարտիական կազմակերպությունների ակտիվի և սկզբնական պարտիական կազմակերպությունների ժողովներն անցան ՍՄԿՊ XXI համագումարի պատմական որոշումների միահամուռ հավանության և նրանց կենսագործման համար բոլոր ուժերի մոբիլիզացման նշանաբանով։ Դրանք անցան քաղաքական մեծ ակտիվության և գործարարության իրադրության մեջ, ցուցադրելով Հայաստանի Կոմպարտիայի միաձույլ համախմբվածություն ՍՄԿՊ լենինյան Կենտկոմի շուրջը։ Հայաստանի կոմունիստները և աշխատավորությունը վճռականություն ցուցաբերեցին արագ կերպով կենսագործելու համագումարի առաջադրած հոյակապ խնդիրները։

Ռեսպուբլիկայում, ինչպես և ամբողջ երկրում ծավալվում է մի իսկական համաժողովրդական շարժում յոթնամյակի առաջադրանքները ժամկետից շուտ կատարելու համար։ Այդ կապակցությամբ ձեռնարկությունների, կառույցների, կոլտնտեսությունների և սովետական տնտեսությունների կոլեկտիվները ստանձնում են նոր, ավելի բարձր սոցիալիստական պարտավորություններ, որոնք հիմնված են արտադրության ռեզերվների առավել լրիվ օգտագործման ճշգրիտ հաշվումների վրա։

Մեր ռեսպուբլիկայի տնտեսական վարչական շրջանի ժողտնտխորհի ձեռնարկությունների, սովետական տնտեսությունների և կազմակերպությունների կոլեկտիվները սոցիալիստական մրցության մեջ մտնելով վրացական,

digitised by A.R.A.R.@

ադրբեջանական և տաջիկական տնտեսական վարչական շրջանների ձեռնար-
կությունների կոլեկտիվների հետ, պարտավորվել են արտադրանքի թողարկ-
ման 1959 թվականի պետական պլանը կատարել ժամկետից շուտ և հումքը,
վառելիքը, էլեկտրաէներգիան խնայողաբար ծախսելու, տեղական նյութերը
լայնորեն օգտագործելու հաշվին պլանից դուրս տալ 214 միլիոն ռուբլու ար-
դյունաբերական արտադրանք. այդ թվում պղնձի կոնցենտրատ՝ 3900 տոն-
նա, մոլիբդենի կոնցենտրատ՝ 150 տոննա, ռաֆինացված պղինձ՝ 500 տոննա,
էլեկտրաէներգիա՝ 30 միլիոն կիլովատ ժամ, շինարարական տուֆ՝ 57 հազար
խոր. մետր, ցեմենտ՝ 10 հազար տոննա, բամբակե գործվածքներ՝ 180 հազար
մետր, կոշկեղեն՝ 138 հազար զույգ։

Այս տարվա փետրվարի 28-ին կայացած գյուղատնտեսության առաջա-
վորների ռեսպուբլիկական խորհրդակցության մասնակիցները ռեսպուբլիկայի
գյուղատնտեսության աշխատողների անունից պարտավորություն ստանձնե-
ցին յոթնամյակի վերջին տարվա՝ 1965 թվականի, առաջադրանքը կատարել՝
բամբակի արտադրության գծով՝ ընթացիկ տարում, շաքարի ճակնդեղինը՝
1960 թվականին, ծխախոտինը և բանջարեղենինը՝ 1961 թվականին, խաղո-
ղինը՝ 1964 թվականին։ Կոլտնտեսություններում այգիների հիմնադրման յոթնա-
մյա պլանը կատարել հինգ տարում, անասնաբուծական մթերքների ար-
տադրության պլանը կատարել՝ կաթի և ձվի գծով՝ 1962, մսի և բրդի գծով՝
1963 թվականին։

Յոթնամյա պլանը ժամկետից շուտ կատարելու նպատակով ծավալված
համաժողովրդական սոցիալիստական մրցությունը առաջիկայում առավել
բարձր աստիճանի կհասնի։ Պարտիական կազմակերպությունների գլխավոր
խնդիրներից մեկն է՝ հասնել այն բանին, որ ռեսպուբլիկայի յուրաքանչյուր
աշխատավոր կարողանա իր արժանավոր ավանդը մուծել յոթնամյա պլանի
կատարման և գերակատարման մեջ։

Աջակցել մասսաների ստեղծագործական նախաձեռնությանը և գլխավո-
րել այն, նշանակում է, որ ղեկավարները պետք է կարողանան նախ և առաջ
հանդես բերել կամք, տոկունություն և հմտություն՝ գործն այնպես կազմա-
կերպելու, որ կոլեկտիվներն անպայման կատարեն իրենց ստանձնած պար-
տավորությունները։ Սոցիալիստական պարտավորությունները իրականում սո-
վետական մարդկանց հայրենասիրական զգացմունքների արտահայտությունն
են։ Այդ զգացմունքները պետք է թանկ գնահատվեն յուրաքանչյուր պարտիա-
կան կազմակերպության և նրա ղեկավարների կողմից։ Պարտավորություննե-
րի կատարման վատ կազմակերպումը, դրանք չկատարելը վիրավորում են
աշխատավորների կոլեկտիվների զգացմունքները, չեն կարող նպաստել նա-
խաձեռնության զարգացմանը, վնասում են աշխատավորների դաստիարա-
կությանը։ Մենք պետք է հաշվի առնենք այդ գործի կազմակերպման մեջ
անցյալում եղած թերությունները ու սխալները, երբ առանձին ղեկավար աշ-
խատողներ լրջորեն չէին մոտենում պարտավորությունների ստանձմանը, կո-
լեկտիվների ժողովներում հաստատում էին դրանք, իսկ հետագայում չէին
կատարում և դրա համար ոչ մի պատասխանատվություն չէին կրում։

Ստանձնած սոցիալիստական պարտավորությունների ճշգրիտ կատարումը
այն փորձաքարն է, որի վրա ստուգվում է կազմակերպության մարտունակու-
թյունը, ղեկավարի պատասխանատվության զգացումն ու բոլշևիկյան հատ-
կությունները, մասսաներին ղեկավարելու ունակությունը՝ կազմակերպելու



գործն այնպես, որպեսզի պարտավորությունը դառնա ամբողջ կոլեկտիվի
հաստատ խոսքը և դրանով իսկ դաստիարակել մարդկանց, պայմաններ
ստեղծել նրանց ակտիվացման համար։

Յուրաքանչյուր պարտիական աշխատող իր փորձից գիտե, որ մասսանե-
րի ակտիվության անշեղ բարձրացումը ոչ թե պարզեցնում է նրանց ղեկավա-
րելու գործը, այլ ընդհակառակը, պահանջում է ավելի մեծ մասնագիտացում
ու կուլտուրա։ Եվ իրոք, մոտ երկու ամսվա ընթացքում, երբ քննարկվում էին
ընկեր Ն. Ս. Խրուշչովի՝ ՍՄԿՊ XXI համագումարին ներկայացվելիք զեկուց-
ման թեզիսները, ռեսպուբլիկայի աշխատավորներից ստացվեցին 20 հազարից
ավելի առաջարկներ, որոնց քանակը աճեց համագումարի աշխատանքի ըն-
թացքում և նրա արդյունքների քննարկման ժամանակ։ Իսկ եթե հաշվի առ-
նենք, որ այդ առաջարկություններն արտահայտում են ո՛չ միայն նրանց ան-
միջական հեղինակների, այլ հարյուր հազարավոր մարդկանց կարծիքները,
ապա պարզ կլինի, որ հարյուր հազարավոր մարդկանց մտքերի, առաջարկու-
թյունների ընդհանրացումը հեշտ գործ չէ. այն պարտիական աշխատողից
պահանջում է աշխատանքի բարձր կուլտուրա, հսկայական ստեղծագործա-
կան եռանդ։

Ուսումնասիրելով ՍՄԿՊ XXI համագումարում ընկեր Ն. Ս. Խրուշչովի զե-
կուցումը, համագումարի որոշումները և նյութերը, յուրաքանչյուր պարտիա-
կան կազմակերպություն, յուրաքանչյուր պարտիական աշխատող զինվում է
պարտիայի, նրա Կենտրոնական Կոմիտեի հարուստ փորձով, և բնականաբար
այդ լույսի տակ վերլուծության է ենթարկում իր աշխատանքը, ընդհանրաց-
նում դրական փորձը, վերհանում թերությունները, զանցառությունները, թույլ
տրված սխալները։

Պարտիայի պատմական որոշումների կենսագործման պայքարում պար-
տիական կազմակերպությունները տարեցտարի ավելի ու ավելի են ծավալում
իրենց ուժերն ու հնարավորությունները, իրենց փորձը։ Այժմ դժվար է գտնել
մի շրջանային կամ քաղաքային կազմակերպություն, որի պրակտիկայում
չլինի մի այնպիսի բան, որն օգտակար է իրենց և ուսանելի ուրիշների համար։
Հենվելով ձեռք բերված փորձի վրա, ավելի հնարավորություն կունենանք ա-
ռաջ գնալու առավել արագ տեմպերով, հետագայում ել պարտիական աշխա-
տանքի բովանդակության, ձևի և մեթոդների մեջ մտցնելով կյանքի թելադրած
ուղղումները։

Պետք է նշել, որ մեր պարտիական կազմակերպությունների գործունեու-
թյան նշանակալի բարելավման հետ միասին, նրանց մի մասի աշխատանքում
կարելի է նկատել ստեղծագործական մոտեցման բացակայություն, անշար-
ժության, պարզեցման տարրեր, անբավարար կոնկրետություն և այլն։ Դրա-
նում կարելի է համոզվել թեկուզ մի շարք քաղաքային և շրջանային պար-
տիական կոնֆերանսների աշխատանքի օրինակով։

Կոնֆերանսի նախապատրաստումը և անցկացումը խոշոր քաղաքական
իրադարձություն է քաղաքային և շրջանային պարտիական կազմակերպու-
թյան կյանքում, ամբողջ պարտիական կազմակերպության, նրա ակտիվի, բո-
լոր կոմունիստների ակտիվության բարձրացման կարևոր միջոցն է. պարտիա-
կան կոմիտեներին հնարավորություն է ընձեռում համագումարի ենթարկել
տարեկան աշխատանքի արդյունքները, ստուգել իրենց գործունեության ճըշ-

digitised by A.R.A.R.@

տությունը, մշակել հետագա աշխատանքների կոնկրետ ծրագիրը: Կոնֆերանսը պարտիայի քաղաքային և շրջանային պարտիական կազմակերպության կոլեկտիվ ղեկավարության բարձրագույն օրգանն է, որը միևնույն ժամանակ պարտիայի Կենտրոնական Կոմիտեին հնարավորություն է տալիս ստուգելու և վերլուծելու պարտիայի ներքին օղակների գործունեությունը:

Հանրագումարի բերելով անցկացված վերջին կոնֆերանսների արդյունքները, կարելի է ասել, որ նրանց աշխատանքի բովանդակության մեջ իրենց արտացոլումն են գտել Կոմունիստական պարտիայի քաղաքականության բազմապիսի հարցեր:

Կոնֆերանսների աշխատանքը տոգորված է քաղաքային և շրջանային պարտիական կազմակերպություններին զբաղեցնող խոշոր տնտեսական-քաղաքական հարցերի գործարար քննարկմամբ: Պատգամավորների ելույթները և կոնֆերանսների որոշումները հարուստ նյութ են տալիս ամբողջ պարտիական աշխատանքի հետագա կատարելագործման համար:

Միևնույն ժամանակ կոնֆերանսների արդյունքները ցույց են տալիս որոշ ընդհանուր թերություններ, որոնց կողքով չի կարելի անցնել: Որո՞նք են այդ թերությունները: Ամենից առաջ այն, որ մի շարք տեղերում քաղկոմների և շրջկոմների հաշվետու զեկուցումների մեջ արմատավորվել են շաբլոնը և ստանդարտը: Զեկուցումներն ամեն տարի կազմվում են նույն տրաֆարետով, բոլոր հարցերի մասին խոսվում է ընդհանուր գծերով, դրանք բնութագրվում են սովորական, հասարակ ձևով: Այդ պատճառով հաճախ այս կամ այն շրջկոմի զեկուցումը ոչ միայն շատ բանով նմանվում է նախորդ հաշվետու զեկուցումներին, այլև զարմանալիորեն նման է այլ պարտիական կոմիտեների հաշվետվություններին: Կարելի՞ է արդյոք ասել, թե այդպես է ստացվում, որովհետև բոլոր պարտիական օրգանների առաջ դրված են միևնույն ընդհանուր խնդիրները: Իհարկե, ո՛չ: Խնդիրները, իհարկե, ընդհանուր են, բայց չէ՞ որ դրանց կենսագործման աստիճանը տարբեր է, դրանց կատարման ընթացքում երևան են գալիս պարտիական կազմակերպությունների աշխատանքի տարբեր բնագավառների դժվարությունները, տարբեր շրջաններում տարբեր պայմաններ են ստեղծված տնտեսության առանձին ճյուղերի հետագա զարգացման համար, տարբեր ձևով է դրված ներպարտիական աշխատանքը: Օրինակ, Արտաշատի, Էջմիածնի, Հոկտեմբերյանի, Վեդիի, Ստեփանավանի, Կալինինոյի և մի շարք այլ շրջաններում պետք է սուր կերպով դնել մոտակա տարիներում անասնաբուծության զարգացման գործում վճռական բեկում կատարելու, նրա մթերատվությունը բարձրացնելու հարցը, որի համար ստեղծված են ռեալ հնարավորություններ: Գորիսի, Բասարգեչարի, Ապարանի շրջաններում՝ կանանց պարտիայի մեջ ընդունելու գործը այնպես լավ չի կազմակերպված, ինչպես մյուս շրջաններում, հետևաբար բոլոր շրջաններում այդ գործի մասին նույն ձևով չի կարելի խոսել:

Մի շարք պարտիական կոնֆերանսների բանաձևերում երբեմն դերակշռում են տնտեսության բարձրացման կոչերը, ամեն տարի կրկնվում են պարտիական աշխատանքի վերաբերյալ ակնհայտ ճշմարտություններ, նրա բարելավման հարցերը դրվում են ընդհանուր, միապաղաղ ձևով: Այդ արվում է և այն շրջաններում, որտեղ ղեկավարությունը բարվոք է, և թե այնտեղ, ուր դեռ շատ անելիքներ կան: Դրա հետևանքը կարող է լինել այն, որ որոշ կազմակերպություններում, որտեղ գործը քիչ թե շատ լավ է դրված, կստեղծվի ինք-



նահանգստացման և բարեհոգության մթնոլորտ, իսկ այն կազմակերպություններում, որ հարկավոր է ջանքեր գործադրել, անհրաժեշտ մոբիլիզացում չի կատարվի:

Ելնելով ՍՄԿՊ Կենտկոմի, XXI համագումարի աշխատանքի փորձից, յուրաքանչյուր պարտիական օրգան պետք է ճշգրիտ և հստակորեն սահմանի յոթնամյա պլանի համաձայն, քաղաքի, շրջանի ժողովրդական տնտեսության զարգացման ընթացիկ տարվա կոնկրետ թվերը, ինչպես և որոշի այդ նպատակին հասնելու համար պարտիական-քաղաքական և կազմակերպական աշխատանքի խնդիրները: Դա որոշակիություն կմտցնի պարտիական կազմակերպությունների աշխատանքում, շրջկոմին, քաղկոմին հնարավորություն կտա հաջորդ կոնֆերանսում կոնկրետ հաշվետվություն տալ սահմանված ցուցանիշների կատարման ուղղությամբ տարված աշխատանքի մասին, որը կվերացնի հաշվետու զեկուցումների միանմանությունը:

Նշանակում է, պարտիական-կազմակերպական աշխատանքին պետք է մոտենալ ստեղծագործաբար, բարձրացնել պարտիական կոնֆերանսների դերը որպես շրջանի, քաղաքի բարձրագույն պարտիական օրգանի, գործնականում բարձրացնել ղեկավար աշխատողների, կոմունիստների պատասխանատվությունը կոնֆերանսի հանդեպ: Խնդիրն այն է, որպեսզի յուրաքանչյուր պարտիական կազմակերպություն, ինչպես ասվեց XXI համագումարում, որոշի այն բնագիծը, որը պետք է գրավի յոթնամյա պլանի կենսագործման ընդհանուր աշխատանքում իր ներդրումը կատարելու համար:

Պարտիական-կազմակերպական աշխատանքի հիմնական բովանդակությունը՝ տնտեսության ղեկավարությունն է: Յոթնամյակում առաջադրված նոր խնդիրները բնականաբար պարտիական կազմակերպությունների առաջ դնում են առավել բարձր պահանջներ:

Կենսագործել պարտիական ղեկավարությունը տնտեսության նկատմամբ, նշանակում է՝ ամենից առաջ պարտիական ղեկավարության ազդեցությամբ ընդգրկել տնտեսության բոլոր ճյուղերը, հարցերը լուծել կոմպլեքսային եղանակով, հաշվի առնելով բոլոր ռեզերվները և օգտագործելով առաջավոր փորձը տնտեսապես շահավետ ձևով, ըստ ժամանակի պահանջմունքների որոշել յուրաքանչյուր ճյուղի տնտեսական խնդիրները:

Պարտիական կազմակերպությունները կոչված են ժամանակին կռահելու, թե տնտեսության զարգացման որ էտապում առաջին հերթին ինչպիսի գլխավոր միջոցառումներ պետք է կիրառել արտադրության ծավալի անընդհատ աճման համար. ժամանակին նկատել և վերացնել բացասական երևույթները, և, վերջապես, մշտապես աշխատել կադրերի հետ, բարձրացնել նրանց աշխատանքային որակավորումը և պարտիականության զգացումը, ժամանակին փրկել նախաձեռնությունից զուրկ, կյանքի պահանջներից ետ մնացող և արտադրության վերելքն ապահովելու անընդունակ աշխատողներին:

Չի կարելի ասել, թե մեր բոլոր պարտիական կոմիտեները միևնույն չափով են ընդգրկում տնտեսության պարտիական ղեկավարության բոլոր կողմերը: Որոշ տեղերում, օրինակ, կարելի է տեսնել, որ լավ են ղեկավարում դաշտավարությունը, բայց անբավարար ուշադրություն են նվիրում անասնաբուծությանը, կամ լարված հետևելով արդյունաբերական աշխատանքներին, աչքաթող են անում շինարարության և կենցաղի հարցերը: Նման վերաբերմունքը պետք է հաղթահարել: Օրինակ, ճիշտ է վարվում պարտիայի Շամշա-



digitised by A.R.A.R.@

դինի շրջկոմը, որն արմատական միջոցառումներ է մշակում անասնաբուծությունը շրջանի գյուղատնտեսության լավ զարգացած ճյուղերի՝ ծխախոտագործության և այգեգործության մակարդակին հասցնելու համար։

Առանց մշտապես նորանոր ռեզերվներ հայտաբերելու և օգտագործելու հնարավոր չէ տնտեսության նկատմամբ պարտիական ղեկավարություն կիրառել և արդյունքի հասնել։ Ռեզերվները բացահայտում են այն աշխատողները, որոնք խորապես գիտեն գործը, կարողանում են աշխատել մարդկանց հետ, արմատավորել առաջավոր փորձը, հանրագումարի բերել աշխատավորների ստեղծագործական ջանքերը և հենվել դրանց վրա։ Ռեզերվների հայտաբերման ուղիները տարբեր են, բայց, վերջին հաշվով, դրանք բոլորը կախված են տնտեսության ճիշտ, որակյալ ղեկավարությունից։

Հայաստանի Կոմպարտիայի XX համագումարում խոսվեց մի այնպիսի ռեալ հնարավորության մասին, ինչպիսին մոտակա 2—3 տարվա ընթացքում յուրաքանչյուր շրջանում բոլոր կոլտնտեսությունների ցուցանիշները նույն շրջանների առաջավոր կոլտնտեսությունների մակարդակին հասցնելն է, որով նշանակալից չափով կավելանա անասնաբուծության մթերքների արտադրությունը։

Խոսելով այն մասին, որ պարտիական կազմակերպությունները տնտեսությունը ղեկավարելիս պետք է ժամանակին որոշեն տնտեսության վերընթաց զարգացման համար անհրաժեշտ գլխավոր կազմակերպական-տեխնիկական միջոցառումները և ժամանակին նկատեն բացասական մոմենտները, որոնք կարող են խանգարել այդ զարգացումը, անհրաժեշտ ենք համարում կանգ առնել երկու հանգամանքի վրա։

Առաջին. տարբեր տարիների արտադրական հաջողությունների համեմատության մեթոդը։ Բոլորի համար պարզ է, որ մենք կարող ենք առաջ գնալ միայն նվաճվածի, ձեռք բերվածի վրա հենվելով, բայց նկատվում է, որ որոշ աշխատողներ, մասնավորապես կոլտնտեսության նախագահներ, իրենց ելույթներում, տնտեսության գործերը վերլուծելիս, որպես կանոն, իրենց ցուցանիշները համեմատում են անցյալի և, հատկապես, այն անցյալի հետ, երբ դրանք շատ ցածր են եղել, ըստ որում քիչ ուշադրություն է հատկացվում ապագային, ժամանակակից պահանջներին։

Կարող է թվալ, որ խոշոր միջոցառումների համեմատությամբ այդ շատ աննշան բան է։ Բայց այդպես չէ։ Այստեղ խոսքը տնտեսության ղեկավար աշխատողների տրամադրությունների, աշխատանքի նկատմամբ նրանց մոտեցման և սկզբունքի մասին է, որը շատ կարևոր է պարտիական աշխատողների համար։ Հասկանալի է, որ այն, ինչ դեռ վերջերս թվում էր մեծ նվաճում, այժմ, նոր պայմաններում, նոր խնդիրների լույսի տակ մեզ բավարարել չի կարող։ Այսօր այլ են պահանջները, այլ են չափանիշները, որոնք ստիպում են նայել առաջ և ոչ թե ետ։ Աշխատանքի ճիշտ գնահատման համար անհրաժեշտ է համեմատվել ոչ այնքան նախորդ տարիների արտադրության մակարդակի հետ, որքան ամենից առաջ, եղած մեծ հնարավորությունների և, հատկապես, պարտիայի և կառավարության առաջադրած խնդիրների հետ։ Այս դեպքում մենք կունենանք աշխատանքի պարտիական մոբիլիզացնող գնահատական։

Երկրորդ. հետևելով որոշ շրջանների մի քանի տարիների գյուղատնտեսության արտադրության ցուցանիշների աճմանը, նկատում ենք, որ համեմատաբար խիստ տատանումներ կան առաջին տարիներում, իսկ վերջին տարի-



ներում նկատվում է դանդաղեցում, չնայած այդ տարիների ցուցանիշները հեռու են շատ բարձր լինելուց։

Հոկտեմբերյանի շրջանը 100 հեկտար հողային տարածության դիմաց տվել է կաթ. 1955 թվականին՝ մինչև 100,8, 1957 թվականին՝ 190, 1958 թվականին՝ 218 ցենտներ. տարբերությունն առաջին դեպքում՝ 90 ցենտներ է, երկրորդ դեպքում՝ 28։ Ցուրաժային կովից 1955 թվականին ստացվել է 1300 կգ, 1957 թվականին՝ 1789 կգ, 1958 թվականին՝ 1816 կգ կաթ (տարբերությունը 489 կգ և 27 կգ)։

Մոտավորապես նույն պատկերն ենք տեսնում Էջմիածնի, Կալինինոյի և այլ շրջաններում։ Այստեղ նկատվում է, որ եթե առաջին էտապում անցկացված գլխավոր միջոցառումները առավել կամ պակաս չափով բավարարում էին արտադրության ծավալի նշանակալից ավելացմանը, ապա հետագա էտապի համար, ըստ երևույթին, անհրաժեշտ են ագրոտեխնիկական բնույթի ավելի խոր միջոցառումներ, տնտեսությունը վարելու կուլտուրայի բարձրացման համար։

Մշակելով կոմունիստական շինարարության նոր հոյակապ ծրագրեր, մեր պարտիան հետևում է Վ. Ի. Լենինի այն ցուցումին, որ չբավարարվել այն ունակությունով, որը մեր մեջ մշակել է մեր նախկին փորձը, այլ անպայման հեռու գնալ, անպայման ավելին ձեռք բերել, անպայման ավելի հեշտ խնդիրներից անցնել ավելի բարդերին։

ՍՄԿԿ XXI համագումարը հատուկ ուշադրություն դարձրեց ձեռնարկությունների և կառուցումների, կոլտնտեսությունների և սովետական տնտեսությունների, գիտական և սովետական հիմնարկների սկզբնական պարտիական կազմակերպությունների դերի հետագա բարձրացմանը, որտեղ անմիջականորեն վճռվում է յոթնամյա պլանի բախտը։ Չէ որ յուրաքանչյուր միջոցառման անցկացումը սկսվում է ամեն մի կոմունիստի և աշխատավորի դերի սահմանմամբ։ Այդ ամենից առաջ կատարվում է սկզբնական պարտիական կազմակերպությունների կողմից։ Կոմունիստների ակտիվությունը և պատասխանատվությունը կարելի է բարձրացնել մշտապես հենվելով սկզբնական պարտկազմակերպությունների վրա։

Հիրավի, ռեսպուբլիկայի արդյունաբերության, շինարարության, տրանսպորտի, կապի և արհեստագործական կոոպերացիայի մեջ աշխատում են ավելի քան 20 հազար կոմունիստներ, գյուղատնտեսության մեջ՝ ավելի քան 21 հազար, նրանցից կոլտնտեսություններում՝ 17,5 հազար։ Անմիջականորեն նյութական բարիքների ստեղծմամբ է զբաղվում ռեսպուբլիկական պարտիական կազմակերպության կոմունիստների ավելի քան 53 տոկոսը։ Մենք կարող ենք կոմունիստների այդ ավելի քան 41 հազարանոց բանակի ուժերը յոթնամյա պլանի հաջող կատարման համար մաքսիմալ չափով գործադրել միայն սկզբնական պարտիական կազմակերպությունների գործունեության հետագա ամրապնդման և բարելավման միջոցով։ Մենք ունենք բազմաթիվ կազմակերպություններ, որոնք լավ են աշխատում, հանդես են գալիս որպես արտադրական պլանների կենսագործման պայքարում մասսաների ղեկավարներ։ Սակայն ակներև է, որ սկզբնական պարտիական կազմակերպությունների դերը բարձր է նրանով, թե նրանց որքան լավ են ղեկավարում պարտիայի քաղկոմները և շրջկոմները։ Բայց, ցավոք սրտի, շատ դեպքերում պարտիական կոմիտեները կամա թե ակամա չեն օգտագործում սկզբնական պարտիական կազ-

digitised by A.R.A.R.@

մակերպությունների ուժերը, աշխատանքի ընթացքում չեն հենվում նրանց
վրա, պարտիական ղեկավար աշխատողները հարկ եղած չափով չեն թափան-
ցում սկզբնական կազմակերպությունների աշխատանքի մեջ և, ինչպես հարկն
է, չեն օգնում նրանց: Երբեմն կարելի է լսել կոմունիստների, սկզբնական
պարտիական կազմակերպությունների քարտուղարների արդարացի կշտամ-
բանքն այն մասին, որ պարտիայի շրջկոմների և քաղկոմների մի շարք քար-
տուղարներ, պարտիական ապարատի աշխատողներ շատ քիչ են լինում
սկզբնական պարտիական կազմակերպություններում, չեն վերլուծում նրանց
աշխատանքը և թույլ են ղեկավարում նրանց:

Յոթնամյակի հոյակապ պլանների կենսագործումը՝ սովետական ժողո-
վրդի ճակատամարտն է հանուն կոմունիզմի, իսկ այդ պայքարը պահանջում
է բարձր կարգապահություն և պատասխանատվություն: Մեր խնդիրն է՝ ուժե-
ղացնել և բազմակողմանի դարձնել սկզբնական պարտիական կազմակերպու-
թյունների; նրանց քարտուղարների հետ տարվող աշխատանքը, որպեսզի նրանք
յուրաքանչյուր կազմակերպությունում ստեղծեն գործարարության, պահանջ-
կոտության և պատասխանատվության մթնոլորտ, որպեսզի յուրաքանչյուր
կոմունիստ իրեն զգա որպես յոթնամյակի մարտիկ, անկախ իր գրաված պաշ-
տոնից, ամենից առաջ պատասխանատվություն զգա այն սկզբնական պար-
տիական կազմակերպության առջև, որտեղ նա հաշվառման մեջ է:

Պարտիայի XXI համագումարի կողմից առաջադրված խնդիրների լույսի
տակ է՛լ ավելի է բարձրանում աշխատավորների դեպուտատների Սովետների
դերը իբրև պետական իշխանության օրգանների: Համագումարը նշեց, որ պե-
տական ապարատի օրգանների մի շարք ֆունկցիաներ աստիճանաբար անց-
նելու են հասարակական կազմակերպություններին: Սովետական Միության
առաջընթաց զարգացման տարիներին, կոմունիզմի ծավալուն կառուցման
պայմաններում սոցիալիստական պետականության զարգացման մեջ գլխա-
վոր ուղղությունը հանդիսանում է դեմոկրատիայի լայն զարգացումը, աշխա-
տավորների լայն ընդգրկումը տնտեսական և կուլտուրական շինարարության,
հասարակական գործերի ղեկավարման մեջ: Վերջին ընտրությունների ժամա-
նակ մեր ռեսպուբլիկայում, ինչպես և բոլոր միութենական ռեսպուբլիկանե-
րում, տեղական Սովետներում ավելի շատ դեպուտատներ են ընտրվել, քան
առաջիններում: Մեզ մոտ նախորդ գումարման 16.367-ի դիմաց ընտրվել է
17.878 դեպուտատ: Ընտրված դեպուտատներից արտադրությունում աշխատող
բանվորները և կոլտնտեսականները կազմում են 73,76 տոկոս: Ընտրված դե-
պուտատների թվում կանայք կազմում են 41,32 տոկոս, անպարտիականնե-
րը՝ 48,06 տոկոս: Այս ամենը նշանավորում է դեմոկրատիայի ծավալումը:

Պարտիական կազմակերպությունների գլխավոր խնդիրներից մեկն է՝ ա-
մեն կերպ ուժեղացնել Սովետների գործունեությունը, բարձրացնել Սովետ-
ների և նրանց դեպուտատների դերն ու ակտիվությունը ռեսպուբլիկայի տըն-
տեսական ու հասարակական կյանքի բոլոր բնագավառներում: Ղեկավարելով
Սովետների գործունեությունը, պարտիական կազմակերպությունները չպետք
է կատարեն նրանց ֆունկցիաները: Ճիշտ ղեկավարման դեպքում բացառվում
է խնամակալությունը:

Յոթնամյակում ավելի բարձր աստիճանի է հասնելու պրոֆմիությունն-
րի աշխատանքը: Պարտիական կազմակերպությունները պետք է մշտապես
հոգան, որ պրոֆմիությունների ջանքերն անշեղորեն ուղղվեն պետական ա-



ռաջադրանքների կատարմանն ու գերակատարմանը, հանուն տեխնիկական
առաջադիմության, սոցիալիստական մրցության, գյուտարարության և ռացիո-
նալիզատորության հետագա ծավալման, առաջավոր փորձի տարածման: Հա-
նուն այն բանի, որ պրոֆմիութենական կազմակերպություններն ավելի խոր
կերպով զբաղվեն արտադրության մեջ աշխատանքի պաշտպանության, բնա-
կարանային շինարարության պլանների կատարման և բնակարանների բաշխ-
ման, կուլտուր-լուսավորական, առևտրական, կոմունալ-կենցաղային ձեռնար-
կությունների և հիմնարկությունների աշխատանքի նկատմամբ լայն հասարա-
կայնության վերահսկողության կազմակերպմամբ:

Այժմ պրոֆմիությունների և կոմերիտմիության առջև դրված է պետա-
կան ու հասարակական նշանակություն ունեցող մեծ խնդիր՝ կապված «Հա-
սարակական կարգի պահպանմանը աշխատավորների մասնակցության մա-
սին» ՍՄԿՊ Կենտկոմի և ՍՍՌՄ Մինիստրների Սովետի ընդունած որոշման
կենսագործման հետ:

Մեր երկիրը թևակոխել է կոմունիստական հասարակության ծավալուն
շինարարության շրջանը. այդ լայն ասպարեզ է բացում երիտասարդ սերնդի
և նրա ավանգարդի՝ Լենինյան կոմերիտմիության ստեղծագործական նախա-
ձեռնության և ինքնագործունեության համար: Հոյակապ պլանները, փայլուն
հեռանկարները հրապուրել են մեր երիտասարդությանը, շարժման մեջ են
դրել նրա անսպառ ստեղծագործական եռանդը: Երիտասարդության աննախ-
ընթաց ակտիվության այս պայմաններում կոմերիտական կազմակերպու-
թյունները պետք է ավելի մեծ օգնություն ստանան պարտիական օրգաններից,
մշտապես զգան նրանց ղեկավարությունը, որպեսզի հմտորեն ուղղություն
տան պատանիների և աղջիկների, բոլոր կոմերիտականների հորդացող ստեղ-
ծագործական ակտիվությանը յոթնամյա պլանի կատարման և գերակատար-
ման համար:

ՍՄԿՊ XXI համագումարը հատուկ ուշադրություն նվիրեց կադրերի ընտ-
րությանը, տեղաբաշխմանը և դաստիարակմանը: Կադրերի հարցը պարտիա-
կան օրգանների մշտական, կարելի է ասել, պարտիական կազմակերպական
աշխատանքի ամենագլխավոր հարցն է: Հանրահայտ է, որ ամեն մի աշխա-
տանքի հաջողությունը, վերջին հաշվով, միշտ էլ կախված է այն բանից, թե
ում է հանձնարարված, ինչ մարդիկ են գլխավորում աշխատանքի այս կամ այն
տեղամասը: Մեր առաջընթացին զուգընթաց կադրերի հարցը ավելի ու ավելի
լուրջ է դառնում, ուստի պարտիական աշխատանքի այդ կարևոր տեղամա-
սում ամենափոքր թերացումը գործին մեծ վնաս կարող է հասցնել:

Կատարելով պարտիայի ցուցումները, ռեսպուբլիկայի պարտիական կազ-
մակերպությունները բարելավում են կադրերի հետ տարվող աշխատանքը: Եվ,
եթե ռեսպուբլիկան հաջողություններ ունի տնտեսության ու կուլտուրայի
զարգացման մեջ, ապա դրա վճռական պայմաններից մեկը, անտարակույս,
մեր կադրերի հետ տարվող կազմակերպական աշխատանքն է, որը միշտ և
պարտադիր կերպով պետք է համապատասխանի ժամանակի պահանջին, կադ-
րերի առջև դրված նոր խնդիրներին:

Պարտիական օրգանների առաջնահերթ պարտականությունն է կադրերի
ընտրության, տեղաբաշխման և դաստիարակման աշխատանքը հասցնել ավե-
լի բարձր, յոթնամյա պլանի խնդիրներին համապատասխան աստիճանի,
վճռականորեն վերացնելով թույլ տրված թերություններն ու սխալները:

digitised by A.R.A.R.@

ՍՄԿՊ XXI համագումարը շեշտեց այն հանգամանքը, որ ներկայումս կյանքը պահանջում է պարտիական, սովետական, տնտեսական և պրոֆմիութենական աշխատողների կազմում լինեն ավելի շատ մասնագետներ, տնտեսության տարբեր բնագավառների իրազեկ կամ լավ փորձառու, կազմակերպչական ընդունակությունների տեր, գործնական մարդիկ։ Այս խնդիրը ակտուալ նշանակություն ունի մեր ռեսպուբլիկայի համար։ Պարտիայի քաղկոմների և շրջկոմների 118 քարտուղարներից մասնագետներ են 27-ը, այդ, իհարկե, քիչ է։ Իսկ սովետական և պրոֆմիութենական աշխատողների մեջ տոկոսային հարաբերությամբ մասնագետներն ավելի քիչ են։ Կատարելով համագումարի ցուցումները՝ պարտիական օրգանները պետք է պարտիական, սովետական, պրոֆմիութենական և այլ ղեկավար աշխատանքներում լայնորեն առաջ քաշեն բարձրագույն կրթությամբ մասնագետների, ինչպես և մեծ կենսափորձ ունեցող պրակտիկների։

Պետք է կարողանալ զուգակցել փորձված, հին և աճող նոր կադրերի գործունեությունը, որը կապահովի առաջադրված խնդիրների հաջող լուծումը։

Կադրերի ընտրության գործի բարելավումը պահանջում է վճռականորեն վերացնել որոշ ղեկավարների քարացած ու սխալ վերաբերմունքը երիտասարդ աշխատողների, ինչպես և կանանց առաջքաշման նկատմամբ։ Այդպիսի ղեկավարները խոսքով հավանություն են տալիս երիտասարդների և կանանց առաջքաշմանը, իսկ իրականում ոչինչ չեն անում։ Ավելին, եթե ղեկավար աշխատանքի նշանակված այս կամ այն երիտասարդ աշխատողը սխալ է թույլ տալիս, անմիջապես ոմանք հանդես են գալիս և ասում. «Ախր մենք նախազգուշացնում էինք, ախր մենք ասում էինք, որ կարիք չկա նրան առաջ քաշելու» և այլն. դրանով իսկ օբյեկտիվորեն կամ սուբյեկտիվորեն անվստահություն են սերմանում նոր աշխատողների ուժերի նկատմամբ։

Ներկա պայմաններում կադրերի հետ տարվող աշխատանքի, նրանց դաստիարակության, որակավորման և քաղաքական կոփվածության, կուլտուրայի և կրթության բարձրացման հարցերը հատուկ կարևոր նշանակություն են ստանում։ Անհրաժեշտ է կադրերի հետ կատարվող աշխատանքը դնել այնպես, որ նրանք կարճ ժամանակում ձեռք բերեն ղեկավար աշխատանքի փորձ և հմտություն։

Կադրերի հետ կատարվող աշխատանքում, ինչպես նշեց Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXI համագումարը, կարևորը՝ ղեկավար գործի առաջ քաշելու համար անհրաժեշտ ռեզերվ ստեղծելն է։ Երիտասարդ մասնագետներին, կանանց սիստեմատիկաբար պետք է ներգրավել պարտիական-հասարակական աշխատանքում, ուսումնասիրել նրանց գործնական և քաղաքական ունակությունները։ Պետք է այնպես կազմակերպել աշխատանքը, որպեսզի գործկոմների նախագահների, գործարանների դիրեկտորների, կոլտնտեսությունների նախագահների և սովետական ու տնտեսական օրգանների ղեկավարների պաշտոնների համար ամենահարմար ռեզերվ դառնան նրանց օգնականները, իսկ պարտիայի շրջկոմների ու քաղկոմների առաջին քարտուղարների պաշտոնի համար՝ երկրորդ քարտուղարները։ Դրա համար անհրաժեշտ է բարելավել նրանց հետ տարվող աշխատանքը և, որ գլխավորն է, այդ պաշտոններում ընտրել երիտասարդ, ընդունակ, հեռանկար ունեցող մարդկանց։

Միաժամանակ, ինչպես մեզ սովորեցնում է պարտիան, պետք է ուշադիր և հոգատար վերաբերվել այն կադրերի հետ, որոնք երկար տարիներ աշխատելով մեր շրջաններում ու քաղաքներում, ազնիվ աշխատանքով իրենց ներդրումն են կատարել պարտիայի համաժողովրդական խնդիրների իրականացման գործում։



Կադրերի ճիշտ դաստիարակության կարևոր պայմանն է խիստ պահանջկոտությունը պարտիայի առաջադրանքների կատարման նկատմամբ։ Անհրաժեշտ է ստեղծել այնպիսի իրադրություն, որ նույնիսկ աշխատանքի ամենափոքր տեղամասերում չհանդուրժեն պարտիայի և կառավարության որոշումները կատարելու անընդունակ, կյանքից ետ մնացող, ժամանակի պահանջները չբավարարող մարդիկ, որոնք գործի նկատմամբ ունեցած իրենց պահպանողական վերաբերմունքով կամա թե ակամա կասեցնում են ներքևից եկող նախաձեռնությունը։

Կադրերի հետ տարվող աշխատանքում պարտիական կազմակերպությունները այնպես պետք է գործեն, որ յուրաքանչյուր աշխատող, ինչ պաշտոն էլ նա գրավի, ցուցաբերի առավել եռանդ, նախաձեռնություն, կազմակերպվածություն, պատվով կատարի հանձնարարված աշխատանքը, կյանքի զարգացման արագ ընթացքից ետ չմնա և գտնվի նոր մեծ խնդիրների մակարդակի վրա։

Զինվելով Սովետական Միության Կոմունիստական պարտիայի XXI համագումարի պատմական որոշումներով, ռեսպուբլիկայի պարտիական կազմակերպությունները նոր խնդիրների մակարդակին բարձրացնելով պարտիական-կազմակերպական աշխատանքը, ամուր հիմք կստեղծեն յոթնամյա պլանի հաջող գերակատարման համար։

Այժմ պետք է ղեկավարել՝ ելնելով նոր խնդիրներից։

digitised by A.R.A.R.@

> «Անհրաժեշտ միջոցառումներ ձեռնարկել հետ մնացող կոլտընտեսությունները տնտեսապես ամրապնդելու և յուրաքանչյուր շըրջանում այդպիսիներն առաջավոր կոլտնտեսություններին հասցնելու համար»:
>
> ՀԿԿ XX ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ԲԱՆԱՁԵՎԻՑ

# ՔԱՂՑՐԱՇԵՆՑԻՆԵՐԻ ՕՐԻՆԱԿԵԼԻ ՈՒՂԻՆ

## Ս. ՆԱԼԲԱՆԴՅԱՆ

### ԽՈՍՈՒՄ Է ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՊԱՏԳԱՄԱՎՈՐԸ

Քաղցրաշենի կոլտնտեսության նախագահ Ամբակում Գրիգորյանը մեծ հույզերով ու խոհերով լի նոր էր վերադարձել կոմունիզմ կառուցողների համագումարից, որին մասնակցել էր իբրև Հայաստանի բոլշևիկների պատվիրակներից մեկը. կոլտնտեսության վարչության գրասենյակում, շրջապատված համագյուղացիներով, նա պատմում էր այն վառ տպավորության մասին, որ թողել էր իր վրա Մոսկվան, Կրեմլյան Մեծ պալատը համագումարի նիստերի օրերին: Նա պատմում էր պարտիայի ու կառավարության ղեկավարների, միջազգային բանվորական շարժման ականավոր գործիչների, նրանց ճառերի ու ելույթների՝ իր վրա թողած անջնջելի տպավորության մասին, խոսում այն հսկայական հաջողությունների շուրջ, որին հասել է մեր Հայրենիքը և նշում յոթնամյա պլանի այն վիթխարի խնդիրները, որ ծրագրված է իրականացնել 1959—1965 թվականներին:

— Ինձ վրա մեծ տպավորություն թողեց Տերնոպոլի մարզի (Ուկ. ՍՍՌ) Ստալինի անվան կոլտնտեսության օղակավարուհի, Սոցիալիստական Աշխատանքի կրկնակի Հերոսուհի Ե. Ս. Դոլինյուկի ելույթը,— պատմում էր Գրիգորյանը:— Նա իր օղակով 1958 թվականին մշակել է 100 հեկտար եգիպտացորեն: Այդ տարածության 20 հեկտարի յուրաքանչյուր հեկտարից ստացել է 207 ցենտներ հատիկ, իսկ մնացած 80 հեկտարի յուրաքանչյուր հեկտարից՝ 1450 ցենտներ կանաչ մասսա:

Այնուհետև նա պատմեց անվանի ածխահատ, Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Ն. Յա. Մամայի մասին, որն իր բրիգադայով անցյալ տարի Հայրենիքին պլանից ավելի տվել է 12 հազար տոննա քարածուխ. համագումարի Նախագահության անդամ Ե. Ի. Անդրեևայի մասին, որի ղեկավարած կոլտնտեսությունը (Տամբովի մարզի Կոմինտերնի անվան) անցյալ տարի 100 հեկտար հողատարածության հաշվին ստացել է 111 ցենտներ միս, 307 ցենտներ կաթ (յուրաքանչյուր կովից՝ 3911 կիլոգրամ): Այդ նույն կոլտնտեսությունը նախատեսել է յոթնամյակում 100 հեկտար հողատարածության հաշվին մսի արտադրությունը հասցնել 250 ցենտների, իսկ կաթինը՝ մինչև 800 ցենտների:



Նախագահի ու կոլտնտեսականների միջև սկսված զրույցը ավելի կոնկրետանալով, փոխադրվեց իրենց արտելի առօրյայի, նրա անցյալի, ներկայի և ապագայի շուրջը: Չէ՞ որ նրանց կոլտնտեսությունն էլ մեր հզոր Հայրենիքի մի մասնիկն է, իսկ իրենք համընթաց քայլելով մեր երկրում կոմունիզմ կառուցողների հերոսական բանակի հետ, հատկապես վերջին տարիներս զգալի հաջողությունների են հասել գյուղատնտեսական մթերքների արտադրությունը բարձրացնելու գործում, որի շնորհիվ էլ լավ անուն են վաստակել ռեսպուբլիկայում ու նրանից դուրս:

Ներկա լինելով այդ սրտաբաց զրույցին, մեր մեջ ցանկություն առաջացավ ծանոթանալ կոլտնտեսության գործերի, ինչպես նաև նրա պատմության հետ:

### ԵՐՋԱՆԻԿ ԿՅԱՆՔԻ ՈՒՂԻՆ

Քաղցրաշենը հեռավոր անցյալ չունի, ինչպես մեր ռեսպուբլիկայի շատ գյուղեր. այն ունի ընդամենը մի քանի տասնյակ տարիների պատմություն:

1924 թվականին, օսմանյան դահիճների յաթաղանից հրաշքով փրկված և Արևմտյան Հայաստանից փախած մի խումբ հայեր՝ երկար թափառումներից հետո մշտական բնակավայր ընտրեցին Դարղալուից (Այգեզարդից) արևելք ընկած Կարմիր բլուրի ու Օձասարի ստորոտը և ամայի տարածության վրա կառուցեցին իրենց կավաշեն հյուղակները:

— Այժմյան շեն ու ծառազարդ գյուղի վայրը անցյալում եղել է ամայի, մոլախոտերով պատած, սակավաջուր տարածություն,— ասում է Մ. Մարգարյանը:

Հյուղակներից մի փոքր հեռու, 1929—1930 թվականներին պետության հաշվին կառուցվեցին բարաքներ, ուր սկսեցին ապրել Ղամարլուի (Արտաշատի) շրջանի մի խումբ բատրակներ ու չքավոր գյուղացիներ: Առաջին տարին, երբ նոր հիմնադրված ավանը դեռևս իր պաշտոնական անունը չուներ, հարևան գյուղացիները այն կոչում էին Բատրակաշեն:

— Մեր ունեցվածքը մի աքլորի բեռ էր,— հառաչելով ասաց մի կոլտնտեսական:

Բատրակաշենցիների ողջ հարստությունը պետության կողմից նրանց հատկացված շնչապատկան հողն էր, բահը, ճանդաղն ու գերանդին: Շուտով նրանք գիտակցելով հողի համատեղ մշակման առավելությունն ու արդյունավետությունը, համերաշխորեն ձեռնամուխ եղան կոլեկտիվ տնտեսության կազմակերպմանը, դրանով իսկ բռնելով Կոմունիստական պարտիայի նշած երջանիկ ու լուսաշող կյանքի ուղին:

Կոլտնտեսության կազմակերպիչները եղել են՝ Հ. Հարությունյանը, Մ. Մարգարյանը, Հ. Մանուկյանը, Մ. Ազիզյանը, Վ. Հովհաննիսյանը, Մ. Հարությունյանը, Մ. Վարդանյանը, Վ. Սանոյանը, Հ. Մարգարյանը, Մ. Սահակյանը, Մ. Մալխասյանը և ուրիշներ՝ շուրջ 20 ընտանիք: Նրանցից շատերն այժմ արդեն ծերացել են, բայց ազնվորեն մասնակցում են հանրային աշխատանքներին և իրենց բաժինը ներդնում կոլտնտեսության ընդհանուր եկամտի մեջ: Չնայած այդ նրանց համար երջանիկ կյանք վարելու սկիզբ է հանդիսացել, բայց այժմ էլ դառնությամբ են հիշում անցած ծանր օրերը, որովհետև շնչապատկան հողից, իրենց չլուտ բազուկներից և ազնիվ հոգուց

digitised by A.R.A.R.@

*բացի, նրանք ուրիշ ոչինչ չեն ունեցել միացնելու դրան, ինչպես այդ արել են ուրիշ գյուղերի կոլտնտեսականները՝ կոլտնտեսություն բերելով իրենց լծկանն ու կթանը, գութանն ու արորը, սայլը, կովն ու մատակը։*

*Պետության կողմից հատկացված վարկով նրանք գնեցին սերմացու, մի զույգ ձի, սայլ ու գութան, իսկ կոլտնտեսության անդամներից հավաքած գումարով՝ մի զույգ եզ։*

*— Մեր առաջին էգ անասունը,— հիշում է Հ. Մանուկյանը,— շրջանային գործադիր կոմիտեի նվիրած մատակն էր, որը Հարևան գյուղում փոխեցինք երկու կովով։ Հետո ձեռք բերեցինք մի մաքի, որի տոհմից մինչև այսօր էլ մենք ունենք մեր կոլտնտեսության հոտում։*

*Իր կազմակերպման առաջին տարիներին կոլտնտեսությունը գլխավորապես ցանել է բամբակ ու հացահատիկային կուլտուրաներ, որոնց մշակումը հիմնականում կատարվել է ձեռքի աշխատանքով։*

*Կոլտնտեսական Մ. Աղիզյանը վերհիշելով այդ տարիները՝ պատմում է.*

*— Տրակտորով միայն հողն էինք վարում, իսկ մնացած աշխատանքները՝ մարգեր պատրաստելը, ցանքը, տափանը, քաղհանը, հունձը, բուժումը կատարում էինք մեր բազուկների ուժով։*

*Իսկ արդյունքը շատ չնչին է եղել. հեկտարից ստացվել է ընդամենը 7 — 8 ցենտներ բամբակ, քիչ բերք են տվել նաև մյուս կուլտուրաները։ Կոլտնտեսությունը ունեցել է շատ փոքր եկամուտ, իսկ կոլտնտեսականների աշխօրերի արժեքը եղել է շատ աննշան։*

### ԱԶՆԻՎ ԱՇԽԱՏԱՆՔԻ ԱՌԱՋԻՆ ՊՏՈՒՂՆԵՐԸ

*Տարիներն անցան մեկը մյուսի հետևից։ Տրակտորի կողքին կոլտնտեսության դաշտերում երևան եկան շարքացանն ու կուլտիվատորը. կոլտնտեսականներն ազատվեցին ցանքն ու միջշարքային մշակությունը ֆիզիկական աշխատանքով կատարելուց, որն զգալիորեն նպաստեց բերքատվության բարձրացմանը։*

*Այստեղ բամբակի ու հասկավոր կուլտուրաների մշակության հետ միասին ձեռնամուխ եղան նաև այգեգործությանը, նկատի ունենալով, որ այն մեծ ապագա է խոստանում։*

*Շուտով Բատրակաշենից հարավ՝ Յուվա-Դավալու ճանապարհի երկու կողմերում կառուցվեցին ևս երեք ավան։ Նորակառույց չորս բնակավայրերը անվանակոչվեցին համարներով, ընդ որում Բատրակաշենը կոչվեց Չորրորդ գյուղ։*

*Երբ կոլտնտեսականներն իրենց ազնիվ վաստակով միջոցներ ստեղծեցին բարեկեցիկ կյանք վարելու համար, այլևս կավաշեն հյուղակները չբավարարեցին նրանց նոր կենսապայմաններին։ Շրջանային գործադիր կոմիտեն ընդառաջեց նրանց՝ նոր բնակավայրի (Չորրորդ գյուղի) հատակագիծ կազմելու, ըստ որի կոլտնտեսականները ուղիղ ու լայն փողոցների վրա, իրար կողքի կառուցեցին իրենց նոր բնակարանները, սկզբում հում աղյուսով ու հարթ տանիքներով, իսկ հետո՝ վարդագույն տուֆ քարով պատած ճակատով, իսկ տանիքը՝ ասբեստ-շիֆերով ծածկված, ոմանց բնակարաններն էլ պարկետահատակված են։ Պարտեզներում տնկված են խաղողի որթեր ու մրգատու ծառեր, փողոցների եզրերին՝ բարդիները մեղմորեն խշշում են, իսկ այգիները շրջանցող խոխոջուն առվակների ափերին քնքշորեն թեքվել են դալար ուռիներն ու նրբաբույր փշատենիները։ Գարնան սկզբին, փողոցների*



*երկու կողմերով հոսում է մայր առվից սկիզբ առնող ջուրը, որը կենդանություն է տալիս ամռան տոթից պապակված այգիներին ու արտերին։ Գյուղում կառուցվել է ծննդատուն և յոթնամյա դպրոցի շենքը։*

*Լսելով Չորրորդ գյուղի հողերի արգավանդության, այն մշակողների ազնիվ աշխատանքի հրաշալի պտուղների մասին, այստեղ մշտական բնակության վայր ընտրեցին Մարտունու և Սևանի շրջանի մի շարք գյուղերի ընտանիքներ և դարձան այդ գյուղի գյուղատնտեսական արտելի անդամներ։*

*Կոլտնտեսությունը գնալով մեծացավ, այգիների ու ցանքերի տարածությունը ընդարձակվեց, անասունների գլխաքանակն ավելացավ, հարստացավ գյուղը։ Մարդիկ, որոնք անցյալում հողազուրկ էին, անօթևան և օր ու գիշեր աշխատում էին ուրիշի համար, տեր դառնալով հողին, դարձան նրա ամբողջ եկամտի տնօրինողը։*

*— Կոլտնտեսությունը նոր էր ոտքի կանգնել ու բռնել վերելքի ուղին,— ասում է բրիգադիր Տ. Հարությունյանը,— երբ ֆաշիստական Գերմանիան հարձակվեց մեր Հայրենիքի վրա. զենք վերցնելու կարողություն ունեցող բոլոր տղամարդիկ թողեցին խաղաղ աշխատանքը, մեկնեցին ռազմաճակատ, իսկ աշխատանքում նրանց փոխարինեցին կանայք, պատանիներն ու աղջիկները, ծերերը։*

*Այդ դժվարին տարիներին գյուղում մնացած մարդիկ բարեխղճորեն աշխատեցին կոլտնտեսության դաշտերում՝ մշակելով բամբակ ու հացահատիկ, ազնվորեն կատարեցին իրենց պարտքը Հայրենիքի հանդեպ։*

*Կոլտնտեսականների անդուլ աշխատանքի շնորհիվ տարեցտարի ընդարձակվող խաղողի ու մրգի այգիները հասունացել և տալիս են առատ, քաղցրահամ պտուղներ։ Գյուղը ծածկվել է ծառերով ու այգիներով։ Իր քաղցր պտուղների, գյուղացիների շեն ու բերկրալի կյանքին համապատասխան Չորրորդ գյուղը վերանվանվել և կոչվում է Քաղցրաշեն։*

*Հինգ տարի առաջ քաղցրաշենցիները իրենց կոլտնտեսության նախագահ ընտրեցին Ա. Գրիգորյանին։*

### ԱՇԽԱՏԱՆՔԸ ՓԱՌՔ ՈՒ ՊԱՏԻՎ Է

*Անցած հինգ տարիների ընթացքում կոլտնտեսությունում հայտաբերվել և օգտագործվել են ներքին ռեզերվներ, որոնք մեծ չափով նպաստել են արտադրության բարձրացմանը։ Շահագործման է հանձնվել՝ վայրկյանում 25 լիտր ջուր մղող կայանը, որի շնորհիվ յուրացվել և այժմ ոռոգվում է 15 հեկտար տարածություն։ 10 հեկտար հող էլ ավելացել է հողատարածության մեջ եղած թմբերն ու փոսերը հարթեցնելու շնորհիվ։*

*Կոլտնտեսային արտադրության մի շարք աշխատատար պրոցեսներում բարձրացել է մեքենայացման մակարդակը. այժմ բացի այգեփորից, խաղողաքաղից, ցանքերը ջրելուց ու չանաքից, մնացած բոլոր աշխատանքները մեքենայով են կատարվում։ Արտադրության բոլոր բնագավառներում կիրառվում է գործարքային սիստեմը։ Այստեղ մարդկանց համակել է ազնիվ ձգտումը։ Կոլտնտեսականներն աչքի են ընկնում աշխատանքային բարձր կարգապահությամբ և հանրային աշխատանքի նկատմամբ ազնիվ վերաբերմունքով։ Կոմունիստները բոլորն էլ աշխատում են արտադրության մեջ և ցույց են տալիս անձնական լավագույն օրինակ։ Քաղցրաշենցիների մոտ աշխատանքը դարձել է պատվի ու փառքի գործ։ Յուրաքանչյուր կոլտնտեսական ակտիվ մասնակցություն է ունենում նյութական բարիքներ ստեղծելուն։ Կոլտնտեսու-*

digitised by A.R.A.R.@

թյան վարչությունը որևէ մեկին պատժելու համար երեք-հինգ օրով արգելում է նրան աշխատել արտադրության մեջ, իսկ այդ անպատվաբեր է նրա համար։ Երիտասարդությունը դպրոցն ավարտելուց հետո սիրով աշխատանքի է անցնում կոլտնտեսության արտադրության մեջ։ Ամեն մի կոլտնտեսական իր սրբազան պարտքն է համարում համառ պայքար տանել կորուստների դեմ, ամեն կերպ աշխատել, որպեսզի արտելի անդամների քրտինքով ստեղծված յուրաքանչյուր ողկույզ խաղողը, հատիկ ցորենն ու փաթիլ բամբակը մտնեն հանրային շտեմարանը։ Հատկապես այգեկութի և չանաքի շրջանում քաղցրաշենցիները մեծից փոքր աշխատանքի են դուրս գալիս՝ իրենց աղնիվ վաստակը անկորուստ հավաքելու համար։ Դրա շնորհիվ շրջանում միշտ էլ բոլորից շուտ այս կոլտնտեսությունն է ավարտում բերքահավաքը և ժամանակին կատարում պետական պարտավորությունների պլանները։

Սովետական հասարակարգի արժանավոր քաղաքացու լավագույն օրինակ են քաղցրաշենցիները նաև հասարակական կարգ ու կանոնը պահպանելու գործում։ Բավական է նշել, որ վերջին տարիներին բնակիչներից ոչ ոք դատական օրգանների կողմից չի պատժվել։

Երբ խոսք բացվեց առողջ, կոմունիստական հասարակարգին վայել բարոյական ընտանիքի մասին, կոլտնտեսականները միաբերան բացականչեցին.

— Տասը տարի է, ինչ մեր գյուղում ամուսնալուծության ոչ մի փաստ չի արձանագրվել։

— Խնդրում ենք այդ մասին չգրեք,— կատակով ավելացրեց գյուղատնտես Սերոբը,— թե չէ ուրիշ գյուղի աղջիկները կկարդան ու կցանկանան հարս գալ մեր գյուղը։

Նախկին աղքատիկ, անհայտ Բատրակաշենը այժմ դարձել է շեն ու լի, գրավիչ Քաղցրաշեն և իր տեղն ունի Հայաստանի քարտեզի վրա։ Եվ պատահական չէ, որ այդ համերաշխ ու աշխատասեր ընտանիքի անդամներ են ցանկանում դառնալ շատ մարդիկ ռեսպուբլիկայի լեռնային շրջաններից։

Այժմ Քաղցրաշենի կոլտնտեսությունում ընդգրկված են շուրջ 300 ընտանիք, 1404 շնչով։ Արտելին առհավետ օգտագործման է հանձնված մոտ 950 հեկտար հող, դրանից վարելահող՝ 214, այգիներ՝ 128, որից բերքատու է 83 հեկտարը։ Կոլտնտեսությունն ունի 351 գլուխ խոշոր եղջերավոր անասուն, որից կով՝ 125 գլուխ, իսկ ոչխարաբուծական ֆերմայում կա մոտ 2000 գլուխ ոչխար։ Կոլտնտեսության ավտո-տրակտորային պարկում հաշվվում է 6 տրակտոր, իսկ ավտոմեքենաներ՝ յոթ։

Անցյալ տարի կոլտնտեսությունը խաղողի 83 հեկտար բերքատու այգիների յուրաքանչյուր հեկտարից ստացել է 148 ցենտներ խաղող, 1954 թվականին ստացած 97 ցենտների դիմաց։ Եթե 1954 թվականին բամբակենու պլանտացիաների յուրաքանչյուր հեկտարից ստացվել է 14,5 ցենտներ բամբակի հումք, ապա 1958 թվականին այն հասել է 43,3 ցենտների։ Նույն ժամանակաշրջանում բանջարանոցային կուլտուրաների բերքը յուրաքանչյուր հեկտարից՝ 130-ից բարձրացել է 272 ցենտների։ 1958 թվականին կոլտնտեսությունը յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության հաշվին արտադրել է կաթ՝ 224, միս՝ 88, բուրդ՝ 3,67 ցենտներ, իսկ 100 հեկտար վարելահողի հաշվին ստացել է 28600 ձու։ Զգալիորեն պակասել է արտադրանքի մեկ միավորի վրա ծախսված աշխօրերի քանակը։ Եթե 1954 թվականին յուրաքանչյուր մեկ տոննա խաղողի արտադրանքի վրա ծախսվել է 31, իսկ մեկ տոննա բամբակի վրա՝ 134 աշխօր, ապա 1958 թվականին համապատասխանորեն ծախսվել է 25 և 58 աշխօր։ Արտելի համախառն արտադրանքը կազմել է մոտ 10 միլիոն ռուբլի, որից դրամական եկամուտը՝ 5,6 միլիոն ռուբլի, 1954 թվականի 4,3 միլիոն ռուբլու համախառն եկամտի դիմաց։ 1958 թվականի եկամտից յուրաքանչյուր աշխօրին բաշխված է 37 ռուբլի (դրամական ու մթերային արտահայտությամբ)։



Տարեցտարի ավելի շատ գումար է հատկացվում կոլտնտեսության անբաժանելի ֆոնդին։ Եթե 1955—1956 թվականներին անբաժանելի ֆոնդին հատկացվել է 800 հազար ռուբլի, ապա 1957 — 1958 թվականներին այն հասել է 1,6 միլիոն ռուբլու։ Այժմ կոլտնտեսության անբաժանելի ֆոնդը կազմում է մոտ 6 միլիոն ռուբլի։

Իհարկե, այս հաջողությունները ինքնահոսի հետևանք չեն, այլ դրանք ձեռք են բերվել համառ ու հետևողական պայքարով։ Բարձր բերքի համար մաքառողների առաջամարտիկները եղել են կոմունիստները։ Նրանք կոլտնտեսականներին հայրենասիրության, ինտերնացիոնալիզմի, գործի նկատմամբ ազնվություն ցուցաբերելու ոգով դաստիարակելու հետ միասին անձնական լավագույն օրինակ են ցույց տալիս աշխատանքում։ Կոլտնտեսության պարտիական կազմակերպությունում (քարտուղար Գ. Գևորգյան) հաշվի առնված գրեթե բոլոր կոմունիստներն էլ աշխատում են արտադրության մեջ, գործադրում իրենց բոլոր ջանքերը՝ հանրային տնտեսությունում արմատավորելու գիտության նվաճումները ու գյուղատնտեսության առաջավորների աշխատանքի մեթոդները։

## ԿՅԱՆՔԻ ՀԱՏԱԿԻՑ ԲԱՐՁՐԱՑԱԾ ՄԱՐԴԻԿ

Քաղցրաշենի կոլտնտեսությունն իր գոյության տարիներին կազմակերպչորեն ամրապնդվելով և տնտեսապես աճելով՝ տվել է հիանալի կադրեր, մարդիկ, որ Բատրակաշեն էին եկել ընչազուրկ վիճակում և ոչնչով աչքի չէին ընկնում, այսօր դարձել են անվանի ոչ միայն իրենց կոլտնտեսությունում, այլև շրջանում, ռեսպուբլիկայում ու Սովետական Միությունում։

Ահա շատերից մի քանիսը։

Դառն է եղել Նոյեմզարի պատանեկան կյանքը։ Թուրք բարբարոսների կողմից ընտանիքով արտաքսվելով հայրենի Հայկաշեն գյուղից (Վանի գավառ), նա իր մանկությունն անց է կացրել Միջագետքում՝ անօթևան, քաղցած ու մերկ։ 1921 թվականին Սովետական Հայաստան ներգաղթողների առաջին քարավանի մեջ էր նաև Նոյեմզարը։ Ոտք դնելով հայրենի հողի վրա, նրա առջև բացվում է նոր, երջանիկ կյանքի ուղին։

Համարյա թե գյուղի հիմնադրման տարին էլ այնտեղ հարս են բերում Նոյեմզարին։ Իր համեստությամբ, կոլտնտեսությունում կատարած բարեխիղճ աշխատանքով նա դառնում է համագյուղացիների սիրելին։

Արդեն երկար տարիներ է, ինչ Նոյեմզար Եղիազարյանը կոլտնտեսությունում օղակավար է. տարեցտարի բարձրացնելով բամբակի պլանտացիաների ու խաղողի այգիների բերքատվությունը, նրա օղակը դարձել է առաջավորներից մեկը։ 1957 թվականին Ն. Եղիազարյանի օղակը բամբակի ցանքերի յուրաքանչյուր հեկտարից հավաքեց 35 ցենտներ հումք, իսկ խաղողի այգի-

digitised by A.R.A.R.@

ների յուրաքանչյուր հեկտարից ստացավ 140 ցենտներ բերք, որը կոլտնտեսության միջին բերքատվությունից 30 ցենտներով ավելի էր։

1958 թվականին Ն. Եղիազարյանը ընտրվեց ՍՍՌՄ Գերագույն Սովետի պատգամավոր։ Իր ընտրողների վստահությունն արդարացնելու համար նա ավելի ոգևորված աշխատեց հանրային դաշտում և իր օղակով մշակած յուրաքանչյուր հեկտարից ստացավ 60 ցենտներ բամբակ, 180 ցենտներ խաղող։

Քաղցրաշենցիները Նոյեմզարի մասին հիացմունքով են խոսում ոչ միայն որպես առաջավոր օղակավարուհու, այլև որպես հոգատար մոր, համեստ հարսի։ Նրա ամուսինը զոհվեց Հայրենական Մեծ պատերազմում, երկու երեխաների ու սկեսրոջ խնամքի հոգսը ընկավ իր վրա։

Կոլտնտեսության դաշտերում իր աշխատանքը բարեխղճորեն կատարելու հետ միասին Նոյեմզարը ուշադիր հետևում է երեխաների դաստիարակությանը և ուսմանը, խնամում սկեսրոջը։ Նրա տղան՝ Լյուդվիգը, հաջողությամբ ավարտել է միջնակարգ դպրոցը և այժմ սովորում է Երևանի Պետական համալսարանում։

Մանուկ Վարդանյանը ծնվել է Դդմաշենում (Սևանի շրջան), սակայն ապրել, մեծացել է Քաղցրաշենում։ Նա ավարտել է 10-ամյա դպրոցը, ծառայել Սովետական Բանակում, իսկ զորացրվելուց հետո նշանակվել է բրիգադավար։ Անցյալ տարի նրա ղեկավարած բրիգադան յուրաքանչյուր հեկտարից ստացել է մոտ 60 ցենտներ բամբակ, իսկ խաղողի այգիների հեկտարից 185 ցենտներ բերք։ Նրա բրիգադայի համախառն արտադրանքի եկամուտը հասնում է մեկ միլիոն ռուբլու։

Իրենց ջանասեր աշխատանքով լավագույն ցուցանիշների են հասել Ս. Սարգսյանի բրիգադայի կոլտնտեսականները, որոնք իրենց մշակած բամբակենու յուրաքանչյուր հեկտարից ստացել են 45,3 ցենտներ հումք, իսկ խաղողի այգիներից՝ 162 ցենտներ բերք։

Իր աշխատանքային սխրանքներով ընդհանուրի համակրանքն է վայելում Կ. Մանուկյանը, որը սիրով մշակում և աճեցնում է բամբակի ու խաղողի առատ բերք և տարեկան վաստակում շուրջ 400 աշխօր։ Ջանասեր հոր օրինակը վարակել է և որդիներին, որոնք աչքի են ընկնում աշխատասիրությամբ, խտրություն չդնելով աշխատանքի տեսակների միջև։ Ահա և ուստա Մկրտիչը։ Նրա ծնողները մեծ գաղթի ժամանակ մահացել են համաճարակից, իսկ պատանեկությունը անցել է մանկատանում։ Այս գյուղում բնակություն հաստատողներից առաջիններից մեկն է եղել նա։ Կոլտնտեսություն մտնելու առաջին օրվանից մինչև այսօր էլ Մկրտիչը աշխատում է որպես դարբին։ Նա իր գործի մեջ այնքան հմուտ է, որ տեղացիներից շատերն ասում են՝ «իր մազոտ ձեռքերով մարդ էլ կարող է պատրաստել»։

Կոլտնտեսության ընդհանուր հաջողության մեջ իրենց համեստ բաժինն ունեն անասնաբուծական ֆերմաների վարիչներ՝ Ս. Սմբատյանը, Գ. Հարությունյանը և ուրիշներ։

Գովեստի արժանի են՝ տրակտորիստ Կ. Ստեփանյանը, օղակավարուհի Վ. Սայադյանը, կոլտնտեսական Ջ. Հակոբյանը, անվանի չանաքավոր Ս. Մալխասյանը, օղակավար Լ. Թևոսյանը, օղակավարուհի Ա. Գասպարյանը։ Դ. Խաչատրյանը, Հ. Եղիազարյանը կոլտնտեսության կազմակերպման առաջին օրվանից մինչև հիմա կթվորուհի են և բարեխղճորեն խնամում են իրենց հանձնարարված անասունները։



Նրախուսանքի արժանի շատ մարդիկ կան այստեղ։

— Քաղցրաշենցիները քաղցր մարդիկ են,— կատակում է կոլտնտեսության ավտովարորդ Ս. Կարապետյանը։

Քաղցրաշենը տվել է բազմաթիվ կադրեր, որոնք ստանալով բարձրագույն կրթություն, ներկայումս աշխատում են ժողովրդական տնտեսության ու գիտության տարբեր բնագավառներում։ Երևանի Գյուղատնտեսական ինստիտուտն ավարտելուց հետո Ս. Խաչատրյանը սիրով վերադարձավ իր հարազատ գյուղը։ Նա այժմ կոլտնտեսության գյուղատնտեսն է և իր բոլոր ջանքերը գործադրում է հողագործության կուլտուրան բարձրացնելու համար։ Քաղցրաշենցի Ս. Սանոյանը զբաղվում է տեխնիկական գիտություններով, Ա. Մանուկյանը՝ բժիշկ, Յ. Կարապետյանը՝ գինեգործ, Ս. Բազյանը՝ գրականագետ, Հ. Մուրադյանը, արհեստակցական միության գործիչ, Ժ. Սանոյանը պարտիայի Արտաշատի շրջանային կոմիտեի քարտուղար, Ս. Մուրադյանը՝ պարտշրջկոմի հրահանգիչ. տեղացիներից շատերը ուսուցչություն են անում հենց իրենց գյուղում։

Տնտեսական խոշոր տեղաշարժի հետ միասին գյուղում հսկայական առաջադիմություն կա կուլտուրայի բնագավառում։

— Կար ժամանակ, որ մի նամակ կարդալու համար պետք էր լինում յոթը գյուղից մարդ հավաքել, որոնցից մեկը հազիվ գրագետ լիներ։ Իսկ հիմա, ամբողջ գյուղը գրում ու կարդում է։ Բախտավոր է մեր երիտասարդությունը, երջանիկ ժամանակներում է ապրում։ Մեր ջահելությունը անցավ տառապանքներով ու տանջանքներով լի։

Ծերունի Ե. Սահակյանի այս խոսքերը Քաղցրաշենի կուլտուրական մակարդակի բարձրացման լավագույն վկայությունն են։

Եվ իրոք, գյուղում բացի մի քանի զառամյալ ծերունիներից, բոլորը գրագետ են, գրեթե յուրաքանչյուր ընտանիք ստանում է լրագիր ու ամսագիր։

Կոլտնտեսությունն ունի իր ակումբը՝ հիմնական կինոսարքավորումով, և գյուղացիները գրեթե ամեն օր կարող են նոր կինոնկար դիտել։ Գյուղի բեմում հաճախակի հանդես են գալիս շրջանային թատրոնի դերասաններն ու ռեսպուբլիկայի արվեստի գործիչները։

Բոլոր ընտանիքներն ունեն ռադիոընդունիչներ, դրանից բացի ոմանք արդեն ձեռք են բերել հեռուստատեսներ։ Կոլտնտեսային ընդհանուր գրադարանից բացի շատերն ունեն անձնական գրադարան, որոնք հարստանում են գեղարվեստական նորանոր գրքերով և մարքսիզմ-լենինիզմի կլասիկների աշխատություններով։ Արդեն գյուղի կենցաղում մուտք են գործել լվացքի մեքենան ու սառնարանը, կարի մեքենան ու կենցաղային այլ հարմարանքներ։

Տնտեսական ու նյութական առաջադիմության հետ միասին բարձրացել է քաղցրաշենցիների գնողականությունն ու զարգացել նրանց ճաշակը։ Այժմ նրանք խիստ պահանջկոտ են արդյունաբերական ապրանքները գնելիս։ Գյուղկոոպի խանութը մտնելիս գործակատարից պահանջում են բրդյա ու մետաքսյա գործվածքներ, ընտիր տեսակի հագուստեղեն, լավ տեսակի անուշահոտ օծանելիքներ։

— Մարդիկ,— ասում է խանութի գործակատարուհի Ծովիկը,— անցյալում դժվարությամբ են տրեխներ ձեռք բերել, այժմ հասարակ կոշիկներ չեն հավանում, իրավացի պահանջում են լավը, նորագույնն ու թանկարժեքը։

digitised by A.R.A.R.@

## ՅՈԹՆԱՄՅԱԿԻ ՔԱՅԼԵՐՈՎ

Մեր լայնարձակ Հայրենիքի միլիոնավոր ու միլիոնավոր մարդկանց հետ միասին Քաղցրաշենցիներն էլ ջերմորեն ընդունեցին ՍՄԿՊ XXI արտահերթ համագումարի որոշումները և միահամուռ հավանություն տվին այդ պատմական փաստաթղթերին։ Նրանք իրենց իղձերի ու ձգտումների մարմնացումն են տեսնում այն վիթխարի պլանում, որը հաստատվեց համագումարի կողմից։

Ինչպես Սովետական Միության բոլոր գործարանները, ֆաբրիկաները, հանքահորերը, սովետական տնտեսությունները ու գյուղատնտեսական արտելները, այնպես էլ Քաղցրաշենի կոլտնտեսությունն իր յոթնամյա պլանը կազմում է այն հաշվով, որպեսզի պատվով ու ժամանակից շուտ կատարի պարտիայի ու կառավարության կողմից առաջադրված բոլոր խնդիրները։

Այսուհետև էլ կոլտնտեսային արտադրության առաջատար ճյուղը հանդիսանալու են խաղողագործությունն ու գինեգործությունը, որոնք հիմնական եկամտի աղբյուրն են։ Այդ նպատակով բերքատու այգիների տարածությունը կհասցվի 150 հեկտարի։ Նախատեսվում է 1965 թվականին կոլտնտեսությունում արտադրել մոտ 3000 տոննա խաղող, 1958 թվականին արտադրված 1227 տոննայի դիմաց։ Խաղողի արտադրության այդ քանակն ապահովելու նպատակով կոլտնտեսությունում մեծ ուշադրություն է հատկացվելու այգիները լիարժեք գարձնելուն, պարարտացնելուն, մշակելուն և բուժմանը։ Խաղողի վազերի մի մասը կբարձրացվի լարերի վրա, որը խոշոր չափով կնպաստի բերքատվության ավելացմանը։

Առաջիկա յոթնամյակում կոլտնտեսությունում, մրգի այգիների տարածությունն ընդարձակելու հետ միասին, գործնական քայլեր են արվելու այգիների բերքատվությունը բարձրացնելու ուղղությամբ։ Պտղատու այգիները 22 հեկտարով ընդարձակելու և նրանց մշակությունը բարելավելու միջոցով 1958 թվականին փաստացի արտադրված 40 տոննայի փոխարեն 1965 թվականին արտադրվելու է 300 տոննա միրգ։ Բամբակի բերքատվությունը յուրաքանչյուր հեկտարից կհասցվի 45 ցենտների։ Նախատեսվում է յոթնամյակի վերջում բանջարա-բոստանային կուլտուրաների ցանքատարածության յուրաքանչյուր հեկտարից ստանալ 350—400 ցենտներ բերք։

Անասնաբուծական մթերքների արտադրությունը զգալիորեն ավելացնելու նպատակով յոթնամյակում հատուկ ուշադրություն է հատկացվելու կովերի գլխաքանակի ավելացմանը (100 հեկտար հողատարածության հաշվին 20 կով), անասունների ցեղն ազնվացնելու, կերի կայուն բազա ստեղծելու գործին։ Նախատեսված է յուրաքանչյուր կովի կաթնատվությունը հասցնել 3000 կիլոգրամի, այսինքն՝ կրկնապատկել ներկայիս համեմատությամբ, իսկ յուրաքանչյուր ոչխարի բրդատվությունը հասցնել 5 կիլոգրամի։

Հենց իրենց դաշտերից ստացված կերով անասուններին ապահովելու նպատակով զգալիորեն ընդարձակվելու է եգիպտացորենի ցանքատարածությունը, անցյալ տարվա համեմատությամբ այն կրկնապատկվելու է։ Այդ արժեքավոր կուլտուրայի ցանքի ընդարձակման հետ միասին բարձրացվելու է նրա բերքատվությունը այն հաշվով, որպեսզի 1959 թվականին յուրաքանչյուր հեկտարից ստացվի 50 ցենտներ հատիկ և 450—500 ցենտներ կանաչ մասսա։

Բայց բերքատվության այս չափը Քաղցրաշենցիները վերջնական չեն համարում։ Կոլտնտեսության հաշվետու ընտրական ժողովում, երբ խոսքը վերաբերում էր եգիպտացորենի ցանքին, վարչության նախագահ Ա. Գրիգորյանը ընդհատեց իր զեկուցման հիմնական միտքը և վերհիշելով պարտիայի XXI համագումարի ամբիոնից Դոլինյուկի արտասանած ճառը, ասաց.



— Մեր հողերը վատ չեն Ստալինի անվան կոլտնտեսության հողերից, մեր մարդիկ իրենց աշխատասիրությամբ ետ չեն մնում Դոլինյուկի ղեկավարած օղակի մարդկանցից։ Ուրեմն մենք կարող ենք և պետք է եգիպտացորենի ցանքերից բարձր բերք ստանանք, որպեսզի մեր հանրային հոտը լիովին ապահովվի կերով։

Նախատեսված է յոթնամյակի վերջում կոլտնտեսության համախառն արտադրանքը հասցնել շուրջ 25 միլիոն ռուբլու։ Կոլտնտեսության անբաժանելի ֆոնդին հատկացվելու է տարեկան եկամտի մոտ 20 տոկոսը։

Յոթնամյակի ընթացքում կոլտնտեսությունը 200 հազար ռուբլի ներդնելու է արտադրության մի շարք ճյուղերի մեքենայացման մակարդակը բարձրացնելու համար։ Գնվելու են ևս երկու տրակտոր, հացահատիկի մեկ կոմբայն, եգիպտացորենի մեկ կոմբայն, ավտոմեքենաներ և գյուղատնտեսական այլ գործիքներ։ Կոմպլեքսային մեքենայացման է ենթարկվելու կովաբուծական ֆերման, որը զգալիորեն կթեթևացնի անասնապահների, հատկապես կթվորների աշխատանքը։ Մեքենայացվելու է այգեգործության ամենադժվարին աշխատանքներից մեկը՝ միջթմբային փխրեցումը։ Սարքավորվելու է կոլտնտեսության արհեստանոցը, որպեսզի մեքենաների ու գործիքների զգալի մասը հենց տեղում վերանորոգվի։

Հաշվի առնելով, որ կոլտնտեսությունն անցած տարիների ընթացքում գրեթե հիմնովին ավարտել է արտադրական օբյեկտների կառուցումը, առաջիկա յոթնամյակում հատուկ ուշադրություն է հատկացվելու կուլտ-կենցաղային և առողջապահական օբյեկտների շինարարությանը։

Կառուցվելու է միջնակարգ դպրոցի շենք իր բոլոր հարմարություններով, բաղնիք, մանկամսուրի շենքեր (գյուղում և դաշտում), ակումբի նոր շենք։ Կստեղծվեն պայմաններ հետագայում հասարակական սննդի այնպիսի օբյեկտների կառուցման, որպիսիք են փուռ ու ճաշարան։

Կոլտնտեսության վարչության օժանդակությամբ մինչև 1965 թվականը բոլոր կոլտնտեսականներն իրենց խնայողություններով կառուցելու են քարաշեն հարմար բնակարաններ։

Յոթնամյակում Քաղցրաշենի և հարևան գյուղերի կոլտնտեսություններն իրենց միջոցներով ասֆալտապատելու են Արտաշատ-Քաղցրաշեն միջգյուղային ճանապարհը։

Միայն այս տարի կոլտնտեսությունը կատարելու է մոտ մեկ միլիոն 500 հազար ռուբլու կապիտալ ներդրում։ Այդ գումարը գլխավորապես ծախսվելու է դպրոցի և բաղնիքի շինարարության վրա։

Կոլտնտեսականներին ընտանեկան մի շարք հոգսերից ազատելու նպատակով, վարչությունն արդեն արտելի անդամներին վաճառում է կաթ, հարսանիքի ու նշանդրեքի համար գինի և մսացու։ Գործնական քայլեր են արվում՝ կազմակերպելու բանջարեղենի, մրգեղենի, թխված հացի վաճառքը, դրանով իսկ նախադրյալներ ստեղծելով լիովին անցնելու աշխօրերի դրամական վարձատրության սիստեմին։

Կոլտնտեսությունն արդեն առաջին քայլերն է անում հենց այս տարվա



digitised by A.R.A.R.@

սկզբից յոթնամյակի առաջադրանքները անթերի կատարելու համար։ Անասունների ցեղը բարելավելու, հոտի մայրական կազմի ստերջությունը վերացնելու նպատակով բնական բեղմնավորումից անցել են արհեստական սերմնավորման։ Եթե անցյալ տարվա հունվար ամսին յուրաքանչյուր կովից ստացվել էր 78 կիլոգրամ կաթ, ապա այս տարի նույն ամսին ստացվել է 106 կիլոգրամ կաթ։ Կոլտնտեսությունը գարնանը հիմնականում կատարելու է կերային կուլտուրաների ցանք, որոնց սերմերով արդեն ապահովված է։ Եգիպտացորենի ցանքի համար ձեռք է բերված հիբրիդային սերմացու։ Հիմք է դրված ճագարաբուծության զարգացմանը՝ անասնապահության այդ ճյուղով մսի արտադրությունը զգալի չափով ավելացնելու համար։ Խոզաբուծական ֆերմայի համար գնված են լավ ցեղի վարազներ։ Այդ տարի 25 հեկտարով խաղողի այգիներն ընդարձակելու համար կոլտնտեսությունը լրիվին ապահովված է տնկանյութերով։

Քաղցրաշենցիները ակտիվորեն ձեռնամուխ լինելով կոմունիզմի կառուցման վիթխարի ծրագրի իրագործմանը, արդեն պայքարի են դուրս եկել այս տարի գրավելու հիմնական դիրքեր, այնուհետև վճռականորեն մաքառել՝ յոթնամյակի բարձունքները նվաճելու համար։

Կոլտնտեսության հաշվետու ընտրական ժողովում բրիգադիր Տ. Հարությունյանն ասաց.

— Ութ-տասը տարի առաջ, եթե մեկն ասեր, որ մեր կոլտնտեսությունում հեկտարից կարելի է 40 ցենտներ բամբակ, կամ 100 ցենտներ խաղող ստանալ, կծիծաղեինք նրա վրա, ցնորամիտ կհամարեինք։ Մեր կոլտնտեսականների ջանասեր աշխատանքի շնորհիվ այդ արդեն կատարված փաստ է։ Մենք այժմ գոհ ենք մեր վիճակից։ Սակայն յոթնամյակը պահանջում է ավելի լավ աշխատել, պայքարել նոր հաջողությունների համար։ Մենք ուժ, կարողություն և հնարավորություններ ունենք հեկտարից 45 ցենտներ բամբակ, 200 ցենտներ խաղող ստանալու։

— Յոթնամյա պլանը իրականացնողներն այդ մենք ենք,— ասաց Ա. Մուրադյանը,— յուրաքանչյուր կոլտնտեսական, օղակ, բրիգադա, կոլտնտեսություն։ Վերջին տարիների փորձը ցույց տվեց, որ մենք ինչ որ պլանավորել ենք, իրագործել ենք կյանքում։ Վստահ լինելով մեր ուժերի վրա, մենք՝ կոլտնտեսականներս, հարազատ Կոմունիստական պարտիային խոսք ենք տալիս, որ յոթնամյա պլանը կկատարենք հինգ տարում։

Անտարակույս, քաղցրաշենցիները պատվով կլուծեն իրենց առջև դրված բոլոր խնդիրները։

---



# ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆՑԻՆԵՐԻ ՊԱՏՎԻ ԳՈՐԾԸ

Ա. ԿԻՐԱԿՈՍՅԱՆ

Մեր ռեսպուբլիկայում խաղողի և պտղատու այգիները յոթնամյակում ընդարձակվելու են 44 հազար հեկտարով։ Խաղողի այգիների համախառն բերքը, 1957 թվականի համեմատությամբ, ավելանալու է 2,9 անգամ, պտուղներինը՝ 3 անգամ։

Հոկտեմբերյանի շրջանի հողակլիմայական պայմանները լրիվին հնարավորություն են տալիս կուլտուրական այգեգործություն վարելու և շեշտակիորեն ավելացնելու խաղողի և պտղի համախառն բերքը։ Առաջիկա յոթ տարիներին շրջանի կոլտնտեսություններում և սովետական տնտեսություններում խաղողի և պտղատու այգիների արտադրանքն ավելանալու է երեք անգամ։ Խաղողի բերքատու այգիների տարածությունը կոլտնտեսություններում հասնելու է 2301 հեկտարի, իսկ համախառն բերքը՝ 19.117 տոննայի, կամ, 1958 թվականի համեմատությամբ, աճելու է 2,5 անգամ։ Ընդ որում յուրաքանչյուր հեկտարի միջին բերքատվությունը կազմելու է 83 ցենտներ։ Հայաստանի շրջաններից միայն Հոկտեմբերյանն է, որն ունի այգեպտղաբուծական, բանջարաբուծական և խորդենի մշակող շատ սովետական տնտեսություններ, որոնք իրենց հողային տարածություններով, խաղողի և պտղատու այգիների ծավալով խոշոր տեսակարար կշիռ ունեն շրջանի էկոնոմիկայում։ Յոթնամյակի տարիներին շրջանի սովետական տնտեսություններում բերքատու այգիների տարածությունն ավելանալու և հասնելու է 1676 հեկտարի, կամ աճելու է կրկնակի անգամ, իսկ համախառն բերքը կազմելու է 15.570 տոննա, 1958 թվականի 5107 տոննայի դիմաց, կամ աճելու է երեք անգամ։

Այգեգործության զարգացման գործում որոշակի տեղ ունի նաև պտղաբուծությունը։ 1965 թվականին շրջանի կոլտնտեսություններում և սովետական տնտեսություններում պտղատու այգիների տարածությունները հասնելու են 1809 հեկտարի, 1958 թվականի 650 հեկտարի դիմաց, իսկ համախառն բերքը հասնելու է 10,953 տոննայի, կամ՝ աճ ավելի քան երկու անգամ։

Ոռոգելի հողերը, համեմատաբար նպաստավոր կլիման, ինչպես նաև չօգտագործված հողերը հնարավորություն են տալիս Հոկտեմբերյանը դարձնելու համատարած այգիների և պտղատու ծառերի կանաչ հովիտ, ռեսպուբլիկայի այգեգործական լավագույն շրջաններից մեկը։ Նույնիսկ այսօրվա դրությամբ, երբ այգիները ամբողջ օգտագործվող հողատարածությունների շատ չնչին մասն են կազմում, շրջանի կոլտնտեսությունների էկոնոմիկայում այգեգործությունը խոշոր տեսակարար կշիռ ունի. 1958 թվականին կոլտնտեսությունների դրամական եկամուտների 45 տոկոսն ստացվեց այգեգործությունից։

digitised by A.R.A.R.@

Յուրաքանչյուր հեկտարից կոլտնտեսականներն ստացան 32 հազար ռուբլու դրամական եկամուտ։ Անկասկած, եթե խաղողի և պտղատու այգիների բերքատու տարածությունները կազմեին շրջանի վարելահողի ոչ թե միայն 10 տոկոսը, այլ ավելին, կոլտնտեսությունների եկամուտները զգալիորեն բարձր կլինեին։

Շրջանում այգեգործության ու պտղաբուծության դանդաղ զարգացման հիմնական պատճառներից մեկն այն է, որ կոլտնտեսությունների վարչությունները, սկզբնական պարտիական կազմակերպությունները լուրջ մտահոգություն հանդես չեն բերում եղած այգիների խնամքի ու պահպանության գործում։ Մի շարք կոլտնտեսություններում շատ ցածր է այգեգործության կուլտուրան. համարյա բարձիթողի է արված այն, որի պատճառով ո՛չ միայն արագորեն չի ընդարձակվում պտղատու այգիների տարածությունը, այլև եղածների մի մասը աստիճանաբար անպետքանում է։ Այսպես, օրինակ, 1950 թվականին շրջանի կոլտնտեսություններում եղել է 1795 հեկտար այգի։ Մինչև 1955 թվականը տնկվել է 464 հեկտար նոր այգի. այսպիսով, 1955 թվականի վերջում կոլտնտեսություններում պետք է լիներ 2259 հեկտար այգի, սակայն փաստորեն այգիների տարածությունը պակաս էր, քան 1950 թվականին։

Փաստերը ցույց են տալիս, որ կոլտնտեսությունների ղեկավար աշխատողները ո՛չ միայն չեն մտահոգվել այգեգործության զարգացմամբ, այլև առանձին դեպքերում, թույլ են տվել աչքակապություն։ Շատ այգիներ վատ խնամքի պատճառով անպետքացել են, իսկ եղածների մեծ մասը լիարժեք չի։ Ահա թե ինչու 1950 թվականից մինչև 1958 թվականը, ութ տարում, շրջանի կոլտնտեսություններում խաղողի այգիները աճել են միայն 229 հեկտարով։ Այգեգործությունը շատ դանդաղ է զարգանում, հատկապես Նալբանդյանի ենթաշրջանի գյուղերում։ Այս ենթաշրջանի Նալբանդյան, Ն. Արմավիր, Շենավան, Բերքաշատ, Գետաշեն գյուղերում պահպանվել է նորատունկ այգիների հազիվ 30—40 տոկոսը։

Նույնպիսի վիճակում են նաև պտղատու այգիները։ Բավական է նշել, որ շրջանի կոլտնտեսություններում եղած պտղատու այգիները չեն գերազանցում 1940 թվականի նախապատերազմյան մակարդակը։

Այգեգործության զարգացման հիմնական պայմաններից մեկը տնկելուց հետո վազերի նկատմամբ տարվող խնամքն է՝ հետագայում լիարժեք հեկտարներ ունենալու, յուրաքանչյուր հեկտարի վրա վազերի սահմանված քանակն ապահովելու համար։ Սակայն շրջանի կոլտնտեսություններում վատ խնամքի ու մշակության պատճառով խաղողի այգիների բաց տարածությունները հասնում են 20 տոկոսի։ Շատ կոլտնտեսություններում առանձին հողակտորների վրա այն հասնում է 35—40 տոկոսի։ Այս առումով դրությունն ավելի անմխիթարական է շրջանի սովետական տնտեսություններում։ Ժդանովի, Վորոշիլովի և Ստալինի անվան սովետական տնտեսությունների այգիների բաց տարածությունները գերազանցում են 22 տոկոսից։ Ժդանովի անվան սովետական տնտեսության 90 հեկտար այգիներում պակասում է 44 հազար վազ, կամ 22 հեկտար այգի։ Վորոշիլովի անվան սովետական տնտեսությունում 104 հեկտար խաղողի այգիներում պակասում է 43 հազար վազ։ Նույնը կարելի է ասել նաև Ստալինի անվան սովետական տնտեսության մասին։

Այգեգործության զարգացման գործում եղած թերություններից մեկն էլ այն է, որ մեր կոլտնտեսություններում հատկապես անբավարար է կատարվում աշխատատար պրոցեսների մեքենայացումը։ Շատ այգիներ դեռ մեքենահարմար չեն, չի կիրառվում լարային (շպալերային) սիստեմը։ Չնայած նրան, որ շատ կոլտնտեսություններում զգալի գումարներ են առանձնացվել այգիները լարային սիստեմով մշակելու համար, սակայն անհրաժեշտ նյութերի բացակայության (ցեմենտ, երկաթ) պատճառով հնարավոր չի լինում այդ աշխատանքները կատարել։ Այդ գործին պետք է լրջորեն օգնի ռեսպուբլիկայի Գյուղատնտեսության մինիստրությունը։



Այգիների մշակության հիմնական աշխատանքներից է այգեփորը։ Շրջանի կոլտնտեսություններում ու սովետական տնտեսություններում անցյալ տարի այգիների միայն 90 տոկոսը փորեցին։ Առանձին կոլտնտեսություններում ու սովետական տնտեսություններում այդ աշխատանքները դեռևս պատշաճ որակով չեն կատարվում։ Այգեփորի ժամանակ խնամքով չեն հեռացվում խաղողի վազերի մակերեսային արմատները, հարկ եղածին պես չեն բացում նրանց բները, չեն հեռացվում մոլախոտերի արմատները, ժամանակին չեն քաղհանում, փխրեցնում այգիները։

Չնայած վերջին երկու տարում զգալի չափով բարելավվել է այգիների պարարտացման վիճակը, սակայն մինչև հիմա էլ այդ աշխատանքները կատարվում են անսիստեմ, ով ինչպես կամենում է։ Ամբողջ տարածությունների 15—20 տոկոսը հազիվ է պարարտացվում օրգանական պարարտանյութերով։ Հանքային պարարտանյութերով պարարտացումն էլ երբեմն կատարվում է անփույթ, որը շատ քիչ արդյունք է տալիս։

Բերքատվության բարձրացման հիմնական պայմաններից մեկը վազերի ճիշտ ձևավորումն ու էտումն է։ Վազերի վրա (նրանց կարողության համապատասխան) սահմանված քանակությամբ աչքերով (բողբոջներով) մատեր թողնելը կապահովի վազերի նորմալ բեռնվածությունը և բարձր բերքի ստացումը։

Առանձին պարտիական կազմակերպություններ, կոլտնտեսությունների վարչություններ և սովետական տնտեսությունների դիրեկտորներ միջոցներ չեն ձեռնարկում լավագույն էտողներ պատրաստելու համար. այս պատասխանատու աշխատանքը շատ դեպքերում հանձնարարվում է անփորձ, իրենց գործը չիմացող մարդկանց, որի արդյունքը լինում է վազերի թերբեռնվածությունը կամ գերբեռնվածությունը։ Երկու դեպքում էլ բերքի զգալի կորուստ է տեղի ունենում։ Շատ տեղերում անորակ են կատարվում նաև շվատման աշխատանքները։ Այսպես է դրությունը, օրինակ, Շենավանի, Գետաշենի կոլտնտեսություններում և Ստալինի անվան սովետական տնտեսությունում։

Բերքը փտումից, վազերը սնկային հիվանդություններից, գարնանային ցրտահարություններից պաշտպանելու համար խիստ կարևոր միջոցառում է հենակավորումը։ Մի բան, որ շրջանի առանձին կոլտնտեսություններում դեռևս վատ է կատարվում։ 1957 թվականին վատ հենակավորման պատճառով Մրգաշատի կոլտնտեսությունում և «Արաքս» սովետական տնտեսությունում բերքի մի մասն աշնան անձրևներից փչացավ։

Խաղողի և պտղատու այգիների բերքատվության բարձրացման գործում մեծ նշանակություն ունի կոլտնտեսականների նյութական շահագրգռվածությունը։ Այն կոլտնտեսություններում, որտեղ այդ գործը լավ է դրված, տարեցտարի ընդարձակվում են այգիների տարածությունները, բարելավվում նրանց մշակության եղանակները և բարձրանում բերքատվությունը։ Այսպես, Տանձուտ գյուղի Էնգելսի անվան կոլտնտեսությունն ունի ընդամենը 50 հեկ-

digitised by A.R.A.R.@

տար խաղողի բերքատու այգի. անցած տարի յուրաքանչյուր հեկտարից ստացվեց 124 ցենտներ խաղող, կամ 620 տոննա խաղողի համախառն բերք, որի դրամական արժեքը կազմեց 2 միլիոն 897 հազար ռուբլի։ Մրգաշատ գյուղի Ստալինի անվան կոլտնտեսությունում հավաքվեց մոտ 1170 տոննա խաղող, որի վաճառքից ստացվեց 4 միլիոն 800 հազար ռուբլի դրամ։ Այգեշատ գյուղի «Հաղթանակ» կոլտնտեսության կոլտնտեսականները 54 հեկտարից հավաքեցին 584 տոննա խաղող, որի դրամական եկամուտը կազմեց 2 միլիոն 500 հազար ռուբլի։ Այգեգործությունից բարձր եկամուտներ են ստանում նաև Նորապատի, Արմավիրի, Բամբակաշատի, Հոկտեմբերի կոլտնտեսությունները։

Սակայն անհրաժեշտ է նշել, որ շատ կոլտնտեսություններ և սովետական տնտեսություններ խաղողի այգիներից ու պտղատու ծառաստաններից դեռևս ցածր բերք են ստանում։ Անցյալ տարի շրջանի 11 կոլտնտեսություններում և 4 սովետական տնտեսություններում խաղողի այգիների յուրաքանչյուր հեկտարից ստացվեց 24—27 ցենտներ բերք։ Խիստ ցածր բերք ստացան և իրենց պլանային առաջադրանքները չկատարեցին Բերքաշատ, Շենավան, Վարդանաշեն, Փ. Շահրիար, Ն. Արմավիր, Շախվառուտ, Գետաշեն, Նալբանդյան գյուղերի կոլտնտեսությունները, Ստալինի, Ժդանովի անվան, «Արաքս» սովետական տնտեսությունները։

Խաղողի և պտղատու այգիների զարգացման լայն ռեզերվներ ու հնարավորություններ ունեն նաև սովետական տնտեսությունները, որոնց տրամադրության տակ կան հողային մեծ տարածություններ, բավարար քանակությամբ բանվորական ուժ։ Լավագույն աշխատանքի դեպքում հնարավոր է այդ տնտեսություններում զգալի չափով բարձրացնել բերքատվությունը, ավելացնել համախառն բերքը։ Սակայն անցած 6 տարիներին նրանց այգիների տարածությունն ավելացել է ընդամենը 140 հեկտարով։ Դրությունը անմխիթարական է, հատկապես, պտղատու այգիների տարածություններն ընդարձակելու ուղղությամբ։ Նշված սովետական տնտեսությունների պարտիական կազմակերպությունների և ղեկավարների անբավարար աշխատանքի պատճառով 1953 թվականի համեմատությամբ ո՛չ միայն չի ավելացել պտղատու այգիների տարածությունը, այլև այն կրճատվել է 854 հեկտարով։ Եթե 1953 թվականին այդ սովետական տնտեսություններում պտղատու այգիները 2365 հեկտար էին, ապա այժմ 1511 հեկտար են կազմում։ Պտղատու այգիների տարածությունները խիստ կրճատվել են Լուկաշինի և Վորոշիլովի անվան սովետական տնտեսությունում։

Հետևողական աշխատանք չի կատարվում այգիների վերանորոգման ու նորերի ստեղծման գործում։ Ստալինի, Ժդանովի անվան, «Արաքս» և գրեթե մյուս բոլոր սովետական տնտեսություններում անհրաժեշտ մշակություն չի կազմակերպվում խաղողի վազերի և պտղատու ծառերի նկատմամբ, խախտվում են ագրոմիջոցառումները, մշակության աշխատանքները կատարվում են անորակ, պայքար չի տարվում բերքի կորուստների դեմ, լավ չի կազմակերպվում աշխատանքը և թույլ է կարգապահությունը։ Ահա թե ինչու նշված սովետական տնտեսություններում տարիներ շարունակ չեն կատարվում բերքատվության պլանային առաջադրանքները։ 1957 թվականին յուրաքանչյուր հեկտարից հավաքվեց 34,5 ցենտներ խաղող, իսկ անցյալ տարի այն կազմեց 49,3 ցենտներ։

Արդեն նշեցինք, որ Հոկտեմբերյանն ունի հողային մեծ ռեզերվներ թե՛



կոլտնտեսություններում, և թե, հատկապես, սովետական տնտեսություններում։ Մյասնիկյանի և Լուկաշինի անվան սովետական տնտեսությունների, Հոկտեմբերի, Նալբանդյանի, Գետաշենի, Շենավանի, Արևիկի, Մարգարայի, Փշատավանի և շատ ուրիշ գյուղերի կոլտնտեսությունների օրինակով կարելի է ցույց տալ, թե շրջանի կոլտնտեսություններն ու սովետական տնտեսությունները առաջիկա մի քանի տարում որքան կարող են ընդարձակել խաղողի և պտղատու այգիների տարածությունները և բարձրացնել նրանց բերքատվությունը։

Հոկտեմբեր գյուղի Լենինի անվան կոլտնտեսության վարելահողերի տարածությունները հասնում են 1100 հեկտարի. եթե ամեն տարի 25 տոկոսով ավելացվեն խաղողի այգիները, ապա առաջիկա մի քանի տարում կոլտնտեսությունը կունենա 350—400 հեկտար խաղողի այգի և շատ կարճ ժամանակվա ընթացքում այստեղ 3—4 անգամ կավելանա խաղողի համախառն բերքը։ Եթե անցյալ տարի Հոկտեմբերի կոլտնտեսականները խաղողի այգիներից ստացան 2 միլիոն 227 հազար ռուբլու դրամական եկամուտ, ապա 1962—1963 թվականներին այդ գումարը կարող է հասնել 5—6 միլիոն ռուբլու, որը լիակատար բազա կստեղծի կոլտնտեսականների նյութական պայմանները է՛լ ավելի բարելավելու համար։

Մյասնիկյանի անվան սովետական տնտեսությունը կազմակերպվեց Թալինի ջրանցքից ստացվող ջրի բազայի վրա, ընդամենը չորս տարի առաջ։ Այստեղ կա մոտ 3000 հեկտար վարելահող, որի մեկ քառորդը նույնիսկ չի իրացված։ Հարուստ և արգավանդ այս հողերում ամեն տարի տնկվում են ավելի քան 70—100 հազար խաղողի արմատակալներ, որոնք շատ լավ կպչում և հիանալի աճում են։ Նույնպիսի հողային պայմաններ ունեն նաև ուրիշ կոլտնտեսություններ ու սովետական տնտեսություններ։ Սովետական մարդկանց ջանասեր աշխատանքի շնորհիվ մի քանի տարի հետո Արագածի ստորոտն ու Արարատյան հովիտը կծածկվեն բերքառատ այգիներով։

Այգեգործության զարգացման և բերքատվության բարձրացման կարևոր պայմաններից մեկն էլ շրջանացված բարձր բերքատու սորտերի ընտրության հարցն է։ Տարիների փորձով ապացուցված է, որ Հոկտեմբերյանի հողակլիմայական պայմաններում հիանալի բերք է ստացվում գառան դմակ, ռքածիթելի ու բանանս սորտերից։ Ռքածիթելու փոփոխակների բերքից ստացվում են բարձր որակի սեղանի գինիներ։ Շահումյանի անվան սովետական տնտեսությունում այդ սորտի խաղողի այգիների մեկ հեկտարի միջին բերքատվությունը տարբեր այգետարածություններում տատանվել է 80—230, իսկ բանանսինը՝ 70—200 ցենտների միջև։ Լավ արդյունք են տալիս նաև արարատ, մսխալի սորտերի փոփոխակները։ Շատ կոլտնտեսություններ ու սովետական տնտեսություններ արդեն սեփական տնկարաններ ունեն և կարող են աճեցնել ցանկացած սորտերի փոփոխակներ։

Կուլտուրական այգեգործությունը արագորեն զարգացնելու համար անհրաժեշտ է զգալի չափով բարձրացնել այգիների մշակման մեքենայացման մակարդակը։ ՄՏ կայանները վերակազմվելուց հետո կոլտնտեսությունները ձեռք բերեցին տրակտորներ, կցվող գործիքներ և այլ մեքենաներ. հնարավոր դարձավ սեփական տեխնիկայով այգիների բուժումը, միջշարային տարածությունների վարը, պարարտացումը, կուլտիվացիան և շատ այլ աշխատատար պրոցեսներ մեքենայացնել։ Ստեղծված նորոգման տեխնիկական կայանում

digitised by A.R.A.R.@

կազմակերպվել է մելիորատիվ ջոկատ, որի օգնությամբ կոլտնտեսությունները իրենց սեփական տեխնիկայի միջոցով զգալի չափով կրճատել են ձեռքի աշխատանքը, մեքենայացրել այգիների մշակության շատ պրոցեսներ։ Օգտագործելով այդ հնարավորությունները, կոլտնտեսությունները նոր այգիները տնկում են նախօրոք խոր պլանտաժ արված և լավ նախապատրաստված ու մեքենահարմար հողերում։ Այգեփորը (շարամիջյան վարը) մոտ 70 տոկոսով կատարվում է մեքենաների օգնությամբ, որը ո՛չ միայն զգալի չափով թեթևացնում է կոլտնտեսականների ձեռքի աշխատանքը, այլև նպաստում բերքատվության բարձրացմանը։ Շրջանի կոլտնտեսություններում ու սովետական տնտեսություններում մեխանիզատորները աշխատում են եղած մեքենաների մի մասը վերափոխել և հարմարեցնել տեղի պայմաններին։ Այգեգործության աշխատատար պրոցեսների մեքենայացումը հնարավորություն կտա անպայման եռապատկել ու քառապատկել այգիների տարածությունները, որը խաղողի համախառն բերքի շեշտակի ավելացման հիմնական պայմանն է։

Հոկտեմբերյանում այգիների տարածությունները ընդարձակելու և բերքատվությունը բարձրացնելու ամենակարևոր պայմանը՝ ոռոգելի ջրի բավարար պաշարներ ստեղծելն է։ Մինչև վերջին տարիներս ջրի եղած ռեսուրսները այս կամ այն չափով բավարարում էին շրջանի գյուղատնտեսական կուլտուրաների ոռոգմանը։ Սակայն այժմ, երբ խնդիր է դրված կրկնապատկել ու եռապատկել այգիների տարածությունները, բարձրացնել խաղողի և գյուղատնտեսական մյուս կուլտուրաների բերքատվությունը, հրամայական պահանջ է դառնում շրջանը լրացուցիչ ջրով ապահովելը։ Ճիշտ է, Հոկտեմբերյանի շրջանը որոշ չափով ջուր ստանում է Թալինի ջրանցքից և Այղր լճի ջրհան կայանից, սակայն դրանք այնքան քիչ են, որ հազիվ թե բավարարեն շրջանի ջրի պահանջի մի չնչին մասը։ Ռեսպուբլիկայի Գյուղատնտեսության ու Ջրային մինիստրությունները պետք է վճռական միջոցների դիմեն Ստորին Զանգվի ջրանցքի շինարարությունն ավարտելու և Սեվ ջրի ջրհան կայանի շինարարությունն արագացնելու համար այն հաշվով, որ մինչև հունիս ամիսը շրջանը կարողանա ջուր ստանալ այդ ջրանցքներից։ Բացի այդ, անհրաժեշտ է զգալիորեն ավելացնել Արփա լճից շրջանին տրվող ջրի քանակը։

Այս ամենից բացի, շրջանի որոշ կոլտնտեսություններում՝ Երասխահուն, Մարգարա, Վարդանաշեն, սկսել են փորել արտեզյան ջրհորներ, որոնց ջուրը նույնպես կօգտագործվի ոռոգման նպատակներով։ Ջրհան մեքենաների օգնությամբ օգտագործվելու են նաև ճահիճների չորացման նպատակով փորված կոլեկտորներում (ջրամբարիչներ) եղած ճահճաջրերը։

Գիտական լուրջ և մելիորատիվ աշխատանքներ են կատարվում շրջանում աղուտային հողերը յուրացնելու ուղղությամբ։ Ընթացիկ տարում Արևիկ և Հոկտեմբեր գյուղերում տասնյակ հեկտար այդպիսի հողեր հատկացվելու են նոր այգիների աճեցման։

Այգեգործության զարգացումը առանձնակի նշանակություն է ստացել հատկապես այժմ, երբ խնդիր է դրված մեծ չափով ավելացնելու խաղողի և պտուղների արտադրությունը։

Պարտիայի Հոկտեմբերյանի շրջանային կոմիտեն այգեգործության զարգացման հարցը անցյալ տարի հատուկ քննության առարկա դարձրեց պլենումում։ Գործարար մթնոլորտում քննարկվեցին այգեգործության զարգացման և բարձր բերք ստանալու հարցերը։ Զեկուցողը և գրեթե բոլոր ելույթ ունեցող-



ները նշեցին, որ Հոկտեմբերյանի շրջանում գյուղատնտեսության զարգացման առաջատար ճյուղերից մեկը հանդիսանալու է այգեգործությունը։ Այդ արժեքավոր կուլտուրան հնարավորություն է ընձեռում զգալի չափով ավելացնելու դրամական եկամուտները։ Փաստեր բերվեցին այն մասին, որ շատ կոլտնտեսություններում (Արմավիր, Տանձուտ, Մրգաշատ) այգեգործությունից ստացվող դրամական եկամուտները կազմում են ընդհանուր եկամտի 60—80 տոկոսը։ Հոկտեմբերյանի պարտիական կազմակերպությունները վճռականորեն պայքարում են այն բանի համար, որպեսզի մինչև 1961 թվականը խաղողի և պտղատու այգիների տարածությունները շրջանում ընդարձակվեն 7695 հեկտարով։

Պարտիայի շրջանային կոմիտեն՝ պարտիական կազմակերպությունների և կոլտնտեսությունների վարչությունների հետ միասին միջոցառումներ մշակեց այգեգործության բնագավառում աշխատող և իրենց չարդարացնող կադրերը գործիմաց, գյուղատնտեսական բարձրագույն և միջնակարգ կրթություն ունեցող, իրենց գործը սիրող կադրերով փոխարինելու ուղղությամբ։ Փորձը ցույց է տվել, որ իր գործի վարպետը, կազմակերպչական ունակություններ ունեցողը միշտ էլ մեծ հաջողությունների է հասնում աշխատանքում։ Այսպես, օրինակ, Տանձուտի կոլտնտեսությունից բրիգադավար Գ. Քամալյանը ջանասեր, գործիմաց աշխատող է, լավ կազմակերպիչ։ Դրա շնորհիվ այս բրիգադան միշտ բարձր բերք է ստանում խաղողի այգիներից։ Անցյալ տարի Գ. Քամալյանի բրիգադայի աշխատողները յուրաքանչյուր հեկտարից հավաքեցին 140 ցենտներ բարձրորակ խաղող։ Հեկտարից 110—130 ցենտներ խաղողի բերք ստացան՝ Մրգաշատից բրիգադավար Գ. Մարկոսյանը, Արմավիրից՝ Ա. Գևորգյանը, Արևիկից՝ Ա. Աբրահամյանը, Շահումյանի անվան սովետական տնտեսությունից՝ Հ. Խաչատրյանը, Վորոշիլովի անվան սովետական տնտեսությունից՝ Ա. Մացոյանը և շատ շատերը։

Տարիներ շարունակ շատ կոլտնտեսություններում խախտվել է անհատական գործավարձի սկզբունքը։ Շրջանային կոմիտեն պարտիական կազմակերպություններից պահանջեց ամեն կերպ արմատավորել անհատական գործավարձը, խորհուրդ տվեց կոլտնտեսություններին պլանը գերակատարելու դեպքում կոլտնտեսականներին խրախուսել լրացուցիչ հատուցմամբ։

Հոկտեմբերյանի պարտիական կազմակերպությունները, բոլոր աշխատողները գործարար սոցիալիստական մրցություն են ծավալել ՍՄԿՊ XXI համագումարի կողմից ընդունված յոթնամյա պլանը անշեղորեն կենսագործելու և առաջիկա մի քանի տարում գյուղատնտեսական մթերքների առատություն ստեղծելու համար։ Կոմունիզմի ծավալուն կառուցման համաժողովրդական պայքարում հոկտեմբերյանցիներն իրենց արժանի տեղը կունենան ռեսպուբլիկայի առաջավոր շրջանների շարքում։

digitised by A.R.A.R.@

# ԲԱԶՄԱՊԱՏԿԵՆՔ ՆԱԽՆԱԿԱՆ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Բ. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ

Պարտիայի վերջին տարիների խոշորագույն միջոցառումները սոցիալիս-
տական տնտեսության զարգացման ուղղությամբ՝ բարերար ազդեցություն
ունեցան Ազիզբեկովի շրջանի գյուղատնտեսության ընթացքի վրա։ Շուրջ եր-
կու տարի է, որ մեր շրջանը թևակոխել է կոլեկտիվ տնտեսության հարաճուն
վերելքի ուղին։ Ճիշտ է, այդ վերելքը ներկայումս դեռ հզոր չէ, բայց և այն-
պես շրջանի էկոնոմիկան այսօր գտնվում է ճիշտ հունի մեջ։ Մեր ձեռք բերած
նվաճումները միայն նախնական են։ Մենք պարտավոր ենք առաջիկա տարի-
ներին բազմապատկել դրանք։

Արձագանքելով ՍՄԿՊ XX և XXI համագումարների ու Կենտկոմի պլե-
նումների որոշումներին, ազիզբեկովցիները հաստատ որոշել են՝ առաջիկա
յոթնամյակում շրջանը դարձնել ռեսպուբլիկայի առաջավոր անասնապահա-
կան օջախներից մեկը։

Ի՞նչ հիմքեր ունենք պնդելու, որ մենք կհասնենք ռեսպուբլիկայի առա-
ջավոր շրջաններին։ Թեկուզ վերջին տարիներին մեր շրջանում եղած տնտե-
սական ակնառու տեղաշարժերը, լեռնային հարուստ արոտավայրերը ու մի
շարք այլ ռեզերվներ, որոնց օգտագործումը նախ և առաջ կախված է մեր
բանիմացությունից և կազմակերպական շնորհքից։

Վերջին տարիներում վերակառուցվել է շրջանի անասնաբուծության զար-
գացման ամբողջ աշխատանքը։ 1953 թվականին կովերի կաթնատվությամբ
մեր շրջանը ռեսպուբլիկայում գրավում էր հետին տեղերից մեկը։ Շրջանի կոլ-
տնտեսություններում ընդամենը կար 1200 կով, 13800 ոչխար, յուրաքանչյուր
կովից ստացվում էր 625 կգ կաթ, յուրաքանչյուր ոչխարից՝ 1,8 կգ բուրդ։
Պետք է ասել, որ կովերը փոքր էին, նվազ քաշով, գոմերը մութ ու խո-
նավ, կերը չէր բավականացնում և ցածրորակ էր։ Շրջանի Գորադիզ, Բարձրու-
նի, Սերս, Խնձորուտ գյուղերի կոլտնտեսություններում կաթնապրանքային
ֆերմաների մթերատվությունը ցածր էր և դրանք եկամուտ չէին բերում կոլ-
տնտեսություններին։

Պարտիայի և կառավարության իմաստալի ցուցումները, որոշումներն ու
կոչերը օգնեցին՝ հաղթահարելու մեր շրջանի անասնաբուծության ետ մնալը։
Ամենից առաջ անասնապահներն իրենց օրինակելի և բարեխիղճ աշխատան-
քի միջոցով բարելավեցին անասունների խնամքն ու պահպանությունը։

Անասնապահների շրջանում արմատավորվեցին աշխատանքի առաջատար
եղանակները, լայն ծավալ ստացավ սոցիալիստական ստեղծագործ մրցությու-
նը։ Անասնապահների լավ աշխատանքի շնորհիվ 1958 թվականին, 1957 թվա-
կանի համեմատությամբ, անասունների գլխաքանակն ավելացել է հետևյալ
չափերով. խոշոր եղջերավոր անասուններինը՝ 522 գլխով (որից կովերինը՝



100), ոչխարներինը և այծերինը՝ 4000, խոզերինը՝ 350 գլխով, թռչուններինը՝
1489 թևով։ Շրջանի անասնապահները սահմանված ժամկետից շուտ կատա-
րեցին և գերակատարեցին պետությանը միս, կաթ, բուրդ վաճառելու տարեկան
պլանները, ըստ որում Ազիզբեկովի շրջանը վերջին տասնամյակի ընթացքում
երկրորդ տարին է, որ բրդի հանձնման տարեկան պլանը ո՛չ միայն կատա-
րում, այլև գերակատարում է։ 1958 թվականին անասնաբուծական մթերքների
արտադրությունն ավելացնելու գործում նկատելի հաջողություններ ձեռք բե-
րելու համար շրջանը արժանացավ ՀԿՊ Կենտկոմի և ՀՍՍՌ Մինիստրների Սո-
վետի դրամական մրցանակին։

Անասնապահության գլխաքանակի տարեկան պլանների կատարման գոր-
ծում մեծ հաջողությունների են հասել շրջանի Արտավանի, Գնդևազի, Կեչու-
տի, Կարմրաշենի, Խնձորուտի, Հերհերի, Ազատեկի կոլտնտեսությունները։

Շրջանի կոլտնտեսություններում արագ կերպով զարգանում են ոչխարա-
բուծությունն ու խոզաբուծությունը։ Այդ նշանակում է, որ կոլտնտեսություն-
ներն արդեն գտել են մսի արտադրության ավելացման ուղիներն ու ռեսուրս-
ները։

Շրջանի պարտիական և սովետական կազմակերպությունները վերջին
տարիներին լուրջ կերպով զբաղվում են կաթի արտադրության ավելացման
հարցով։ Անասնապահական մթերքների արտադրության ավելացման վերա-
բերյալ մեր պարտիայի ձեռնարկած միջոցառումները տվեցին դրական ար-
դյունք։ Միայն 1957 և 1958 թվականների ընթացքում շրջանի կոլտնտեսու-
թյուններում մեկ ֆուրաժային կովի կաթնատվությունը ավելացել է 600 կի-
լոգրամով։ Կաթի մեկ տարվա արտադրությունը ավելի շատ է, քան 1955 և
1956 թվականներինը միասին վերցրած։

Կովերի կաթնատվության բարձրացման ուղղությամբ լուրջ հաջողություն-
ների են հասել Ազատեկի, Գորադիզի, Բարձրունու, Խնձորուտի, Սերսի,
Գնդևազի, Արտավանի, Դայլախլուի և Կեչուտի կոլտնտեսությունները, որոնք
ամեն մի կովից ստացել են 1200—1700 կգ կաթ։

Ուշադրության արժանի են այն կոլտնտեսությունները, որոնք տարիներ
շարունակ ամեն մի կովից 600 կիլոգրամից ավելի կաթ չէին ստանում։ Այս-
պես, օրինակ, Գորադիզի կոլտնտեսությունը, որը շրջանի ամենահեռավոր և
ամենալեռնային գյուղերից է, 1957 թվականին յուրաքանչյուր կովի կաթնա-
տվությունը հազիվ կարողացավ հասցնել 821 կիլոգրամի, իսկ 1958 թվակա-
նին այն հասել է 1435 կիլոգրամի։ Ազատեկի կոլտնտեսությունը (նախագահ՝
Պ. Վարդանյան) ժամանակին և ճիշտ դասավորեց անասնապահական կադ-
րերը։ Ֆերմայի վարիչ նշանակվեց երիտասարդ կոմունիստ Հ. Նազարյանը։
1956 թվականի համեմատությամբ, 1958 թվականին ամեն մի կովի կաթնա-
տվությունն ավելացավ 1103 կիլոգրամով։

Շրջանում ամենահետին տեղն էր գրավում Սերսի «Պրոլետար» կոլտնտե-
սությունը։ Շատ կոլտնտեսականներ թերահավատորեն ասում էին, որ Սերսի
մոզիներից 500 կիլոգրամից ավելի կաթ ստանալ հնարավոր չէ։ Շրջանային
կոմիտեն հատուկ ուշադրություն հատկացրեց այդ կոլտնտեսության էկոնոմի-
կայի զարգացմանը։ Կոլտնտեսության պարտիական կազմակերպությունը
ֆերմաները համալրեց բանիմաց կոմունիստներով, կոլտնտեսականներով,
ծավալվեց սոցիալիստական մրցությունը կոլտնտեսությունը շրջանի առաջա-
վորներին հասցնելու համար։ Լարված ու համառ աշխատանքի շնորհիվ սեր-

digitised by A.R.A.R.@

սեցիները կարճ ժամանակամիջոցում հասան այն բանին, որ յուրաքանչյուր կովից ստացան 1400 կգ. կաթ, յուրաքանչյուր ոչխարից՝ 3 կգ բուրդ։

Իրենց լավ աշխատանքով աչքի են ընկնում Կեչուտի Կիրովի անվան կոլտնտեսության անասնապահները։ Նրանք յուրաքանչյուր կովից ստացել են 1700 կգ կաթ։ Այդ կոլտնտեսությունն ունի բարելավված ցեղի 200 գլուխ կով։ Այժմ հատուկ ուշադրություն է հատկացվում կոլտնտեսության կովերի կազմը լրիվ տոհմային դարձնելուն։

Վերջին տարիների ընթացքում շրջանում կազմակերպվել են երկու սովետական տնտեսություն։ Կաթնապրանքային սովետական տնտեսությունը անցյալ տարի արտադրել է 388 տոննա կաթ։ Բոլոր անասունները ապահովված են տիպային հարմարավետ անասնագոմերով, որոնք գտնվում են Քուշբեկի նախկին ամայի ձորերում, որտեղ բարձրանում են բնակելի ու վարչական շատ շինություններ։ Տնտեսությունը (դիրեկտոր Պ. Հարությունյան) կարող է հպարտանալ, որ կարճ ժամանակամիջոցում յուրաքանչյուր կովի կաթնատվությունը 600-ից հասցրեց 1770 կիլոգրամի, ստեղծեց բնական կերի կայուն բազա, 20—30 կոպեկով իջեցրեց մեկ կիլոգրամ կաթի ինքնարժեքը։ Նախատեսվում է այդ սովետական տնտեսությունում ստեղծել նաև տոհմային տրնտեսություն, ձեռք բերել 120—150 ցեղային երինջ, աճեցնել, բազմացնել դրանք և վաճառել շրջանի կոլտնտեսություններին։

Շրջանի անվանի կթվորուհիներ Վ. Ստեփանյանը (Կեչուտ) և Զ. Աղաևան (սովետական տնտեսություն) յուրաքանչյուր կովից ստացել են 2300 կգ կաթ։ Նրանք հատուկ դասընթացներ են անցել, կթվորուհու մասնագիտությունը ձեռք են բերել կոլտնտեսությունում, որտեղ 20 տարի է, ինչ աշխատում են։ Աղաևայի և Ստեփանյանի խնամած առանձին կովեր տվել են 2700—3050 կգ կաթ։ Կաթնատվության բարձրացման իրենց պլանները 130—170 տոկոսով են կատարել նաև կթվորուհիներ՝ Ա. Բաղալյանը (Գորավիզ), Վ. Սարգսյանը (Աղատեկ), Ա. Հակոբյանը (Խնձորուտ), Վ. Ստեփանյանը (Կարմրաշեն) և շատ շատերը։ Այս փաստերը վկայում են, որ հնարավոր է բարձրացնել կոլտնտեսությունների բոլոր կովերի կաթնատվությունը և յուրաքանչյուր կովից ստանալ ոչ թե 1300, այլ 1700—2000 կգ կաթ։

Սակայն ձեռք բերված ցուցանիշները դեռևս գոհացուցիչ չեն։ Շրջանի կոլտնտեսություններն ունեն ավելի մեծ հնարավորություններ, որոնք դեռևս չեն օգտագործվում։

Կովերի կաթնատվությունը բարձրացնելու համար անհրաժեշտ է ունենալ կերի կայուն բազա։ Մեր շրջանի բնա-կլիմայական պայմանները թույլ են տալիս ավելի շատ խոտ, սիլոս կուտակել։ Կովերին հյութալի կերով ապահովելու նպատակով այս տարի 100 հեկտարով ընդարձակվելու են եգիպտացորենի և 60 հեկտարով կերի ճակնդեղի ցանքատարածությունները։ Անցյալ տարի Ջառիթափի սովետական տնտեսությունը յուրաքանչյուր հեկտարից ստացավ 320 ցենտներ ճակնդեղի բերք։ Անհրաժեշտ է ստեղծել վիտամիններով հարուստ հյութալի կերի բազա, որի միջոցով կբարձրանա կովերի կաթնատվությունը, կիջնի կաթի ինքնարժեքը։ Շրջանը հարուստ է ալպյան արոտավայրերով։ Տարիների փորձը ցույց է տվել, որ այնտեղ հեշտ ու նպատակահարմար է բազմացնել ավելի շատ ոչխար, քան ունենք այժմ։

Ընդամենը երկու տարի առաջ շրջանի Գնդևազ, Սերս, Բարձրունի, Ագիգբեկով գյուղերի կոլտնտեսությունները կերի պակասության պատճառով ոչխարի հոտերը ձմռանը քշում էին Նախիջևանի և Նորաշենի շրջանները և պահում էին միայն արոտով։ Մինչև գարուն ոչխարները նիհարում էին, մեծ չափերի էին հասնում անկումները, հաջող չէր անցկացվում նաև ոչխարների ծինը։ Այժմ այդ կոլտնտեսություններում մանր եղջերավոր անասունների հոտերը պահվում են գյուղի անասնագոմերում և ապահովված են կերով։ Կոլտնտեսություններն ունեն իրենց սեփական յայլաղատեղերը, ոչխարների արածեցումը կատարվում է ըստ զոնաների։



Պլանով նախատեսված 450 ցենտներ բրդի դիմաց, 1958 թվականին այդ կոլտնտեսությունները պետությանն են հանձնել 579 ցենտներ, որը 1957 թվականի համեմատությամբ 129 ցենտներով ավելի է։ Յուրաքանչյուր ոչխարից պլանով նախատեսված 2,2 կիլոգրամի դիմաց ստացվել է միջին հաշվով 2,5 կգ բուրդ։ Կոլտնտեսությունները միայն բրդից ստացել են 1.733.000 ռուբլի դրամական եկամուտ, որը 1957 թվականի հետ համեմատած 736.624 ռուբլով ավելի է։

Ոչխարաբուծության զարգացման և բրդի արտադրության ավելացման գործում լուրջ հաջողությունների են հասել նաև Արտավանի, Գնդևազի, Սերսի կոլտնտեսությունները։ Բավական է նշել, որ Արտավանի և Գնդևազի կոլտնտեսություններից յուրաքանչյուրը պետությանն է հանձնել 68—70 ցենտներ բուրդ և ստացել 202—209 հազար ռուբլի եկամուտ։

Պարտիայի Կենտկոմի Սեպտեմբերյան պլենումի որոշումներից հետո շրջանի կոլտնտեսությունները 5 տարվա ընթացքում ձեռք են բերել զգալի հաջողություններ։ Այդ ժամանակամիջոցում ոչխարաբուծությունից ստացված դրամական եկամուտները աճել են 2 անգամ։ Արտավանում ոչխարների գլխաքանակը հասել է 2855-ի։ Այստեղ ոչխարաբուծական ֆերմայի վարիչն է սկզբնական պարտիական կազմակերպության քարտուղար Վ. Հովհաննիսյանը։ Ֆերման կոմպլեկտավորված է գործունյա և մասնագետ ոչխարաբույծներով։ Կոլտնտեսության անվանի հովիվներ Ա. Ավետիսյանը և Ա. Բաղալյանը իրենց խնամած յուրաքանչյուր 100 ոչխարից ստացել են 100 գառ և յուրաքանչյուր ոչխարից՝ 3,1 կգ բուրդ։ Նույնպիսի հաջողությունների են հասել Սերսի և Խնձորուտի կոլտնտեսությունների ոչխարաբույծները։ Հովիվներ Ա. Վարդանյանը, Բ. Բալխասյանը (Սերս) և Մ. Դավթյանը (Խնձորուտ) յուրաքանչյուր 100 մայր ոչխարից ստացել են 100 գառ և յուրաքանչյուր ոչխարից՝ 2,8 կգ բուրդ։

Ոչխարաբուծությունը տալիս է շրջանի կոլտնտեսությունների անասնաբուծության ընդհանուր եկամտի 75 տոկոսը։ Այն տալիս է միս, կաթ, մորթի և միաժամանակ այնպիսի թանկարժեք հումք, ինչպիսին է բուրդը։ Այս հանգամանքները հաշվի առնելով, շրջանի պարտիական և սովետական կազմակերպություններն ու կոլտնտեսության վարչությունները մեծ ուշադրություն են հատկացնում ոչխարաբուծության հետագա զարգացմանը։

Շրջանի բնա-կլիմայական պայմանների ռացիոնալ օգտագործումը մեծ նշանակություն ունի ոչխարաբուծության զարգացման համար։ Հետևելով ռեսպուբլիկայի առաջավորների փորձին, շրջանի կոլտնտեսություններն ու սովետական տնտեսությունները կազմակերպեցին ոչխարների արհեստական սերմնավորում։ Տոհմային արտադրողները տեղական ոչխարների հետ տրամախաչելու ճանապարհով բարելավվել է ոչխարների ցեղայնությունը և այժմ

digitised by A.R.A.R.@

*խառնածին, կիսանրբագեղմ ոչխարները կազմում են ընդհանուր գլխաքանակի 75 տոկոսը։ Ոչխարների տոհմի բարելավման շնորհիվ բարձրանում է բրդատվությունը։ Տեղական ոչխարները խառնածին ոչխարներով փոխարինելը շատ օգտակար է կոլտնտեսությունների համար։ Նուրբ և կիսանուրբ բուրդն իր որակով և արժեքով մի քանի անգամ բարձր է տեղական ոչխարների բրդից։*

## Ոչխարաբուծության վերելքը Ազիզբեկովի շրջանում

| *Ցուցանիշներ* | *1953* | *1954* | *1955* | *1956* | *1957* | *1958* |
|---|---|---|---|---|---|---|
| *Ստացված բուրդը (ց.)* | 353 | 330 | 385 | 330 | 437 | 579 |
| *Մեկ ոչխարի միջին բրդատվությունը (կգ)* | 1,8 | 1,9 | 2 | 1,6 | 2,1 | 2,5 |
| *Հարյուր հեկտար հողատարածության հաշվով (կգ)* | — | — | 134 | 119 | 168 | 240 |

*Այս տվյալները ողևորիչ են, բայց և ցածր են մեր հնարավորություններից։*

*Շրջանի կոլտնտեսությունները որոշ չափով բարձրացրել են նաև մսի արտադրությունը։ 1958 թվականին պետությանը մսի հանձնման պետական պլանը կատարվել է 105 տոկոսով և ժամկետից 4 ամիս շուտ։ Գնդևազի, Արտավանի, Խնձորուտի, Կեչուտի, Կարմրաշենի, Սերսի կոլտնտեսությունները զգալի հաջողությունների են հասել մսի արտադրությունը ավելացնելու գործում։ Նրանցից յուրաքանչյուրը պետությանը հանձնել է 320—594 ցենտներ բարձրորակ միս։ 100 հեկտար հողատարածության հաշվով շրջանում արտադրվել է 29 ցենտներ միս, պլանով նախատեսված 26 ցենտների փոխարեն։*

*Արտավանի «Նոր կյանք» կոլտնտեսությունը փակել է 1959—1960 թվականների մսի հանձնման տարեկան պլանները։ Ընթացիկ տարվա առաջին եռամսյակի մսի հանձնման պլաններն արդեն գերակատարել են Հերհեր, Մարտիրոս, Կեչուտ գյուղերի կոլտնտեսությունները։*

*Սակայն դեռևս լրիվ չեն օգտագործվում եղած բոլոր հնարավորությունները։ Ամենից առաջ անհրաժեշտ է ավելացնել բոլոր տեսակի անասունների գլխաքանակը։ Չնայած 1957 թվականի համեմատությամբ անասունների գլխաքանակը 1958 թվականին 100 հեկտար հողատարածության դիմաց ավելացել է, խոզերինը՝ 2, կովերինը՝ 1, ոչխարներինը՝ 25 գլխով, թռչուններինը՝ 94 թևով, այնուամենայնիվ, այդ գոհացուցիչ չէ։*

*Մի շարք կոլտնտեսությունների ղեկավարներ ամեն տարի պետությանն են հանձնում մինչև 1—3 տարեկան խոշոր և 2—3 տարեկան մանր եղջերավոր շատ անասուններ, որոնց միջին քաշը, գիրությունը նորմայից ցածր է և մեծ վնաս է հասցնում տնտեսությանը։ Անհրաժեշտ է վերջ տալ այս սխալ պրակտիկային և հանձնել բարձր քաշով, գեր անասուններ։*

*Նախնական հաշվումները ցույց են տալիս, որ մսի արտադրությունը 1,5—2 անգամ ավելացնելու լավագույն ուղիներից խոզաբուծության զարգացումն է։ 1958 թվականին շրջանի կոլտնտեսությունները 100 հեկտար վարելահողի դիմաց տվել են 12,5 ցենտներ խոզի միս։ Այդ խիստ քիչ է։ Կեչուտի, Հերհերի, Արտավանի կոլտնտեսությունները մոտիկ են անտառին, որը լի է բնական վայրի պտուղներով։ Աշնանը պետք է խոզերը տեղափոխել անտառ և պահել մինչև խոր ձմեռ։ Այստեղ խոզերը կգիրանան։ Չնայած անտառային բտումը երկար է տևում, բայց ավելի էժան է։ Մի շարք կոլտնտեսություններում խոզերը լրիվ տեղական են և նույնիսկ լավ պահելու դեպքում նրանց միջին քաշը 50—60 կիլոգրամից չի անցնում։ Իսկ Կեչուտի, Հերհերի, Փոռի կոլտնտեսություններում ու Ջաղիթափի սովետական տնտեսություններում խոզերը ցեղային են, ունեն բարձր կենդանի քաշ, խոճկորատու են։ Օրինակ, Արտավանի կոլտնտեսությունը 1958 թվականին յուրաքանչյուր մայր խոզից ստացել է 14 խոճկոր, Դայլախլուինը՝ 13, Կեչուտինը՝ 10։ Այդ տնտեսություններում գնալով վերանում են տեղական ուշահաս, ցածր խոճկորատու խոզերը և դրանց փոխարինում են խառնածինները։*



*Պետք է խոստովանել, որ կոլտնտեսությունները պահանջվող ուշադրությունը չեն հատկացնում թռչնաբուծության զարգացմանը։ Առաջիկա տարիներին անհրաժեշտ է թռչուններ բազմացնել ջրավազաններում, արհեստական լճերում, Արփա և Արինջ գետերի հովիտներում։*

*Անասնաբուծության զարգացման և մթերատվության բարձրացման գործում կարևոր նշանակություն ունի անասնապահական շենքերի շինարարությունը։ Երկու տարի առաջ շրջանի կոլտնտեսություններում չկար ոչ մի տիպային, թիթեղյա տանիքով անասնագոմ։ 1957 և 1958 թվականների ընթացքում կառուցվել և շահագործման են հանձնվել 17 կովանոց, 4 հորթանոց, 4 խոզանոց, 4 ոչխարանոց, 4 թռչնանոց, 2550 տ. տարողությամբ սիլոսի խրամատներ, 3 պահեստ, երկու էլեկտրաղաց և այլ արտադրական շենքեր։ Անհրաժեշտ է չթուլացող տեմպերով շարունակել անասնագոմերի շինարարությունը, որի ժամանակին և հաջող ավարտումը կախված է նաև ՀՍՍՌ Գյուղատնտեսության մինիստրությունից ու Հայկոոպից։ Շրջանի համար 1958 թվականին նախատեսված 2500 խմ շինափայտից ստացված է միայն 1600 խմ, որի գերակշռող մասը շինարարության համար ոչ պիտանի փայտ է։*

*Այժմ շրջանի կոլտնտեսությունների առջև չափազանց կարևոր խնդիր է դրված՝ բարելավել անասունների ցեղայնությունը։ Կովերի ցեղը բարելավելու համար անհրաժեշտ է, նախ՝ կիրառել արհեստական սերմնավորումը, երկրորդ՝ բարձր կաթնատվություն ունեցող կովերի էգ հորթերից ստեղծել տեղական տոհմային կորիզ՝ հետագայում կովերի գլխաքանակը դրանցով ավելացնելու համար։*

*Առանց կերի կայուն բազայի ստեղծման անհնար է անասնաբուծության հետագա զարգացումը։ Կերի կայուն բազայի ապահովման գործում կարևոր նշանակություն ունի խոտացանությունը և եգիպտացորենը։ Կորնգանի ցանքատարածությունները զգալի չափով ավելացնելու շնորհիվ Բարձրունու, Խնձորուտի, Հերհերի կոլտնտեսությունները ամեն տարի կուտակում են բավարար քանակությամբ խոտ։*

*Ըստ նոր կազմված ցանքաշրջանառության պլանի՝ շրջանի կոլտնտեսությունները առաջիկայում պետք է ունենան 2608 հեկտար խոտաբույսերի ցանք։ Պարտիական, սովետական կազմակերպությունների և գյուղատնտեսության մասնագետների խնդիրն է՝ ճշտությամբ իրագործել ցանքաշրջանառությունը, բարձրացնել կերային կուլտուրաների մշակությունը և ստանալ բարձր բերք։*

*Շրջանի կոլտնտեսություններում դեռևս ցածր է եգիպտացորենի մշակությունը։ Մեկ հեկտարի միջին բերքատվությունը կազմել է 84 ցենտներ սիլոսի կանաչ մասսա։ Կարմրաշենի կոլտնտեսությունը (նախագահ Պ. Թովմասյան) ամեն տարի ցանում է 20—22 հեկտար եգիպտացորեն, մեծ ծախսեր է կատարում և համարյա ոչինչ չի ստանում։ [illegible] Կարմրաշենում*

Գոս. Библиотека ՀՍՍՌ—Арм ССР

digitised by A.R.A.R.@

*կովի միջին կաթնատվությունը հազիվ հասցվել է 1053 կիլոգրամի այն դեպ-*
*քում, երբ նույն և ավելի աննպաստ բնա-կլիմայական պայմաններում Խնձո-*
*րուտի կոլտնտեսությունն ավելի մեծ ցուցանիշներ ունի։*

*Խնձորուտի կոլտնտեսության ղեկավարները իրենց ամբողջ ուժն ու եռան-*
*դը գործադրում են պարտիայի առաջադրանքների կատարման համար, իսկ*
*Կարմրաշենի ղեկավարները բավարարվում են միայն դատարկ խոստումնե-*
*րով։ Թույլ է Կարմրաշենի կոլտնտեսության նախագահ Պ. Թովմասյանի և*
*պարտիական կազմակերպության քարտուղար Ա. Ամրահովի պատասխանա-*
*տվության զգացումը։*

*Կաթի արտադրությունը ցածր է նաև Մարտիրոսի, Ջեյթայի կոլտնտեսու-*
*թյուններում։ Այդ կոլտնտեսությունների ղեկավարները պետք է վերակառու-*
*ցեն իրենց աշխատանքը այսօրվա խնդիրների համապատասխան։*

*Շրջանի աշխատավորները մեծ բերկրանքով ընդունեցին ՍՄԿՊ XXI հա-*
*մագումարի որոշումները։ Այդ առթիվ ամենուրեք տեղի ունեցող ժողովնե-*
*րում, միտինգներում կոլտնտեսականները ստանձնում են բարձր պարտավո-*
*րություններ։*

*Վերջերս առաջավոր անասնապահների շրջանային հավաքում անասնա-*
*պահները պարտավորվեցին յոթնամյակի առաջին տարում յուրաքանչյուր ֆու-*
*րաժային կովից ստանալ 1500 կգ կաթ, ոչխարից՝ 3 կգ բուրդ, հողատարա-*
*ծության 100 հեկտարի հաշվով՝ 122 ցենտներ կաթ, 35 ցենտներ միս, 270*
*կգ բուրդ և այլ մթերքներ։*

*Շրջանի պարտիական, սովետական կազմակերպությունների, անասնա-*
*պահության աշխատողների պատվի խնդիրն է անշեղորեն իրագործել ՍՄԿՊ*
*XXI համագումարի պատմական որոշումները և 1959 թվականը դարձնել ա-*
*նասնաբուծական մթերքների արտադրության հետագա վերելքի տարի։*

---

Խմբագրության հասցեն՝
Երևան, ՀԿՊ Կենտկոմի շենք
Հեռ. 2—03—18, 2—56—92, 2—04—66.

Адрес редакции: Ереван, здание
ЦК КП Армении, тел. 2—03—18,
2—56—92, 2—04—66.

ԽՄԲԱԳՐԱԿԱՆ ԿՈԼԵԳԻԱ
ԱԴՈՅԱՆ Ա. Գ. (գլխավոր խմբագիր),
ԱՌԱՔԵԼՅԱՆ Ս. Վ., ԱՎԵՏԻՍՅԱՆ Վ. Ա., ԱՐ-
ՋԻՈՒՄԱՆՅԱՆ Գ. Ա., ԲԱՐՍԵՂՅԱՆ Խ. Հ., ԳԵ-
ՎՈՐԳՅԱՆ Վ. Հ., ԹԵԼՈՒՆՑ Ա. Մ., ՃԱՅՐՅԱՆ
Գ. Ա., ՆԱԼԲԱՆԴՅԱՆ Ս. Ս.։

ՎՖ 02130 Պատվեր 482 Տիրաժ 9800

Տպ. 8 մամուլ, մամուլում 68.840 նիշ։ Ստորագրված է տպագրության 25/III 1959 թ.։

Խմբագրության ճանաչված ձեռագրերը հեղինակներին չեն վերադարձվում։

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Գլխհրատի № 6 տպարան, Երևան, Լենինի պող. № 51։

digitised by